Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5
ՄԱՅԻՍ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

**Խմբագրության հասցեն՝**
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ**

գլխավոր խմբագիր 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ 52—99—06
պատասխանատու քարտուղար 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի 52—05—58
կուսակցական կյանք 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների 52—57—56
գիտության և կուլտուրայի 52—99—34
խմբագրության վարիչ 53—36—11
գրական աշխատողներ 52—66—77
56—59—94





# ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի 1986 թվականի ապրիլի 5-ի պլենումում*

Ընկերնե՛ր:

ՍՄԿԿ XXVII համագումարը պատմական ուղենիշ դարձավ կուսակցության ու երկրի կյանքում, նշանավորվեց որպես արդիականության խոշորագույն իրադարձություն: Համագումարը, որն անցավ կուսակցական սկզբունքայնության ու միասնության, պահանջկոտության ու բոլշևիկյան ճշմարտության մթնոլորտում, լայնորեն, դիալեկտիկորեն իմաստավորեց մեր դարաշրջանի իրողությունները, տվեց ժամանակակից աշխարհի հիմնական միտումների ու հակասությունների մարքս-լենինյան խոր վերլուծությունը, լենինաբար շիտակ ու պարզորոշ պատասխաններ տվեց մեր երկրի կյանքի ներկա փուլի ամենաասուր և ամենաբարդ հարցերին, կուսակցությանը, սովետական ժողովրդին զինեց սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելու գործողությունների գիտականորեն հիմնավորված, իրատեսական, հիրավի հեղափոխական ծրագրով:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման համապարփակ արագացման, աշխարհի խաղաղության ամրապնդման՝ համագումարի ընդունած և հաստատած կուսակցության քաղաքականության գլխավոր գիծը նրա կարևորագույն քաղաքական արդյունքն է:

Կուսակցության ստրատեգիական գիծը, արագացման կոնցեպցիան հստակորեն արտահայտված են, սպառիչ կերպով բացահայտված և հիմնավորված կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցման մեջ, որով հանդես եկավ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը: Զեկուցման մեջ մարմնավորված են կուսակցության տեսական իմաստնությունը, նրա քաղաքական իրատեսությունը և նպատակամիտվածությունը ապագային: Այստեղ նշված են ՍՄԿԿ-ի տնտեսական ու սոցիալական քաղաքականության, մեր հասարակության հետագա դեմոկրատացման հիմնական ուղղությունները, առաջադրված են կուսակցության արտաքին քաղաքական ստրատեգիայի նպատակները:

ՍՄԿԿ XXVII համագումարը հավանություն տվեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական կուրսին և պրակտիկ գործունեությանը, Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ շարադրված դրույթներին, հետևություններին ու խնդիրնե-

* *Տպագրվում է կրճատումներով:*

րին, որոշեց. բոլոր կուսակցական կազմակերպություններին՝ իրենց աշխատանքում ղեկավարվել դրանցով:

Համագումարը միաձայն հաստատեց ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, կանոնադրությունը՝ մտցված փոփոխություններով, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները և ընդունեց համապատասխան որոշումներ:

Նորացման կենսական մեծ ուժը, որ ցայտուն դրսևորվեց համագումարի աշխատանքի ընթացքում, նրա ընդունած փաստաթղթերում, ալեկոծեց մեր հասարակության կյանքը: Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ջերմորեն, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս համագումարի որոշումներին, կուսակցության քաղաքականությանը, որը հավատով է տոգորված մասսաների կենդանի ստեղծագործության ուժի նկատմամբ, արտահայտում է ամբողջ ժողովրդի շահերն ու իղձերը: Լիովին պաշտպանելով ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականությունը՝ նրանք, ի պատասխան համագումարի կոչի՝ բոլոր ուժերը, գիտելիքները, ընդունակությունները, ստեղծագործական խանդավառությունը նվիրաբերել կոմունիստական արարման վեհ նպատակներին, ձգտում են նախաձեռնողական, համառ աշխատանքով ծանրակշիռ ավանդ ներդնել կուսակցության կանխանշած նոր, վիթխարի պլանների իրականացման մեջ:

# I.

XXVII համագումարը նշեց երկրի հետագա համակողմանի առաջադիմության բարձր բնագծեր: Սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելու ստրատեգիական կուրսը մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն է:

Արագացումը, նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, «առաջին հերթին տնտեսական աճի տեմպերի բարձրացում է: Բայց ոչ միայն դա: Նրա էությունը աճի նոր որակն է՝ արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումը գիտատեխնիկական առաջադիմության, էկոնոմիկայի, աշխատանքի կառավարման, կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևերի կառուցվածքային վերափոխման հիման վրա»:

Արագացման կուրսը նախատեսում է ակտիվ սոցիալական քաղաքականության իրականացում, սոցիալական արդարության սկզբունքի հետևողական հաստատում, ենթադրում է հասարակական հարաբերությունների կատարելագործում, քաղաքական ու գաղափարախոսական հաստատությունների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում, սոցիալիստական դեմոկրատիայի խորացում, իներցիայի, լճացածության ու պահպանողականության, այն ամենի վճռական հաղթահարում, ինչը կասեցնում է հասարակական առաջադիմությունը:

Այսօր մեր պլենումը պետք է սահմանի հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները կուսակցության XXVII համագումարի որոշումների կատարման ուղղությամբ: Իսկ դա պահանջում է մաշտաբային մոտեցման հիման վրա գնահատել հանրապետության զարգացման արդյունքները, պատասխանատու կերպով վերլուծել և բացահայտել տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում տակավին առկա թերությունները, դժվարությունները, քննադատաբար իմաստավորել արվածը, գործերի վիճակը մեր կենսագործունեության բոլոր տեղամասերում:

Մեր հանրապետությունը վերջին երկու հնգամյակում քիչ հաջողությունների չի հասել տնտեսական ու սոցիալական զարգացման, մշակութային շինարարության ասպարեզում:

Ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերն աճել են ավելի քան երկու անգամ: Կառուցվել են հարյուրավոր ձեռնարկություններ, արտադրամասեր ու տեղամասեր: Ազգային եկամուտն աճել է 89, արդյունաբերական արտադրությունը՝ 94,8, գյուղատնտեսականը՝ 45,6 տոկոսով:

Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները ավելացել են 37 տոկոսով, սպառման հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնությունները աճել 64 տոկոսով: Ծահագործման են հանձնվել 11 միլիոն քառակուսի



մետր մակերեսով բնակելի տներ: Հետագա զարգացում են ստացել գիտությունը, մշակույթը, ժողովրդական կրթությունը, սպասարկման ոլորտը:

Միջոցներ են ձեռնարկվել ժողովրդական տնտեսության կառուցվածքի, հանրապետության արտադրողական ուժերի կատարելագործման, դրանց ռացիոնալ տեղաբաշխման, աշխատունակ բնակչությանը հանրային արտադրության մեջ ներգրավելու խնդրի լուծման, մեր քաղաքների ու գյուղերի բարեկարգման, բնության ու շրջակա միջավայրի պահպանության ուղղությամբ: Հատուկ ուշադրություն է դարձվել լեռնային ու նախալեռնային շրջանների զարգացմանը, հողերի մելիորացմանն ու ջրատնտեսական շինարարությանը: Մի խոսքով՝ քիչ բան չի արվել:

Սակայն մեր ձեռք բերած արդյունքները գնահատելով ՍՄԿԿ XXVII համագումարի նոր, բարձր պահանջների լույսի ներքո, ուղղակի պետք է ասել, որ դրանք չեն համապատասխանում մեր այսօրվա աճած հնարավորություններին: Մեզանում վերակառուցումը դանդաղ է ընթանում: Ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում կան դժվարություններ, դրանք զարգանում են դանդաղ տեմպերով, չեն կատարել հնգամյա առաջադրանքները: Սոցիալական ոլորտում ևս մենք չենք հասել բոլոր առաջադրված նպատակներին: Ետ է մնացել գիտության ու կրթության, առողջապահության և կուլտուր-կենցաղային սպասարկման նյութական բազան: Մեր կանխանշած շատ ծրագրեր կատարվել են թերի, ժամկետների մեծ ձգձգումով:

Հանրապետության էկոնոմիկան առայժմ դանդաղ է փոխադրվում զարգացման ինտենսիվ մեթոդների: Ժողովրդական տնտեսության մեջ պահանջվող ակտիվությամբ չեն ներդրվում գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները: Ամենուրեք չէ, որ լիովին են օգտագործվում առկա արտադրատեխնիկական պոտենցիալը և բոլոր տեսակի ռեսուրսները, միշտ չէ, որ հետևողական աշխատանք է կատարվում աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի որակը բարձրացնելու ուղղությամբ: Մեզանում դեռևս շատ են ոչ փութաջան տնտեսավարման, իսկ երբեմն էլ ուղղակի անտնտեսվարության փաստերը:

ՍՄԿԿ XXVII համագումարը կուսակցության ու ժողովրդի առաջնահերթ խնդիրը համարեց՝ վճռականորեն հաղթահարել էկոնոմիկայի զարգացման անբարենպաստ միտումները, պատշաճ դինամիզմ հաղորդել էկոնոմիկայի զարգացմանը, լայն ասպարեզ բացել մասսաների նախաձեռնության ու ստեղծագործության, իրոք հեղափոխական վերափոխումների համար:

Կուսակցության տնտեսական ստրատեգիական գծի իրականացման գլխավոր միջոցներն են գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, հասարակության արտադրողական ուժերի արմատական վերափոխումը: Կուսակցությունը խնդիր է դնում կատարել ժողովրդական տնտեսության խոր վերակառուցում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, գիտատեխնիկական առաջադիմության ավանգարդային ուղղություններում ճեղքումներ իրականացնելու, տնտեսական մեխանիզմը, կառավարման համակարգը վերակառուցելու հիման վրա:

Այս ամենը պահանջում է նպատակասլացություն և վճռականություն պրակտիկ գործողություններում, լայն մասսաների ակտիվ ու գիտակցական մասնակցություն այդ պրոցեսին, կադրերի հոգեբանության վերակառուցում, կարգապահության ու կազմակերպվածության բարձրացում, հանձնարարված աշխատանքի ու դրա արդյունքների համար յուրաքանչյուրի պատասխանատվության բարձրացում:

Այստեղից էլ՝ կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների կոնկրետ խնդիրը: Հաստատակամորեն հաղթահարելով անբարենպաստ միտումները, էկոնոմիկան էքստենսիվ հիման վրա զարգացնելու տեղ-տեղ իրեն դեռևս զգալ տվող իներցիան, տնտեսավարման իրենց դարն ապրած մեթոդների վերապրուկները, լճացածությունն ու քարացածությունը՝ անհրաժեշտ է հասնել այն բանին, որ վերակառուցման ու նորացման թարմ շունչը զորեղ, բարերար կերպով ներազդի մեր կենսագործունեության բոլոր ոլորտների վրա: Հարկավոր է, որ անխտիր ամենուրեք բոլոր մակարդակների աշխատողները սովորեն մտածել նորովի, որ առանց բացառության ամենքը խորապես գիտակցեն՝ արագացման գլխավոր գիծը այսուհետև կյանքի օրենք է կուսակցության համար, նրա յուրաքանչյուր կազմակերպության համար, գործողության ուղեցույց կոմունիստների, բոլոր աշխատավորների համար:

Մեր առաջին գործը պետք է լինի հանրապետության ժողովրդական տնտեսության ակտիվ վերակառուցումը, կառուցվածքային ու ինվեստիցիոն քաղաքականության փո-

փոխումը, ուշադրության կենտրոնի փոխադրումը քանակական ցուցանիշներից
որակի ու արդյունավետության վրա, միջանկյալ արդյունքներից՝ վերջնական ար-
դյունքների վրա, արտադրական ֆոնդերի ընդլայնումից՝ դրանց նորացման վրա,
վառելիքահումքային ռեսուրսների օգտագործումը բարելավելու, գիտատար ճյուղերը,
արտադրական ու սոցիալական ինֆրակառուցվածքը արագորեն զարգացնելու վրա:
Հանրապետության արդյունաբերության, շինարարության, կապի ասպարեզում
և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում բարձր է դրանց հիմնական ֆոնդերի
մաշվածությունը: Մաշվածքի աստիճանը հանրապետական միջին մակարդակից
բարձր է այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են էներգետիկան, գունավոր մետալուր-
գիան, քիմիական, նավթաքիմիական, էլեկտրատեխնիկական, ցեմենտի արդյունաբե-
րությունը և այլն:

Դա հանգեցրել է այն բանին, որ արդյունաբերության մեջ տասնմեկերորդ հնգամ-
յակում ֆոնդերի հիմնական նորոգման վրա ծախսվել են մոտավորապես այնքան
միջոցներ, որքան շարքից դուրս եկած մեքենաների ու սարքավորումների փոխարեն
տեղակայվածների ձեռքբերման համար:

Տասնմեկերորդ հնգամյակում մեզանում ցածր էր ժողովրդական տնտեսության
տարբեր ճյուղերում արտադրության վերակառուցմանն ու վերազինմանը հատկաց-
ված կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը: Ցավոք, առանձին ճյուղերում
արտադրական ապարատի դանդաղ նորացում է նախատեսվում նաև տասներ-
կուերորդ հնգամյակի առաջին տարում: ՍՍՀՄ հաստոցաշինական արդյունաբերու-
թյան մինիստրության ձեռնարկություններում 1986 թվականին պլանով նախատես-
ված է հաստոցային համակազմի նորացման ավելի ցածր մակարդակ, քան 1985
թվականին, իսկ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռ-
նարկություններում՝ անցյալ տարվա չափով: Բոլոր ձեռնարկություններում չէ, որ
վերակառուցման ու տեխնիկական վերազինման պլանները ապահովված են նյութա-
տեխնիկական և ֆինանսական անհրաժեշտ ռեսուրսներով:

Հարց է ծագում. հանրապետության պետպլանը (ընկ. Հ. Սաղոյան) ինչո՞ւ ժա-
մանակին չի նկատել և չի կանխել այդ ամենը: Չէ՞ որ բոլոր ձեռնարկությունների,
այդ թվում նաև միութենական ենթակայության ձեռնարկությունների պլանները
առանց պետպլանի համաձայնության չեն հաստատվում: Պատասխանը պարզ է.
ինչպես հիշյալ ձեռնարկությունների, այնպես էլ հանրապետության պետպլանի
ղեկավար աշխատողները համապատասխան հետևություններ չեն արել ՍՄԿԿ Կենտ-
կոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, գիտատեխնիկական առաջադիմության
արագացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում 1985 թվականի հունիսին
կայացած խորհրդակցության որոշումներից: Մենք իրավունք ունենք այս հարցը
առավել սրությամբ դնելու ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություն-
ների, կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեների առջև, որոնք չեն
ապահովել այդ կարևոր խնդրի լուծումը:

Քննադատության են արժանի նաև հանրապետության Մինիստրների խորհրդի
և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի համապատասխան ստորաբաժանումներն ու ղե-
կավար աշխատողները, որոնք ինչպես հարկն է չեն կազմակերպել և վերահսկել
ժողովրդական տնտեսության արտադրական ապարատի ավելի արագ նորացման
վերաբերյալ կուսակցության Կենտկոմի պահանջի կատարումը:

Հանրապետության կառավարությունը, պետպլանը պետք է ավելի ակտիվորեն
աշխատեն միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների հետ և ար-
մատական փոփոխությունների հասնեն կառուցվածքային ու ինվեստիցիոն քաղա-
քականության մեջ:

Դրական գնահատելով այն, որ տասներկուերորդ հնգամյակում վերակառուց-
մանն ու տեխնիկական վերազինմանը հատկացվելու են շուրջ 1,5 անգամ ավելի
կապիտալ ներդրումներ, քան նախորդ հնգամյակում, մենք միաժամանակ պետք է
նշենք, որ դրանց տեսակարար կշիռը առայժմ ցածր է և չի ապահովում արտադրա-
կան ապարատի նորացման իրագործումը պահանջվող մասշտաբով:

«Յուրաքանչյուր ճյուղ, յուրաքանչյուր ձեռնարկություն պետք է ունենա արտա-
դրության անընդհատ նորացման հստակ ծրագիր,— ընդգծված է Կենտկոմի Քա-
ղաքական զեկուցման մեջ:— Հետևաբար էապես բարձրանում է պլանային ու տըն-
տեսական մարմինների պատասխանատվությունը նախատեսվածի կատարման հա-



մար: Դրան պետք է նպատակամղված լինի նաև կուսակցական կազմակերպություն-
ների գործունեությունը»:

Վերակառուցման արդյունավետությունը, տնտեսական աճի տեմպերը վճռական
չափով կախված են մեքենաշինությունից:

Մեր այդ առաջատար ճյուղը կարիք ունի արմատական կատարելագործման,
որ մեր ձեռնարկությունների մեքենաշինական արտադրանքի շատ տեսակներ իրենց
տեխնիկատնտեսական ցուցանիշներով չեն համապատասխանում արդի պահանջնե-
րին: Խոսքը վերաբերում է թե՛ հաստոցներին, թե՛ էլեկտրատեխնիկական ու սարքա-
շինական արդյունաբերության արտադրանքին, թե՛ ավտոմոբիլներին ու ավտոբեռ-
նիչներին և թե ուրիշ արտադրատեսակների:

Եվ մնալուն վերջ տալու համար, նախ և առաջ, իհարկե, պետք է բարձրացնել
մեքենաշինական ձեռնարկությունների տեխնիկական մակարդակը, արմատապես
բարելավել արտադրության ավտոմատացման ու մեքենայացման, առաջադիմական
տեխնոլոգիական պրոցեսների ներդրման աշխատանքը:

Անհրաժեշտ է ձեռնարկությունները կոմպլեկտավորել ինժեներատեխնիկական
աշխատողների բարձրորակ կադրերով, ամրապնդել ինժեներական ծառայություննե-
րը: Մի՞թե թույլատրելի է, որ տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործմամբ
զբաղվող կոնստրուկտորների ու տեխնոլոգների թիվը առանձին ձեռնարկություն-
ներում կազմում է աշխատողների ընդհանուր թվի ընդամենը 1,5—3 տոկոսը:

Հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերությունում ցածր են
տեխնիկատեխնոլոգիական մակարդակը, արտադրության համակենտրոնացման, մաս-
նագիտացման ու կոոպերացման աստիճանը, լուծված չեն կառավարման հարցերը:

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ՍՍՀՄ հաստոցաշինական
արդյունաբերության մինիստրության հետ համատեղ լուծի գործող ձեռնարկություն-
ների ու կազմակերպությունների բազայի վրա գիտաարտադրական և արտադրա-
տեխնիկական խոշոր համալիրներ ստեղծելու հարցը՝ արմատապես վերակառուցելով
հաստոցաշինության կառուցվածքը, ինչը հնարավորություն կընձեռի արագորեն անց-
նել այնպիսի նոր հաստոցների ու գործիքների թողարկմանը, որոնք ընդունակ լինեն
բազմապատիկ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, կտրուկ բարե-
լավել արտադրանքի որակը:

Համագումարը հսկայական կարևորության խնդիր համարեց արտադրության ավ-
տոմատացումն ու մեքենայացումը, դրա լայն էլեկտրոնացումը: Ժողովրդական տըն-
տեսության տեխնիկական վերակառուցումը իրագործելիս մենք պետք է այդ հարցերը
դնենք մեր աշխատանքի կենտրոնում: Անհրաժեշտ է արմատապես վերափոխել աշ-
խատատեղերը, աշխատանքը դարձնել ավելի արտադրողական ու ստեղծագործա-
կան: Սա ունի նաև շատ կարևոր սոցիալական նշանակություն: Մի՞թե թույլատրելի
է, որ հանրապետության արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքը կազմում է
ավելի քան 37,5 տոկոս: Ձեռքի աշխատանքների տեսակարար կշիռը բարձր է նաև
շինարարության, գյուղատնտեսության մեջ, այլ ճյուղերում: Սակայն, չնայած դրան,
ձեռնարկությունների ղեկավարները, մեր տնտեսական մարմինները հետևողական
միջոցներ չեն ձեռնարկում ձեռքի աշխատանքի բաժինը կրճատելու համար, իսկ
կուսակցական կոմիտեներն ու կազմակերպություններն էլ ինչպես հարկն է հաշիվ
չեն պահանջում նրանցից: Իսկ չէ՞ որ այստեղ աշխատանքի արտադրողականության
բարձրացման խոշոր ռեզերվներ կան թաքնված: Հարկավոր է միջոցառումներ մշա-
կել այն հաշվով, որ արդեն ընթացիկ հնգամյակում ձեռքի աշխատանքը կրճատվի
10—15 տոկոսով:

Կուսակցության Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազ-
մակերպությունները պետք է ակտիվորեն հաղթահարեն նաև արտադրության էլեկ-
տրոնացման գործում եղած լճացածությունը: Մինիստրությունների, գերատեսչու-
թյունների, միավորումների ու ձեռնարկությունների ղեկավարները, շարունակելով
հին ձևով մոտենալ արտադրության և տեխնոլոգիական պրոցեսների կազմակերպ-
ման ու կառավարման հարցերին, շահագրգռություն և նախաձեռնություն չեն ցու-
ցաբերում էլեկտրոնային հաշվողական մեքենաների և միկրոպրոցեսորային տեխնի-
կայի բազայի վրա ավտոմատացված համակարգերի ներդրման գործում: Եվ չնայած
արդեն երկու տասնամյակ է, ինչ դրվում է արտադրության մեջ տեխնոլոգիական
պրոցեսների կառավարման ավտոմատ համակարգերի արմատավորման խնդիրը,

չնայած հանրապետությունում նման համակարգեր մշակող գիտական կազմակերպությունների, արդյունաբերության մեջ դրանց օգտագործման համապատասխան բազայի առկայությանը, մեզանում չկա տեխնոլոգիական պրոցեսների կառավարման լիովին ներդրված և ոչ մի ավտոմատ համակարգ:

1975 թվականից աշխատանքներ են տարվում «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում (ընկ. Ս. Սատվածատրյան) տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատ համակարգեր մշակելու ուղղությամբ, որոնցից սպասվող տարեկան տնտեսական արդյունքը կազմելու է շուրջ 1,5 միլիոն ռուբլի: Անցած 12 տարում միավորումը մեծ գումարներ է ծախսել համակարգի մշակման, գիտահետազոտական աշխատանքների կատարման, սարքավորումների, հաշվողական տեխնիկայի միջոցների ձեռքբերման ու մոնտաժման համար: Սակայն համակարգը մինչև օրս կարգաբերված չէ և չի շահագործվում: Իսկ ավելի վաղ ձեռք բերված էլեկտրոնային հաշվողական մեքենայից արդեն հարկ է հրաժարվել, որովհետև հնացել է: «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ղեկավարները այս ուղղությամբ իրենց անբավարար աշխատանքը, ինչպես միշտ, ուզում են արդարացնել օբյեկտիվ դժվարություններով:

Հետաքրքիր է, որ ոչ կուսակցության Լենինյան շրջկոմը, ոչ էլ Երևանի քաղկոմը համապատասխան կերպով չեն անդրադարձել դրան:

Իսկ այն, որ այս գործում ղեկավարների, կուսակցական կազմակերպությունների, արտադրության աշխատողների դիրքավորումից շատ բան է կախված, ապացուցում է մի այլ օրինակ: Կարճ ժամանակամիջոցում Կիրովականի «Ավտոմատիկա» գիտաարտադրական միավորման օգնությամբ «Հայտրանսգազ» արտադրական միավորումը մշակեց, ներդրեց և սկսել է բնական գազի ծախսման գերճշգրիտ չափման ավտոմատ համակարգի փորձառական շահագործումը Ղազախ—Իջևան գազամուղի մի տեղամասում: Համակարգը բարձր գնահատականի է արժանացել ՍՍՀՄ գազարդյունաբերության մինիստրության կողմից, իսկ «Ավտոմատիկա» գիտաարտադրական միավորման կոլեկտիվը ակտիվորեն ձեռնամուխ է եղել Յամբուրգ—Ելեց, Ուրենգոյ—Կենտրոն մայր գազամուղներում գազի ծախսումը չափող ավտոմատ համակարգերի ստեղծմանը:

Յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի, սկզբնական կուսակցական կազմակերպության, ամեն օղակի ղեկավարի համար պետք է պարզից էլ պարզ լինի, որ ժողովրդական տնտեսության վերակառուցման իրագործումը պետք է հիմնվի գիտատեխնիկական առաջադիմության վրա:

Մեզանում դեռևս ամենուրեք չէ, որ պատասխանատվությամբ են վերաբերվում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների օգտագործմանը: Գիտական ու գործնական մեծ նշանակություն ունի, օրինակ, շահագործողական հարկավոր հատկություններով օժտված բարձրորակ նյութերի ու արտադրատեսակների ստացման՝ սովետական գիտնականների հայտնագործած նոր եղանակը: Այս ուղղությամբ կարևոր արդյունքներ են ստացվել նաև Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտում, մշակվել են զանազան դժվարահալ միացությունների, կարծր համաձուլվածքներից պատրաստված գործիքաշինական նյութերի ստացման տեխնոլոգիաներ և այլն: Սակայն դրանք հանրապետությունում անբավարար են օգտագործվում:

Այդ մասին գիտեն թե՛ Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների (ընկ. Ա. Մելքոնյան) և արդյունաբերության (ընկ. Վ. Մեհրաբյան) բաժինները, թե՛ հանրապետության պետպլանը (նախագահի տեղակալ ընկ. Բ. Մուրադյան) և թե կառավարությունը: Գիտենալը՝ գիտեն, բայց ահա՝ սպառիչ միջոցներ չեն ձեռնարկում:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները պետք է բարձրացնեն տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման համար, խիստ վերահսկողություն հաստատեն այդ գործում:

Էկոնոմիկայի տեխնիկական բազայի նորացումը, գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, իհարկե, աներևակայելի են առանց գիտական գաղափարների ու մշակումների զինանոցի անընդհատ և հարաճուն նորացման: Այստեղ վճռական դերը, անշուշտ, պատկանում է հիմնարար հետազոտություններին: Գիտատեխ-



նիկական առաջադիմության հիման վրա հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը կոմպլեքսային խնդիր է: Եվ, բնականաբար, այդ պրոբլեմների հետազոտումը ենթադրում է նաև գիտնականների միջգիտաճյուղային համագործակցություն: Իսկ մեզանում հետազոտությունների կոորդինացումը չունի անհրաժեշտ նպատակասլացություն, հաճախ էլ առհասարակ բացակայում է: Դեռևս ստեղծված չէ նոր գաղափարների արդյունավետ ընտրության, դրանց կուտակման և օգտագործման մեխանիզմ, մինչդեռ դա շատ հարկավոր և կարևոր գործ է: Գիտությունների ակադեմիան (ընկ. Վ. Համբարձումյան), բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, այլ կազմակերպություններ ու հիմնարկներ, վերջապես, պետք է կոնկրետ քայլերի դիմեն գիտական պրոբլեմների լուծման նկատմամբ միջգիտաճյուղային սկզբունքի իրացման ուղղությամբ:

Շատ անելիքներ ունի ճյուղային գիտությունը հետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների իր զարգացած ցանցով: Այստեղ հարկավոր է սուր քննադատության ենթարկել գյուղատնտեսության ճյուղային գիտությունը, որը շատ տարտամ է ազդում արտադրության վրա, որքան էլ տարօրինակ է՝ ամենից շատ կտրված է հենց պրակտիկայի կոնկրետ խնդիրներից: Հանրապետության պետագրոարդը պետք է գործուն միջոցներ ձեռնարկի դրությունը շտկելու համար:

Ծեշտակիորեն պետք է դեպի արտադրության պահանջմունքները շրջադարձ կատարի բուհական գիտությունը: Հարկավոր է, որ իրենց աշխատանքը կտրուկ վերակառուցեն ինչպես բուհերի ռեկտորատներն ու կուսակցական կազմակերպությունները, բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրությունը, այնպես էլ հանրապետության պետպլանը, մյուս կազմակերպությունները: Մեր շատ գիտնականներ ուղղակի դիմում են Հայաստանի կոմկուսի Կենտկոմ, առաջարկում են իրենց ծառայությունները այդ հարցում: Եվ մենք պետք է աջակցենք նրանց նախաձեռնությանը:

Անհրաժեշտ է ամեն կերպ օգնել այն ամբիոններին, որոնց հետազոտությունների արդյունքները կարելի է հաջողությամբ կիրառել պրակտիկայում: Ձեռնարկությունների տեխնիկական վերազինման կարևոր օղակ պետք է դառնա գիտության գործարանային սեկտորը:

Պետք է հատուկ ուշադրություն նվիրվի ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղի ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման նախագծերի որակին: Անհրաժեշտ է հետևել, որ դրանք անպայման նպատակամղված լինեն տեխնիկական առաջադիմությանը, արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշների իսկական բարելավմանը, ապահովեն առաջավոր տեխնոլոգիայի և կազմակերպման ներդրման, արտադրանքի որակի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ռեսուրսախնայման վրա:

Հենց նման մոտեցումն է բացակայել Երևանի քիմիական ռեակտիվների գործարանի վերազինման և ընդլայնման նախագիծը մշակելիս (դիրեկտոր՝ ընկ. Վ. Բարսեղյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Լ. Կուլակովսկայա): Տարվա վերջին նախագիծն իրացվելու է: Իսկ ինչպիսի՞ արդյունք կստացվի: Պարզվում է, որ կարողությունների ընդլայնումը չի ուղեկցվում նոր առաջադիմական տեխնոլոգիայի ներդրումով, արտադրանքը թողարկելու են հին մեթոդով, թեև համաշխարհային պրակտիկայում մշակված և փորձարկված է ավելի արդյունավետ տեխնոլոգիա: Սպասվում է, որ աշխատանքի արտադրողականությունը և ֆոնդահատույցը լինելու են արդեն ավելի քան 10 տարի գործող արտադրության մեջ ձեռք բերված մակարդակից էլ ցածր: Եվ դա այն ժամանակ, երբ Երևանում, փաստորեն այս գործարանի հետ նույն հարկի տակ տեղավորված է քիմիական ռեակտիվների և հատկապես մաքուր քիմիական նյութերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղը, որտեղ զբաղված են ավելի քան 340 գիտաշխատողներ, այդ թվում՝ գիտությունների 4 դոկտորներ և 56 թեկնածուներ: Դրանք երկուսն էլ ենթարկվում են ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրության միևնույն «Սոյուզռեակտիվի» համամիութենական արդյունաբերական միավորմանը:

Հարկավոր է ըստ ամենայնի կատարելագործել և ամրապնդել գիտության կապերը արտադրության հետ, ավելի ակտիվորեն ստեղծել ճյուղային և միջճյուղային գիտատեխնիկական համալիրներ, անհրաժեշտ նախադրյալներ ապահովել ինժեներ-

ների, գիտնականների, կոնստրուկտորների ստեղծագործական հատույցի մեծացման համար:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը, Կենտկոմի համապատասխան բաժինները, կուսակցական կոմիտեները, մինիստրություններն ու գերատեսչությունները, հանրապետության գիտությունների ակադեմիան պետք է մշտապես ուշադրության կենտրոնում պահեն այդ կարևոր գործը, եռանդագին նպաստեն գիտության և տեխնիկայի առաջընթացին, առկա միջոցները կենտրոնացնեն հիմնական ուղղություններում, ապահովեն գիտության կտրուկ շրջադարձը դեպի պրակտիկայի պահանջմունքները, իսկ արտադրությունը դեմքով շրջեն դեպի գիտությունը, վերացնեն գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների արագ ներդրման ճանապարհին եղած բոլոր խոչընդոտները:

Անհրաժեշտ է արմատապես բարելավել ժողովրդական տնտեսության մեջ որակյալ մասնագետների օգտագործումը: Չէ որ գաղտնիք չէ, որ մեր արդյունաբերության մեջ մեծ թվով ինժեներական պաշտոններ գրավում են տեխնիկները, ընդ որում դիպլոմավոր շատ ինժեներներ էլ աշխատում են ոչ ինժեներական պաշտոններում: Առավել վատ է մասնագետներով ապահովվածությունը կապի ձեռնարկություններում, գյուղատնտեսության մեջ: Այստեղ պետք է համատեղ աշխատեն թե՛ պլանավորող, թե՛ տնտեսական, թե՛ կուսակցական ու սովետական մարմինները:

Տասներկուերորդ հնգամյակում մեզ մեծ աշխատանք է սպասվում արտադրական ինֆրակառուցվածքի, առաջին հերթին՝ տրանսպորտի ու կապի տեխնիկական վերազինման ուղղությամբ: Եթե մենք վերջին տարիներս հանրապետությունում բավական հետևողականորեն ենք միջոցառումներ իրականացրել երկաթուղային և օդային տրանսպորտի նյութատեխնիկական բազայի ամրապնդման և տեխնիկական զինման ուղղությամբ, ապա նույնը չի կարելի ասել ավտոտրանսպորտի և կապի առանձին ճյուղերի մասին: Այստեղից էլ՝ խնդիրը:

Ժողովրդական տնտեսության ճյուղերի տեխնիկական վերակառուցումը պետք է հետապնդի կոնկրետ վերջնական նպատակներ՝ արտադրանքի որակի, աշխատանքի արտադրողականության բարձրացում, արտադրանքի ինքնարժեքի իջեցում:

Արդյունավետության բարձրացման անհետաձգելի և առավել սուր պրոբլեմներից մեկը արտադրանքի և աշխատանքի որակն է: Ինչպես ընդգծվեց համագումարում, առանց որակի արմատական բարելավման չի կարող լուծվել ոչ մի խոշոր արտադրական ու սոցիալական խնդիր: Արտադրանքի որակի բարձրացումը վերջին հաշվով նաև դրա քանակի, ռեսուրսների խնայողության, հասարակական պահանջմունքների ավելի լրիվ բավարարման հարցն է:

Մեզ մոտ, ինչպես գիտեք, անցած հնգամյակում որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի ծավալը մեծացավ 2 անգամ: Ներդրված է արտադրանքի որակի կառավարման հանրապետական համակարգ: Եվ, այնուամենայնիվ, մեր արտադրատեսակների տեխնիկական մակարդակի, դրանց սպառողական հատկությունների, մրցունակության ու պատրաստման որակի բարձրացման հարցը այսօր էլ խիստ սուր է դրված: Ընթացիկ տարվա երկու ամսում ՍՍՀՄ պետստանդարտի հանրապետական վարչության կատարած ստուգումներով պարզվել է, որ ստուգված արդյունաբերական ձեռնարկությունների և կազմակերպությունների մեծ մասում այս կամ այն չափով խախտվում են ստանդարտների ու տեխնիկական պայմանների պահանջները: Դեռևս շատ են անորակ արտադրանք թողարկող և իրացնող ձեռնարկությունները: Այդ ժամանակամիջոցում նրանց նկատմամբ արդեն կիրառվել են ավելի քան երկու միլիոն ռուբլու 28 տնտեսական սանկցիաներ: Եվ դա տասներկուերորդ հնգամյակի սկզբում, կուսակցական կազմակերպություններում ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի նամակի քննարկումից հետո: Տնտեսական սանկցիաներ են կիրառվել «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Պ. Մանվելյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Վ. Խաչատրյան), «Հայավտո» արտադրական միավորման (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Դ. Աբրահամյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Մ. Հովհաննիսյան), Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի (դիրեկտոր՝ ընկ. Ա. Եղիազարյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ա. Հակոբյան) և այլ ձեռնարկությունների նկատմամբ: Պետական որականիշից զրկվել է «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման 6 արտադրատեսակ: Վերջին ժամանակներս խստագույնս քննադատվում է «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորման արտադրանքը (գլխավոր դիրեկտոր՝ ընկ. Յու. Առուստամյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Կ. Խոջոյան): Երևանի Ձերժինսկու անվան գործարանում (նախկին դիրեկտոր՝ ընկ. Ա. Սարգսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ ընկ. Ե. Պոնոմարյով) պատրաստված թվածրագրային կառավարմամբ հաստոցների ավելի քան 13,5 տոկոսը վնասապահանջներով վերադարձվել է գործարան՝ վերամշակման: 1985 թվականին և 1986 թվականի հունվարին սպառողներին անորակ արտադրանք մատակարարելու համար գործարանին ներկայացված է ավելի քան 1.700 հազար ռուբլու վնասապահանջ:

Այսպես աշխատել, ընկերներ, չի կարելի: Կուսակցական կոմիտեները պետք է բարձրացնեն ձեռնարկությունների ղեկավարների անձնական պատասխանատվությունը արտադրանքի որակի արմատական բարելավման համար, ուժեղացնեն պահանջկոտությունը որակի հարցում: Հոգածությունը բարձր որակի մասին գործնականորեն պետք է դառնա հանրապետության յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի պարտքն ու պատվի գործը:

Աշխատավորական շատ կոլեկտիվների համար նեղ տեղ է աշխատանքի արտադրողականության բարձրացումը: Միայն 1985 թվականին արդյունաբերական ձեռնարկությունների ընդհանուր թվի 13,5 տոկոսը չապահովեց այդ ցուցանիշի գծով պլանի կատարումը: Հանրապետության առաջատար շինարարական կազմակերպությունները նույնպես չապահովեցին աշխատանքի արտադրողականության պլանի կատարումը: 1985 թվականին այդ պլանը արդյունաբերական շինարարության մինիստրությունը կատարեց 96,5 տոկոսով, գյուղական շինարարության մինիստրությունը՝ 97,9, մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչությունը՝ 99,6 տոկոսով: Դրությունը չբարելավվեց նաև 1986 թվականի առաջին եռամսյակում:

1985 թվականին արդյունաբերական ձեռնարկությունների 15,6 տոկոսը թույլ է տվել արտադրանքի ինքնարժեքի թանկացում: Այդ տեսակետից գործերը է՛լ ավելի վատ են ագրոարդի ձեռնարկություններում:

Տնտեսավարման կարևորագույն որակական ցուցանիշներում՝ աշխատանքի արտադրողականություն, արտադրանքի որակ և ինքնարժեք, ինչպես հայելու մեջ, արտացոլվում են թե՛ արտադրության կազմակերպման, թե՛ նրա տեխնոլոգիայի վիճակը, թե՛ աշխատողների վարպետությունը, թե՛ տնտեսական աշխատանքի մակարդակը և թե առհասարակ գործերի ընդհանուր պատկերը ձեռնարկությունում: Դրա համար էլ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է դրանք պահեն իրենց աշխատանքի ուշադրության կենտրոնում և հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկություն, տնտեսություն, կազմակերպություն ժամանակի մեկ միավորի ընթացքում թողարկի ավելի շատ, բարձրորակ արտադրանք՝ էներգետիկ, նյութական ու ֆինանսական ռեսուրսների ցածր տեսակարար ծախսումներով:

Ինվեստիցիոն քաղաքականության կարևորագույն կողմերից մեկը շինարարության ժամկետների կրճատումն է, թերավարտ շինարարության ծավալների փոքրացումը: Համագումարը խնդիր դրեց առնվազն երկու անգամ կրճատել ինվեստիցիոն ցիկլը ինչպես ձեռնարկությունները վերակառուցելիս, այնպես էլ նոր օբյեկտներ կառուցելիս:

Այսօր Կենտկոմի պլենումում պետք է ուղղակի ասել, որ ո՛չ հանրապետության կառավարությունը, ո՛չ էլ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը պատշաճ հետևողականություն չեն դրսևորել կապիտալ շինարարության մեջ եղած լուրջ թերությունների վերացման գործում: Հնգամյա առաջադրանքների կատարումը չպիտի աքողի այն, որ տարեկան պլանների գումարով (իսկ դրանք մենք վերցրել ենք հնգամյա կանխագծումներից ավելի) չի ապահովված բնակելի տները, մանկապարտեզները, պոլիկլինիկաները գործարկման հանձնելու պլանների կատարումը: Տասներկուերորդ հնգամյակի սկզբին հանրապետությունում պետական կապիտալ ներդրումների հաշվին թերավարտ շինարարության ծավալը կազմում էր ընդհանուր ծավալի 116,7 տոկոսը, ինչը շատ ավելի բարձր է միջին միութենական ցուցանիշից: Այս ամենը ինչպես հանրապետության պետպլանի, տեղական սովետների, այնպես էլ մինիստրությունների ու գերատեսչությունների, կապալառուների և պատվիրատուների կողմից դրսևորվող պետական ցածր կարգապահության ուղղակի հետևանքն է: Դա

միջոցների փոշեցման, շինարարական կազմակերպությունների անբավարար աշխատանքի, մեծ թվով օբյեկտների համաժամանակյա շինարարության, դրանց կառուցման նորմատիվային ժամկետների խախտման հետևանքն է:

Նորմատիվային ժամկետների կոպիտ խախտումներով կառուցվող «մորուքավոր» օբյեկտներ մեզ մոտ շատ կան: Ահա արդեն ութ տարի է, ինչ կառուցվում է գեղարվեստաթատերական ինստիտուտի նոր շենքը՝ 4 միլիոն ռուբլի նախահաշվային արժողությամբ: Պետպլանը (նախագահի տեղակալ՝ ընկ. Ս. Տեր-Իսրայելյան) և պատվիրատուն՝ հանրապետության բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրությունը (ընկ. Լ. Ղարիբջանյան) ամեն տարի դրա շինարարության համար հատկացրել են բացահայտ անբավարար ծավալների կապիտալ ներդրումներ: Եվ ընդսմին «Երարդշին» տրեստը լիովին չի իրացրել հատկացված միջոցները: 1986 թվականի հունվարի 1-ի դրությամբ՝ նախահաշվային լիմիտի մնացորդը կազմում է 2,5 միլիոն ռուբլի: Լիակատար պարզության համար ընդգծենք, որ օբյեկտի շինարարության նորմատիվային ժամկետը կազմում է 2,5 տարի:

«Հայգունմետշին» տրեստը (կառավարիչ՝ Ս. Եղյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Վ. Ստեփանյան) 12 տարի է, ինչ կառուցում է Կարմրաշեն գյուղի քարաձուլվածքի գործարանը, որի շինմոնտաժային աշխատանքների նախահաշվային արժողությունը 3,5 միլիոն ռուբլի է, շինարարության նորմատիվային ժամկետը՝ 3 տարի: Ներկայումս կառույցը անտեր վիճակում է: Իսկ դա, ինչպես երևում է, չի անհանգստացնում ո՛չ շինարարներին, ո՛չ էլ պատվիրատուին՝ Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատին (ընկ. Ֆ. Պետրոսյան), որը ծայրահեղորեն անբավարար է կատարում իր պարտականությունները: Այնինչ այդ գործարանի արտադրանքը կարևոր նշանակություն ունի կոմբինատի տեխնոլոգիական խողովակաշարերի խնայողական շահագործման համար, որոնց նորոգման ու վերականգնման նպատակով ամեն տարի ծախսվում են նշանակալի միջոցներ:

1975 թվականից Դիլիջանում կառուցվում է հակատուբերկուլյոզային սանատորիա: Այստեղ էլ ինչպես պատվիրատուն՝ առողջապահության մինիստրությունը (ընկ. Է. Գաբրիելյան), այնպես էլ կապալառու կազմակերպությունը՝ արդյունաբերական շինարարության մինիստրությունը (ընկ. Ռ. Մելիքյան) ուղղակի անպատասխանատվություն են դրսևորում: Շինարարության 11 տարվա ընթացքում 4,4 միլիոն ռուբլի շինմոնտաժային աշխատանքներից կատարված են ընդամենը 2,9 միլիոն ռուբլու աշխատանքներ կամ 66 տոկոսը: Այն ամենի կեսից ավելին, ինչ օբյեկտում արվել էր ավելի վաղ, շարքից դուրս է եկել, ամեն տարի ավելանում են այլևայլ փոփոխությունների և քանդվածի վերականգնման հետ կապված ծախսերը: Բայց չէ որ աշխատանքների նորմալ պլանավորման ու կատարման դեպքում նման օբյեկտները կառուցվում են 2,5 տարում:

Եվ այսպիսի օրինակներ, ցավոք, քիչ չեն:

Նշելով վերոհիշյալ մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների անպատասխանատվությունը, պլենումն իրավասու է նրանցից պահանջել՝ վճռական միջոցներ ձեռնարկելու և ուղղակի մեղավորներին պատժելու համար: Պետք է նշել նաև համապատասխան կուսակցական կոմիտեների անբավարար վերահսկողությունը, նրանց հաշտվողական վերաբերմունքը այդ փաստերի նկատմամբ:

Հանրապետության կառավարությունը պետք է բարձրացնի պահանջկոտությունը պետպլանի, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների նկատմամբ կապիտալ ներդրումների ռացիոնալ օգտագործման, շինարարության ժամկետների կրճատման համար:

Դա առավել ևս կարևոր է, որովհետև, ինչպես ցույց է տալիս վերլուծությունը, նրանցից շատերը անհրաժեշտ հետևություններ չեն արել ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի որոշումներից, չեն վերակառուցել իրենց աշխատանքը:

Ինչպես նախորդ տարիներին, հանրապետության ավելի քան 20 պատվիրատու մինիստրություններ և գերատեսչություններ տիտղոսացուցակների մեջ մտցրել են օբյեկտների շինարարություն՝ դրանք չապահովելով շինարարության նորմատիվային ժամկետներին համապատասխան կապիտալ ներդրումներով: 1983 թվականից, օրինակ, Լուսակերտում կառուցվող ջրաբուժման հանրապետական ֆիզիոթերապևտիկ կենտրոնի գործարկումը ընթացիկ տարում ապահովելու համար առողջապահության



մինիստրությունը չի հատկացրել անհրաժեշտ 700 հազար ռուբլի, իսկ ռենտգենաբանության ինստիտուտի շենքի վերակառուցման համար՝ 420 հազար ռուբլի: Դրա հետ մեկտեղ շինարարության պլանի մեջ են մտցված նոր սկսվող 3 օբյեկտներ՝ 1,7 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումների տարեկան ծավալով:

Հարկավոր է վճռականորեն կասեցնել պատվիրատուների այդ անառողջ եռանդը, որը ընդհանուր ոչինչ չունի պետական մոտեցման հետ: Հարկավոր է պատասխանատվության ենթարկել պլանավորող մարմինների այն աշխատողներին, ովքեր ներողամտությամբ են վերաբերվում դրան: Այսօր մենք պետք է լուրջ պահանջներ ներկայացնենք նաև հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Հ. Հայրապետյանին, որը զբաղվում է կապիտալ շինարարությամբ և պարտավոր է ավելի հաստատուն դիրք բռնել պետական կարգուկանոնի հաստատման գործում:

Պետպլանը, մինիստրությունները ու գերատեսչությունները, տեղական սովետները պետք է վերջ դնեն միջոցների փոշեցման պրակտիկային: Այսուհետև կապիտալ շինարարության պլանները ու կառույցների տիտղոսացուցակները մշակելիս հարկավոր է ոչ միայն անշեղորեն կիրառել ձեռնարկությունների, շենքերի ու շինությունների կառուցման տևողության նորմաները, այլև հասնել շինարարության ժամկետների շեշտակի կրճատման: Այս գործը պետք է գտնվի Կենտկոմի բաժնի և հանրապետության Մինիստրների խորհրդի մշտական վերահսկողության ներքո:

Կուսակցության համագումարում ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ի. Ռիժկովի զեկուցման մեջ իրավացիորեն քննադատվեց պլանային օբյեկտների շինարարությունից կապալային կազմակերպությունները շեղելու և ոչ պլանային օբյեկտների շինարարությամբ զբաղեցնելու պրակտիկան, որ տեղ է գտել մեր հանրապետությունում: Դա խստիվ դատապարտվեց Կենտկոմի բյուրոյում, որ օրերս քննության առավ այդ հարցը: Հանրապետության պետպլանի թողտվության, կառավարության թույլ վերահսկողության պայմաններում մեզ մոտ տարբեր կապալային կազմակերպություններ կարգի խախտումով են իրականացրել մի շարք օբյեկտների շինարարությունը, օբյեկտներ, որոնք մտցված չեն եղել սահմանված կարգով ամեն տարի հաստատվող կապիտալ շինարարության պլանների մեջ: Դրանց թվում կան նաև այնպիսի օբյեկտներ, որոնց շինարարությունը առաջնահերթ անհրաժեշտությամբ չի թելադրված: Եվ դա այն ժամանակ, երբ չեն կատարվել բնակելի տների, պոլիկլինիկաների, մանկական նախադպրոցական հիմնարկների, ուրիշ կարևոր օբյեկտների շինարարության պլանները ու առաջադրանքները: Միայն հանրապետության բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստրության գծով հնգամյակում չի ապահովվել հանրապետության բնակավայրերի ջրամատակարարման բարելավման նպատակին ուղված ավելի քան 200 կիլոմետր ջրմուղների շինարարությունը:

Կենտկոմի բյուրոն սկզբունքային կուսակցական գնահատական տվեց այդ ամենին: Հանրապետության կառավարության ուշադրությունը հրավիրվեց ոչ պլանային օբյեկտների շինարարության անթույլատրելիության վրա, բյուրոն կառավարությունից պահանջեց սպառիչ միջոցներ ձեռնարկել այդ գործում պետական պատշաճ կարգուկանոն հաստատելու համար: Սկզբնական կուսակցական կազմակերպություններին հանձնարարվեց ուժեղացնել վերահսկողությունը, քննության առնել պլանային կարգապահության խախտումներ թույլ տված անձանց հարցը: Այս կապակցությամբ հարկ ենք համարում մեկ անգամ ևս նշել կոմունալ նշանակության օբյեկտների, հատկապես ջրատարների կառուցման արագացման կարևորությունը: Դա թելադրվում է մեր բնակավայրերի ջրամատակարարման գործի բարելավման հրատապությամբ: Միաժամանակ պետք է միջոցներ ձեռնարկել, որ հնարավորին չափ արագ վերացվեն խարխուլ բնակելի շինությունները:

Տասներկուերորդ հնգամյակի համար նախատեսված շինարարական ծրագրի իրականացումը պահանջում է բարձրացնել կապիտալ շինարարության ինդուստրացման մակարդակը: Այն պետք է դնել սկզբունքորեն այլ նյութատեխնիկական բազայի վրա, արագորեն վերակառուցել և տեխնիկապես վերազինել տնաշինական շատ կոմբինատներ, երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարաններ:

Սակայն հանրապետության շինարարական մինիստրությունները ու գերատեսչությունները առայժմ պատշաճ նախաձեռնություն, հաստատակամություն և նպատակասլացություն չեն դրսևորում այս հարցերի լուծման գործում: Սեփական արտա-

դրական բազայի շատ օբյեկտներ այնքան երկար են կառուցվում, որ արդեն այժմ տեխնոլոգիայի նոր արդիականացում են պահանջում:

Ընկերներ Ռ. Մելիքյանը, Գ. Թադևոսյանը, Հ. Ղամբարյանը, Լ. Ղազարյանը և մինիստրությունների ու գերատեսչությունների մյուս ղեկավարները պետք է արմատապես փոխեն իրենց վերաբերմունքը շինարարության և շինանյութերի արդյունաբերության բազայի զարգացման նկատմամբ, թոթափեն պահպանողականությունը, հասնեն արտադրության մեջ արդիական տեխնոլոգիաների, շինարարական գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ակտիվ ներդրման, լիովին ապահովեն կապիտալ շինարարության կատարելագործման հարցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կատարումը: Նրանք պարտավոր են մոտ ժամանակներս էապես բարելավել շինարարական արտադրության կազմակերպումը, բարձրացնել շինարարության արտադրողականությունն ու որակը:

Եվս մի հարց: Շինարարական կազմակերպությունների կառուցվածքը, դրանց կառավարման մեխանիզմը, դրանց մակարդակը, աշխատանքի ոճն ու մեթոդները այսօր փաստորեն չեն տարբերվում 50—60-ական թվականների մակարդակից ու ոճից: Կապիտալ շինարարության մեջ մասշտաբների աճը և որակական տեղաշարժերը հրամայաբար պահանջում են կատարելագործել դրանք: Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է անհապաղ զբաղվի դրանով:

Կենտկոմի շինարարության ու քաղաքային տնտեսության բաժինը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները նույնպես պետք է վերակառուցեն իրենց աշխատանքը, ավելի ազդու միջոցներ ձեռնարկեն բոլոր օղակների կուսակցական կազմակերպությունների կազմակերպական, քաղաքական և դաստիարակչական աշխատանքը բարելավելու, շինարարական արտադրության մեջ կարգուկանոն հաստատելու, շինարարության տեմպերն ու որակը բարձրացնելու համար, ավելի հետևողականորեն զբաղվեն շինարարական գործի հեռանկարային զարգացման հարցերով:

Լուրջ բարելավում է պահանջում նախագծային-նախահաշվային գործը: Ինչպես նշվեց համագումարում, այստեղ առանձնակի դեր է պատկանում հենց նախագծողներին: Հանրապետությունում քիչ չեն օրինակները, երբ նոր և վերակառուցվող օբյեկտները նախագծվում ու կառուցվում են տեխնիկական բարձր մակարդակով: Միևնույն ժամանակ հաճախ նախագծերի մեջ ներդրվում են հնացած տեխնիկական լուծումներ, թույլ են տրվում սխալներ նախահաշվային արժողությունը որոշելիս:

Լուրջ հանդիմանությունների են արժանի շատ նախագծերի ճարտարապետական մասը, դրանց անհամապատասխանությունը քաղաքաշինական պահանջներին: Այսօր չի կարելի նորմալ համարել մի շարք քաղաքների և գյուղերի կառուցապատման պրակտիկան: Շատ դեպքերում օբյեկտների տեղադրումը որոշելիս, առանց հաշվի առնելու ինժեներային կոմունիկացիաների առկայությունը, չեն նախատեսվում դրանց կարողությունների և շահագործային բնութագրերի մեծացման միջոցառումներ: Ինժեներային կոմունիկացիաների շինարարությունը հաճախ ավելի թանկ է նստում, քան բուն օբյեկտը:

1982 թվականին Սիսիանում, օրինակ, սկսվեց տրիկոտաժեղենի փաբրիկայի շինարարությունը 10,5 միլիոն ռուբլի նախահաշվային արժողությամբ: Այժմ, երբ շինարարությունն ավարտվում է, պարզվում է, որ ձեռնարկությունը շահագործել անհնար է և կեղտաջրերի ու տեխնիկական ջրերի հավաքման համար անհրաժեշտ է կառուցել մաքրման շինություններ: Իսկ այդ շինությունների արժողությունը մոտավորապես 9 միլիոն ռուբլի կկազմի:

Նախագծային-նախահաշվային գործի բարելավման հարցերը պետք է լրջորեն մտահոգեն պետշինին և նրանից պահանջում են անհետաձգելի գործնական միջոցների ձեռնարկում: Պետշինը պետք է վերակառուցի իր աշխատանքը, մանավանդ որ նրա հայեցողական դիրքն ու ինիցիատիվությունը քիչ վնաս չեն հասցնում գործին:

Կապիտալ շինարարության հատույցի մեծացմանը խոչընդոտող պրոբլեմներ քիչ չկան, ուստի մենք որքան շուտ ձեռնամուխ լինենք դրանց լուծմանը, այնքան արագ կհասնենք ցանկալի արդյունքի: Ինվեստիցիոն պրոցեսին մասնակցող կազմակերպությունների ղեկավարները պետք է վերակառուցվեն, վերակառուցվեն թե՛ հոգեբանորեն և թե մտածելակերպով ու գործելակերպով: Ավելի շատ պետական մոտեցում, ստեղծագործություն, նախաձեռնություն, կազմակերպվածություն և պատասխանատվություն՝ ահա թե նրանցից ինչ է պահանջվում այսօր: Անհրաժեշտ



է հասնել շինարարության պլանային առաջադրանքների անվերապահ կատարման, արտադրական կարողությունների, մանավանդ սոցիալական և կուլտուր-կենցաղային օբյեկտների գործարկման:

Կուսակցության XXVII համագումարը կարևորագույն խնդիր համարեց սննդամթերքներով բնակչության հուսալի ապահովումը, պարենային ծրագրի իրականացումը: Չնայած հանրապետության էկոնոմիկայի ագրարային սեկտորի ինտենսիվացման ուղղությամբ կատարված աշխատանքին, այդ գործում դեռևս կան ոչ քիչ թվով խոշոր թերություններ: Շատ շրջաններում ռացիոնալ կերպով չեն օգտագործվում հողը, նյութատեխնիկական և ֆինանսական ռեսուրսները, ցածր է դաշտերի ու ֆերմաների արդյունավետությունը, մի շարք տնտեսություններում նվազում է ֆոնդահատույցը, աճում արտադրանքի ինքնարժեքը: Այս ամենը վկայում է, որ այդ շրջանների կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը, կոմունիստների, գյուղի բոլոր աշխատավորների ջանքերը բավարար չափով չեն կենտրոնացնում ագրոարդյունաբերական համալիրի աշխատանքի արդյունավետության, նրա ինտենսիվացման բարձրացման վրա:

Այս մասին հանգամանորեն խոսվեց Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում: Սակայն ՍՄԿԿ XXVII համագումարի նոր և ավելի բարձր պահանջների լույսի ներքո այդ հարցերը առանձնակի նշանակություն և սրություն են ստանում, կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, ագրոհամալիրի բոլոր աշխատավորական կոլեկտիվների աշխատանքի առաջին պլան մղվում:

Հանրապետության ագրարային սեկտորում պետք է հասնել վճռական բեկման, ապահովել անցումը տնտեսավարման ինտենսիվ մեթոդների, նոր առաջադիմական տեխնոլոգիաների, նյութական ռեսուրսների օգտագործման ավելի արդյունավետ ձևերի մասշտաբային ներդրման, ապահովել դրանց համակենտրոնացումը առաջին հերթին այնտեղ, որտեղ դրանք կարող են առավել մեծ հատույց տալ և այդ հիման վրա արագացնել բնակչության համար պարենի և արդյունաբերության համար հումքի աճը: Մենք պետք է նախ և առաջ յուրաքանչյուր շրջանի կոնկրետ պայմաններում գտնենք դաշտերի բերքատվության և ֆերմաների մթերատվության բարձրացման առավել արդյունավետ մեթոդներ:

Ագրարային սեկտորի աշխատողների արմատական խնդիրն են մնում արտադրության գլխավոր միջոցի՝ հողի արդյունավետ օգտագործման, դրա բերրիության բարձրացման հարցերը: Այդ ուղղությամբ հանրապետությունում դրական տեղաշարժեր են կատարվել: Բայց ակնհայտ են նաև լուրջ թերությունները: Հանրապետության որոշ շրջաններում վարելահողի տարածքը չարդարացված կերպով կրճատվում է, ամեն տարի գյուղատնտեսական շրջանառության մեջ չեն ներգրավվում պատկառելի քանակությամբ ոռոգելի հողատարածություններ: Մի՞թե թույլատրելի է, որ անցած տարի Բաղրամյանի շրջանում (քարտուղար՝ ընկ. Հ. Մինասյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Բ. Ավչյան) կիրառություն չգտան ավելի քան 2.600 հեկտար ջրովի հողեր, իսկ Արարատի շրջանում (ընկ. ընկ. Օ. Հակոբյան, Բ. Այդինյան)՝ 1.300 հեկտար, Նաիրիի շրջանում (ընկ. ընկ. Մ. Հայրապետյան, Խ. Սաֆարյան)՝ 310 հեկտար, Արտաշատի շրջանում (ընկ. ընկ. Կ. Հովհաննիսյան, Վ. Ասատրյան)՝ 196 հեկտար, Աշտարակի շրջանում (ընկ. ընկ. Մ. Խաչատրյան, Կ. Զաքոյան)՝ 155 հեկտար:

Արարատյան դաշտի և հանրապետության նախալեռնային գոտիների մի շարք տնտեսություններում ագրոտեխնիկայի պահանջների, գյուղատնտեսական կուլտուրաների ջրման ռեժիմների ու նորմաների կոպիտ խախտումները, ինչպես նաև ոռոգման ու ցամաքեցման համակարգերի շահագործման ցածր մակարդակը հանգեցնում են վարելահողերի զգալի տարածությունների գերխոնավացման, կրկնաաղակալման և, վերջին հաշվով, դրանց շարքից դուրս գալուն:

Ցածր է մնում ոռոգվող հեկտարի հատույցը:

Մի շարք վայրերում անթույլատրելիորեն ցածր է շատ կուլտուրաների, առանձնապես բազմամյա տնկարկների, բերքատվությունը: Օրինակ, 23 շրջաններում պտղատու այգիների բերքատվությունը ավելի պակաս է հանրապետության միջին ցուցանիշից, որը մենք առանց այդ էլ ցածր ենք համարում, իսկ Գորիսի, Գուգարքի, Սպիտակի, Ստեփանավանի, Ղափանի շրջաններում մեկ հեկտարից հավաքում են

ընդամենը 7—9 ցենտներ պտուղ: Իսկ չէ՞ որ դա ըստ էության երկու կիլոգրամ պտուղ է մեկ ծառից:

Մեզ մոտ հողի բերրիության ուժի մեծացման համար գործի չեն դրվում խորքային ռեզերվները: Իսկ այդ ռեզերվներն են մելիորատիվ աշխատանքների տեմպերի արագացումն ու որակի բարելավումը, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների, հողագործության գիտականորեն հիմնավորված համակարգերի ներդնումը, լայն անցումը ինտենսիվ և ինդուստրիալ տեխնոլոգիաների և այլն:

Երբ խոսում են մելիորացման մասին, շատերը չգիտես ինչու կարծում են, թե խոսքը վերաբերում է միայն հողերի ոռոգմանը կամ ցամաքեցմանը, այսինքն այն աշխատանքին, որը կապված է ջրատնտեսական շինարարության հետ: Իրականում մելիորացումը հողերի որակի բարելավման, դրանց բնական բերրիության պահպանման և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության աճի նպատակով անցկացվող աշխատանքների լայն կոմպլեքս է: Տասնմեկերորդ հնգամյակում մեզ մոտ այդ նպատակների համար 10 անգամ ավելի պակաս կապիտալ ներդրումներ են հատկացվել, քան ջրատնտեսական շինարարությանը: Հարկավոր է շտկել վիճակը: Մելիորատիվ միջոցառումների ոչ կոմպլեքսայնությունը իջեցնում է հողերի բնական բերրիությունը, թույլ չի տալիս լիովին օգտագործել հողի պոտենցիալը:

Այստեղ պետք է պահանջներ ներկայացնել ճյուղի գիտահետազոտական և նախագծային ստորաբաժանումներին՝ ջրային պրոբլեմների ու հիդրոտեխնիկայի ինստիտուտին (ընկ. Վ. Ալեքսանդրյան), «Հայջրտնտնախագիծ» ինստիտուտին (ընկ. Մ. Ծովյան), հողագործության ինստիտուտին (ընկ. Բ. Աստվածատրյան) և մյուս ինստիտուտներին, որոնք հետազոտությունները կատարում են ոչ կոմպլեքսայնորեն, իրարից անջատ:

Հանրապետությունում գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման ճանապարհին առաջին քայլերն են արված բերքի ծրագրավորված աճեցման հողագործական համակարգի ներդրման ուղղությամբ: 1985 թվականին շրջանների 325 տնտեսություններում այդ համակարգով աճեցվել են 10 հազար հեկտար աշնանացան հացահատիկային կուլտուրաներ, 5 հազար հեկտար եգիպտացորեն և 15 հազար հեկտար բազմամյա խոտաբույսեր: Անցած տարվա չափազանց անբարենպաստ եղանակային պայմաններում աշնանացան կուլտուրաների բերքատվությունը մեկ երրորդով գերազանցեց հանրապետության միջին պլանային ցուցանիշը: Հարկավոր է արագ առաջ գնալ, այդ մեթոդը տարածել մշակովի գյուղատնտեսական կուլտուրաների բոլոր տեսակների աճեցման վրա:

Վերջին տարիներս հանրապետությունում ծավալվել է անասնապահության ինտենսիվացման և ֆերմաների մթերատվության բարձրացման աշխատանքը: Առանձին շրջաններում լավ արդյունքների են հասել: Սակայն ընդհանուր առմամբ գործերի վիճակը մեզ ամենևին էլ չի կարող գոհացնել: Կենդանիների առկա գենետիկ պոտենցիալը և կերի բազան առայժմ ցանկալի հատույցը չեն տալիս: Առանձնակի մտահոգություն է պատճառում, որ անասնապահական արտադրանքի աճը կասեցնող պատճառները շատ դեպքերում սուբյեկտիվ բնույթ են կրում:

Շատ շրջանների տնտեսություններ, անասնապահության ծավալային ցուցանիշների ետևից ընկած, բոլորովին աչքաթող են անում ճյուղի որակական ցուցանիշների բարելավման հարցերը: Թումանյանի, Մարտունու, Կալինինոյի, Վարդենիսի, Ամասիայի և Իջևանի շրջաններում ամեն տարի, որպես կանոն, ապահովվում է անասնապահության 22 հիմնական ցուցանիշներից միայն կեսի կատարումը:

Պետագրոարդը, կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները պետք է ամենագործուն միջոցները ձեռնարկեն այդ կարևոր ճյուղի ինտենսիվացումն արագացնելու համար:

Տասնմեկերորդ հնգամյակում անասնապահության հիմնական փոնդերը աճել են 34,4 տոկոսով, իսկ հանրային սեկտորում համախառն արտադրանքը՝ ընդամենը 17,9 տոկոսով: Ընդ որում կաթնատվությունն ավելացել է ընդամենը 6 տոկոսով, մեկ գլուխ խոշոր եղջերավոր անասունի հանձնման միջին քաշը՝ 7,8 տոկոսով: 100 հեկտար հողահանդակների հաշվով անասնապահական մթերքների արտադրությունը ավելացել է՝ կաթինը 10 տոկոսով, մսինը 3 տոկոսով:

Միանգամայն անբավարար է օգտագործվում ինտենսիվացման այնպիսի կարևոր գործոն, ինչպիսին է հոտի մեջ կովերի տեսակարար կշռի մեծացումը: Տարիներ շարունակ մեզ չի հաջողվում հասնել հանրային հոտի կառուցվածքի օպտիմացման: Անասնապահության զարգացումն ու նրա ինտենսիվացումը ետ պահող գործոն են նաև հոտի վերարտադրության անբավարար վիճակը, կովերի ստերջության բարձր տոկոսը:

Լիովին գործի չեն կոչված անասնապահության ինտենսիվացման այնպիսի կարևոր ռեզերվներ, ինչպիսիք են մասնագիտացումն ու միջտնտեսային կոոպերացումը:

Վերջին տարիներս հանրապետությունում պակասել է պահանջկոտությունը տնտեսական ղեկավարների ու մասնագետների նկատմամբ կենդանիների անասնաբուժական պաշտպանության կազմակերպման համար, ինչի հետևանքով հիվանդությունների գծով անբարեհաջող ֆերմաների քանակը չի կրճատվում, դեռևս զգալի քանակությամբ կովեր են հանձնվում սպանդի, իսկ տեղ-տեղ վերացվում են ամբողջ կաթնապրանքային ֆերմաներ:

Այդ գործում անթույլատրելի հանդուրժողություն է դրսևորվում կառավարության և Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի կողմից, որոնք խիստ պատասխանատվության չեն ենթարկել մեղավորներին: Կարծում ենք, քննադատությունից համապատասխան հետևություններ կանեն թե՛ Կենտկոմի գյուղբաժինը և թե պետագրոարդը:

Անասնապահության զարգացումը ետ պահող գործոն են կերի բազայի զարգացման դանդաղ տեմպերը: Անասնապահական արտադրանքի արտադրության նախատեսված բնագծերի ապահովման համար մենք պետք է կերի հավաքումն ավելացնենք 1,5 անգամ: Եվ գլխավորն այն է, որ կերի հավելաճը պետք է ամբողջովին ստացվի կերարտադրության ինտենսիվացման, կուտակվող կերերի որակի բարձրացման հաշվին:

Մինչդեռ մի շարք շրջաններում չեն կատարվում կերի բազայի ամրապնդման նպատակով իրենց իսկ նախատեսած միջոցառումները: Օրինակ, կուսակցության Սպիտակի շրջկոմը (քարտուղար՝ ընկ. Հ. Մկրտչյան), ելնելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1981 թվականի հուլիսյան պլենումի պահանջներից, նախատեսել էր տասնմեկերորդ հնգամյակում սեփական կերարտադրության ծավալները մեծացնել 1,5 անգամ և մեկ պայմանական կենդանու հաշվով կուտակել 17,7 ցենտներ կերամիավոր: Եվ ի՞նչ: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին շրջանում կերապահովվածությունը կազմեց ընդամենը 13,5 ցենտներ կերամիավոր: Չիրականացվեցին նաև՝ կենդանիների կերաբաժնի սննդարարությունը բարձրացնելու միջոցառումները: Ավելին, առվույտի և կորնգանի խոտի միջին տարեկան ծավալը կրճատվեց 12 տոկոսով: Այդ պայմաններում արդեն մեկնաբանությունների կարիք չունի այն, թե ինչու է վերջին տարիներս շրջանում մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացել միայն 5 կիլոգրամով:

Հարկավոր է լիովին գործի դնել նաև այնպիսի կարևոր ռեզերվ, ինչպիսին է բնական կերահանդակների բերրիության բարձրացումը:

Մեր կարևորագույն խնդիրն է կրճատել դաշտերի ու ֆերմաների արտադրանքի կորուստները, որ թույլ են տրվում հավաքելիս, փոխադրելիս, պահպանելիս ու վերամշակելիս: Պետք է ուղղակի ասել, որ մեզ մոտ այս հարցերին պատշաճ ուշադրություն չի դարձվել: Այդ է վկայում թեկուզ այն փաստը, որ Նոյեմբերյանի, Նաիրիի, Աշտարակի և այլ շրջաններում ինտենսիվ պտղաբուծությունը զարգացնելիս ժամանակին միջոցներ չձեռնարկվեցին պտուղների արտադրության վայրերում վերամշակման ու պահպանման կարողությունների ստեղծման համար: Լրիվ չափով չեն իրացվել պտուղ-բանջարեղենի պահեստների շինարարությանը հատկացված կապիտալ ներդրումները:

Ամբողջությամբ վերցված հանրապետությունում ապահովվածությունը պահեստներով ներկայումս կազմում է կարտոֆիլինը՝ 42 տոկոս, պտուղ-բանջարեղենինը՝ 26, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության արտադրանքինը՝ 82, պահածոներինը 50 տոկոս:

Զգալի են արտադրանքի կորուստները նաև դրա մթերման ու փոխադրման պրոցեսում: Այդ կորուստների կանխման գործում հուսալի միջոց պետք է ծառայի գյուղատնտեսական արտադրանքի ընդունման կազմակերպումը անմիջականորեն տնտեսություններում: Սակայն այդ ռեզերվը մինչև վերջ գործի չի կոչված. տասնմեկերորդ հնգամյակում կենտրոնացված առաքման գծով մթերվել է անասունների ու

թոչունների 44 տոկոսը, կաթի, բանջարեղենի մեկ երրորդը, պտուղների մեկ քառորդը և խաղողի կեսից մի քիչ ավելին:

Ագրոհամալիրի վերամշակող արդյունաբերության մեջ այսօր առանձնակի նշանակություն է ստացել գինու-օղու արտադրության կրճատման կապակցությամբ ձեռնարկությունների, տեղամասերի, արտադրամասերի մի մասը վերապրոֆիլավորելու, ազատվող հումքը բնակչության շրջանում պահանջարկ վայելող արտադրանքի թողարկման համար օգտագործելու պրոբլեմը: Սակայն այստեղ դանդաղկոտություն ու ոչ փութաջանություն է դրսևորվում:

Ինչո՞ւ պետք է կոլտնտեսային շուկաները լեցուն լինեն բազմապիսի ազգային սննդամթերքներով, իսկ արդյունաբերությունը անկարող գտնվի յուրացնելու դրանց արտադրությունը: Կամ էլ՝ թույլատրելի՞ է, որ պահածոների արտադրության ընդհանուր ծավալի մեջ ջեմերի, մուրաբաների, կոմպոտների տեսակարար կշիռը չի անցնում 10 տոկոսից: Իսկ փոքր չափերով կշռաբաշխված՝ թողարկվում է պահածոյի արտադրանքի ընդամենը մեկ հինգերորդ մասը:

Պետագրոարդը (ընկ. Վ. Մովսիսյան), կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները պետք է հաստատակամորեն ձգտեն հասնել ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի արդյունավետության բարձրացման այդ և մյուս հարցերի շուտափույթ լուծման, ճյուղերի աշխատողների ջանքերը մոբիլիզացնեն կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականության կենսագործման, պարենային ծրագրի կատարման համար:

ՍՄԿԿ XXVII համագումարի նախատեսած վերափոխումների խորությունն ու մասշտաբայնությունը պահանջում են նոր մակարդակի բարձրացնել ժողովրդական տնտեսության ղեկավարումը, մեծացնել կառավարման տնտեսագիտական մեթոդների դերը, միավորումների և ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունն ու պատասխանատվությունը, հմտորեն օգտագործել տնտեսական խթաններն ու լծակները:

Ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջներից՝ այժմ միութենական մարմիններում կատարվում է կառավարման նոր համակարգերի մշակման մեծ աշխատանք: Չի կարելի, որ մենք մի կողմ կանգնենք այդ կարևոր գործից և սպասենք պատրաստի լուծումների: Հիմնվելով հանրապետության արդյունաբերության մեջ անցկացված տնտեսափորձի արդյունքների վրա՝ պետք է ակտիվորեն մասնակցել կառավարման նոր մեթոդների որոնմանը, ավելի համարձակորեն հրաժարվել հնացած կազմակերպական ձևերից: Կատարելագործելով կառավարման կառուցվածքը՝ կարևոր է հասնել տարբեր ոլորտների աշխատողների թվակազմի լավագույն հարաբերակցության, էապես պարզեցնել ու էժանացնել կառավարման ապարատը, վճռականորեն վերացնել աշխատանքում եղած ձևամոլությունն ու բյուրոկրատիզմը: Տնտեսական մեխանիզմի վերակառուցումը հարկավոր է սկսել գիտակցության վերակառուցումից, մտածողության ստեղծված ստերեոտիպերից հրաժարվելուց: Իսկ սպառողական դիրք գրաված պահպանողականներին և անբան պրոժեկտյորներին պետք է իսկական ճակատամարտ տալ և նրանց որքան կարելի է հեռու պահել այդ կենդանի, ստեղծագործական աշխատանքից: Ինչպես ասվեց համագումարում, մեր և նրանց ճանապարհները պարզապես տարբեր են: Մանավանդ նրանցը, ովքեր հույս ունեն, թե ամեն ինչ կհանդարտվի և կվերադառնա նախկին հունը:

Մեզ լուրջ աշխատանք է սպասում: Արդյունաբերության մեջ տնտեսական մեխանիզմի վերակառուցումն սկսված է: Մեքենաշինական ձեռնարկությունները փոխադրվում են հիմնականում կառավարման երկօղակ համակարգի: Հանրապետությունում առանձին ինքնուրույն ձեռնարկությունների և գիտական կազմակերպությունների բազայի վրա ստեղծված են և ստեղծվում են նոր միավորումներ: Մենք պետք է այսուհետև էլ խորամուխ լինենք արտադրության կառավարումը կատարելագործելու հարցերին, ավելի համարձակորեն ընթանանք գիտաարտադրական և միջճյուղային խոշոր միավորումների ստեղծման ուղիով: Լուրջ փոփոխման կարիք ունի կապիտալ շինարարության կառավարման կառուցվածքը, որի մասին արդեն ասվեց:

Մեզ համար կարևորագույն խնդիր է «Երկրի ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման լրիվ և ժամանա-



կին կատարումը: Մենք պետք է հասնենք տնտեսավարման տնտեսական մեթոդների մասշտաբային ներդրմանը պետագրոարդի ճյուղերում, ուր հիմնական արտադրական ֆոնդերի աճի տեմպերը գերազանցում են համախառն արտադրանքի աճի տեմպերը, որ հանգեցրել է հողագործության և անասնապահության արտադրանքի գրեթե բոլոր տեսակների ինքնարժեքի աճի: Յուրաքանչյուր չորրորդ տնտեսություն շարունակում է աշխատել վնասով, իսկ մի շարք կոլեկտիվ ու պետական տնտեսությունների շահութաբերությունը ապահովվում է գյուղատնտեսական մթերքների գնման գների հավելումների հաշվին միայն:

Տնտեսավարման տնտեսական արդյունքների բարելավման գործում, ի թիվս այլ ռեզերվների, տակավին անբավարար են օգտագործվում աշխատանքի կազմակերպման ու խթանման առաջավոր մեթոդները, տնտեսական հաշվարկը: Դրանց լայն ներդրումը արգելակում են տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների անվճռական, հաճախ՝ սպառողական դիրքավորումը, իսկ երբեմն էլ նրանցից շատերի պահպանողականությունը, որն իր հերթին առաջանում է այդ հարցերում նրանց ոչ բավարար ձեռնահասությամբ:

Անցյալ տարի հանրապետության գյուղատնտեսության արտադրության մեջ կոլեկտիվ կապալի մեթոդով աշխատում էին 1.259 բրիգադ և օղակ, որոնք ընդգրկում էին գյուղի աշխատավորների միայն մեկ վեցերորդը: Աշխատանքի կազմակերպման ու խթանման առաջավոր մեթոդները իրենց համար դժվարությամբ են ճանապարհ հարթում նաև անասնապահության ասպարեզում: Այս ճյուղում կապալով է աշխատում ընդամենը 2.842 անասնապահ, որոնց ամրացված է կովերի գլխաքանակի 2,6 տոկոսը, խոշոր եղջերավոր անասունների բտվող մատղաշի 8,4 տոկոսը, խոզերի 17,2 տոկոսը, ոչխարների 8,2 տոկոսը: Այդ գործում դեռևս շատ է ձևամոլությունը:

Ագրոարդյունաբերական համալիրի բոլոր օղակներում տնտեսավարման տնտեսական մեթոդներին հետևողականորեն անցնելը կուսակցական կոմիտեներից պահանջում է նոր, ավելի կատարյալ մոտեցումներ կոլտնտեսությունների, սովխոզների, մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարման նկատմամբ: Նրանք պետք է ձգտեն այն բանին, որ գործի դրվեն արդյունաբերության վերամշակող ճյուղերի ու գյուղատնտեսության նոր ռեզերվները, ամենուրեք ներդրվեն տնտհաշվարկը, տնտեսական գործունեության ինքնահատուցելիության սկզբունքը:

Անհրաժեշտ է կադրերի հետ կատարվող աշխատանքը այնպես կազմակերպել, որ նոր պայմաններում յուրաքանչյուրն իր տեղում բարեխղճորեն, ստեղծագործաբար, գործիմացությամբ կատարի առաջադրված խնդիրը: Մշտապես կատարելագործելով տնտեսական մեխանիզմը, պետք է լայն ասպարեզ բացել տեղական նախաձեռնության ու ձեռներեցության համար, ըստ ամենայնի նպաստել կադրերի պատասխանատվության և ինքնուրույնության դաստիարակմանը, նրանց մեջ քաղաքական ու գործարար հատկանիշների ձևավորմանը:

Ընկերնե՛ր: Ամենուրեք ձգտելով տնտեսական գործունեության բարելավման, պետք է լուրջ ուշադրություն դարձնել ժողովրդական տնտեսության մեջ ֆինանսավարկային հարաբերությունների հետագա կատարելագործման, դրամական շրջանառության ամրապնդման հարցին:

Հանրապետության կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները առայժմ քիչ ուշադրություն են դարձնում ձեռնարկությունների և ժողովրդական տնտեսության ճյուղերի ֆինանսական վիճակի պրոբլեմներին, նրանց տնտեսական գործունեության գնահատականը հաճախ չի շաղկապվում ֆինանսական ցուցանիշների կատարման հետ, որոնք իրենց էությամբ արտացոլում են տնտեսության վարման արդյունավետության աստիճանը: Հանրապետությունում այս տարվա սկզբին աճել են նյութական արժեքների գերնորմատիվ, չվարկավորված մնացորդները և պատրաստի արտադրանքի մնացորդները: Կտրուկ աճել են նաև բանկերի վարկերի գծով և մատակարարների հետ վերջնահաշիվների գծով չվճարված գումարները: Անցած հնգամյակում մինիստրություններն ու գերատեսչությունները թույլ տվեցին հսկայական անարտադրողական ծախսեր ու կորուստներ, որոնց մեկ երրորդը կազմում են տուգանքներն ու տույժերը:

Անփույթ տնտեսավարման պատճառով ֆինանսական ծանր վիճակ է ստեղծվել հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրությունում: 1986 թվականի հունվարի 1-ի դրությամբ չվճարված գումարները 1981 թվականի հունվարի 1-ի հա-

մեմատությամբ աճել են մի քանի տասնյակ անգամ: Ապրանքանյութական արժեքների մնացորդները մինիստրության գծով աճել են 131,4 տոկոսով, իսկ պատրաստի արտադրանքի մնացորդները՝ ավելի քան 3 անգամ:

Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստր ընկ. Ա. Գևորգյանը, մինիստրության կոլեգիան, որոնք բազմիցս քննադատվել են վատ տնտեսավարման համար, ժամանակն է, որ հետևություններ անեն և շտկեն դրությունը: Նրանք չպետք է մոռանան իրենց ուղղակի պատասխանատվությունը այդ ամենի համար:

Մի շարք ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների ֆինանսական ծանր վիճակը խոշոր վնաս է պատճառում հանրապետության էկոնոմիկային: Լուրջ դժվարություններ են առաջացել բյուջեի եկամտային մասի, գանձարկղային պլանի կատարման, ժողովրդական տնտեսության մեջ վերջնահաշիվների անցկացման, տնտեսական գործունեության անխափան վարման ասպարեզում:

Բանկային վարկերը միշտ էլ օգտագործվել են տնտեսական կազմակերպությունների ժամանակավոր պահանջմունքները ծածկելու համար: Բայց երբ դրանք դառնում են շրջանառու միջոցների ձևավորման հիմնական աղբյուրները, դա արդեն ահազանգ է, որ էկոնոմիկայի մեջ ոչ ամեն ինչ է բարեհաջող: Չէ որ փոխառու միջոցների դիմաց պետք է վճարել և այն էլ՝ ոչ քիչ: Միայն 1985 թվականին հանրապետության տնտեսական կազմակերպությունները որպես պետբանկի վարկերի տոկոսներ վճարել են ավելի քան 27 միլիոն ռուբլի՝ ավելի բարձր չափերով, ժամկետանց վարկերի դիմաց: Դրանից խուսափելու համար տնտեսական մարմինները պետք է առաջնահերթ ուշադրություն նվիրեն սեփական շրջանառու միջոցների պահպանմանն ու համալրմանը: Սա շատ կարևոր ու սկզբունքային հարց է:

Այսպես, ընկերներ, այլևս չի կարող շարունակվել: Եթե մենք ուզում ենք ոչ թե խոսքով, այլ գործով բանիմաց կառավարել տնտեսական բոլոր պրոցեսները առանձին ռեգիոնների և ամբողջ հանրապետության մասշտաբով, եթե մենք մտադիր ենք պահպանել սոցիալ-տնտեսական զարգացման արագ տեմպերը, ապա պետք է շատ կարճ ժամանակամիջոցում արմատական բեկում կատարենք բոլոր աստիճանների ղեկավարների տնտեսագիտական մտածողության մեջ:

Պետք է ուղղակի ասել, որ այնպիսի կարևորագույն տնտեսագիտական կատեգորիաներ, ինչպիսիք են ֆինանսներն ու վարկերը, գնագոյացումը, դրամական շրջանառությունը, դրամական զանգվածի ծավալի և դրա ծածկման հաշվեկշռվածությունը և շատ այլ կատեգորիաներ, առայժմ ըստ էության մնում են մեր շատ կուսակցական կոմիտեների տեսադաշտից դուրս:

Անհրաժեշտ է բարձրացնել տնտեսական ղեկավարներին ներկայացվող պահանջկոտությունը ղեկավարվող ստորաբաժանումներում նրանց կողմից ֆինանսական նորմալ վիճակի ապահովման համար: Կոմունիստ ղեկավարները անկախ նրանից՝ ձեռնարկության դիրեկտոր են թե մինիստր, ֆինանսական կարգապահության խախտումների, պետական միջոցների անտնտեսվար օգտագործման համար պետք է ենթարկվեն ամենախիստ կուսակցական պատասխանատվության:

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ավելի խիստ գնահատականներ տա մինիստրությունների ու գերատեսչությունների ֆինանսատնտեսական գործունեության տարեկան արդյունքները քննարկելիս, իսկ անհրաժեշտ դեպքերում համապատասխան հարցերը ներկայացնի Կենտկոմի բյուրոյի քննարկմանը:

Ելնելով այսօրվա պահանջներից՝ պետք է իրենց աշխատանքը վերակառուցեն նաև ֆինանսների մինիստրությունը (ընկ. Զ. Զանոյան), ՍՍՀՄ պետբանկի (ընկ. Ի. Իսահակյան) և ՍՍՀՄ շինբանկի հայկական գրասենյակները (ընկ. Ա. Դադայան): Նրանք հաճախ հանդես են բերում պասսիվություն, սահմանափակվում են հայտնաբերված խախտումների ու թերությունների լոկ արձանագրումով: Նրանք պետք է բարձրացնեն տնտեսագիտական ու վերահսկիչ աշխատանքների որակը, ավելի շատ հարձակողականություն և հետևողականություն հանդես բերեն իրենց գործողություններում:

Պետք է լուրջ ուշադրություն դարձնել գների խթանիչ դերի ուժեղացմանը: 1976—1984 թվականներին արդյունաբերության մեջ շահագործման հանձնված 71 ձեռնարկությունից և օբյեկտից 40-ի նախագծային կարողությունները 1985 թվականի վերջերին դեռևս լիովին իրացված չէին: Ընդ որում դրանցից 24-ի յուրացման



նորմատիվ ժամկետները վաղուց են անցել: Միայն այդ պատճառով նախագծի դիմաց պակաս է տրվել 107,5 միլիոն ռուբլու արտադրանք:

Այս տեսակետից լուրջ քննադատության է արժանի նաև քաղաքացիական ավիացիայի հայկական վարչությունը (ընկ. Դ. Աթբաշյան): Վերջին տասը տարում հիմնական ֆոնդերը և աշխատողների թիվը մեծացել է ավելի քան երկու անգամ, իսկ փոխադրվող ուղևորների թիվը նվազել է:

Իսկ մենք ինչքա՞ն ենք կորցնում ներթափոխայնության ցածր գործակցի, ոչ ռիթմիկ աշխատանքի, սարքավորումների թերբեռնվածության, աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների վատ օգտագործման, աշխատատեղի ոչ ռացիոնալ կազմակերպման, գործալքումների, աշխատաժամանակի կորուստների պատճառով:

Անհրաժեշտ է հանրապետության մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքը վերակառուցել նաև վերահսկողության մարզում, ավելի գործուն և արդյունավետ դարձնել հանձնաժողովների աշխատանքը գների, առևտրի կանոնների և ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներին առընթեր կատարվող սպասարկումների սակագների վերահսկման ուղղությամբ:

Էկոնոմիկայի բարձր արդյունավետության համար պայքարի մեջ կարևոր նշանակություն է ձեռք բերում այն ամենի լրիվ օգտագործումը, ինչ կա մեր տրամադրության տակ:

Իսկ ինչպե՞ս ենք մենք օգտագործում առկա հնարավորությունները: Պատասխանը տալիս են հետևյալ օրինակները: Հարկ է հատկապես նշել պայմանագրային մատակարարումների պլանները չկատարելու փաստերը: Դա վնասում է ոչ միայն հանրապետությանը, այլև ազդում է երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության վրա: Մի՞թե կարելի է հաշտվել այն բանի հետ, երբ մատակարարումների պլանները պարբերաբար չեն կատարում շատ ձեռնարկություններ ու ամբողջ ճյուղեր: Չէ՞ որ ամբողջությամբ վերցված արդյունաբերության մեջ դրանք առաջին եռամսյակում կատարվել են ընդամենը 98,2 տոկոսով:

Մեզ համար առաջնահերթ է նաև ազատ աշխատանքային ռեզերվների օգտագործման հարցը: Հարկ է այսուհետև էլ ինչպես հանրապետության մասշտաբով, այնպես էլ յուրաքանչյուր շրջանում իրականացնել կոնկրետ ծրագրեր դրանց ռացիոնալ և լրիվ օգտագործման համար:

Եվս մի պրոբլեմ: Կյանքը համոզում է, որ մեծ հաշվով շահութաբեր է լինում այն տնտեսական գործունեությունը միայն, որը համերաշխ է բնության հետ: Պետական շահերը պահանջում են վճռականորեն վերջ տալ շրջակա միջավայրին գերատեսչական մոտեցման դրսևորումներին: Մաքուր օդը, մաքուր ջուրը միայն էկոլոգիական բարեկեցության նշաններ չեն. դրանք նաև առողջ էկոնոմիկայի վկայություն են:

Հայտնի են տասներկուերորդ հնգամյակի խնդիրները այդ կարևոր բնագավառում: Շրջակա միջավայրի պահպանության նպատակով պետք է իրացվի 225 միլիոն ռուբլի, և այստեղ անհրաժեշտ են պետական խիստ կարգապահություն ու բարձր քաղաքացիականություն: Հարկավոր է արտադրության մեջ արմատապես բարելավել էկոլոգիական կարգապահությունը: Ջրի, օդի մաքրման որակը պետք է դառնա ձեռնարկությունների աշխատանքի նույնպիսի կարևոր ցուցանիշ, ինչպիսին է նրանց կողմից թողարկվող արտադրանքի որակը: Հարկավոր է խստացնել ձեռնարկությունների ու կազմակերպությունների իրավաբանական պատասխանատվությունը շրջակա միջավայրի վիճակի համար:

Նյութական արտադրության ոլորտում ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրները իրենց մասշտաբներով վիթխարի են, բարդ ու բազմազան: Մեր պարտքն է առավելագույն ավանդ ներդնել այդ խնդիրների շուտափույթ կատարման **մեջ,** գործնականում իրականացնել ամբողջ նախատեսվածը, ապահովել բարձր արդյունքների ձեռքբերումը գործունեության բոլոր ուղղություններում, լինել կուսակցության տնտեսական ստրատեգիայի ակտիվ կենսագործողներ: Ժողովրդական տնտեսության մեջ խոր վերափոխումներ կատարելու կուսակցության մշակած ստրատեգիայի իրագործումը կապահովի էկոնոմիկայի զարգացման արագացում: Բայց դա քիչ ժամանակ չի պահանջի: Իսկ ինչպե՞ս հասնել աճի տեմպերի անհրաժեշտ արագացման

այսօր, հիմա: Ինչպե՞ս սկսել զարգացման արագացումը այնպիսի պայմաններում, երբ դեռ նոր են ծավալվում արտադրական ապարատի արդիականացման աշխատանքները, նոր է կուտակվում գիտատեխնիկական առաջադիմության պոտենցիալ էներգիա:

Այս հարցերի պատասխանը մեկն է՝ մեզանում եղած բոլոր ռեզերվների առավելագույն մոբիլիզացումով: Եվ, ինչպես ընդգծված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, ավելի խելացի է սկսել այն ռեզերվներից, որոնք խոշոր ծախսումներ չեն պահանջում, բայց տալիս են արագ և շոշափելի արդյունք: Խոսքը վերաբերում է կազմակերպական-տնտեսական և սոցիալ-հոգեբանական գործոններին, ստեղծված արտադրական պոտենցիալի ավելի լավ օգտագործմանը, աշխատանքի խթանման գործունեության բարձրացմանը, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդմանը, անտնտեսվարության հաղթահարմանը: Ծախագրգռության, տնտեսատիրոջ հոգածության պարագայում այդ միջոցառումները բարձր հատույց կտան:

Երկարաժամկետ տնտեսական ստրատեգիայի գործնական իրացման առաջին և շատ պատասխանատու փուլն է սկսված տասներկուերորդ հնգամյակը: Այն պետք է շրջադարձային լինի երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման բոլոր ուղղություններում:

Արդեն ավարտվել է հնգամյակի մեկնարկային տարվա առաջին եռամսյակը: Ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերում պլանային առաջադրանքները ամբողջությամբ վերցված կատարված են: Սակայն, շատ թերություններ, որոնց մասին խոսվեց կուսակցության XXVII համագումարում, վերացված չեն: Հանրապետության 43 արտադրական միավորումներ և ձեռնարկություններ չեն կատարել ընթացիկ տարվա առաջին եռամսյակի արտադրանքի իրացման, 26-ը՝ համախառն արտադրանքի պլանները: Դրանց թվում են «Հայավտո», «Հայոսկի», «Հայէլեկտրաշարժիչ» արտադրական միավորումները, թեթև արդյունաբերության մինիստրությունը:

Անիի, Հոկտեմբերյանի, Թալինի, Ծամշադինի շրջանները, Դիլիջանը նախորդ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ պակասեցրել են անասնապահական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի ծավալները, իսկ Բաղրամյանի և Ծահումյանի շրջանները չեն ապահովել մսի, Կալինինոյի, Մասիսի, Թումանյանի շրջանները՝ կաթի պետվաճառքի պլանները: Արարատի, Արտաշատի, Աշտարակի, Նոյեմբերյանի, Հոկտեմբերյանի, Ծամշադինի շրջանների շատ տնտեսություններում ձգձգվում են խաղողի էտի, չոր կապի, միջշարային տրածությունների վարի, պարարտացման և ագրոտեխնիկական մյուս աշխատանքները:

Մի շարք շինարարական կազմակերպություններ չապահովեցին շինմոնտաժային աշխատանքների ծավալների կատարումը:

Սա, ընկերներ, ուղղակի անհանդուրժելի է: Պետք է ուժեղացնել խստապահանջությունը անփույթ աշխատողների նկատմամբ: Պետք է բարձրացնել ո՛չ միայն ղեկավարների, այլև կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվությունը պլանային առաջադրանքների կատարման համար:

Կուսակցության յուրաքանչյուր շրջկոմ ու քաղկոմ, յուրաքանչյուր մինիստրություն ու գերատեսչություն, ձեռնարկություն ու կազմակերպություն պետք է խորապես վերլուծի առաջին եռամսյակի աշխատանքի արդյունքները, պատասխանատվության ենթարկի մեղավորներին և ամենավճռական միջոցներ ձեռնարկի թերակատարումը հաղթահարելու, տարեկան պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը լիովին ապահովելու համար:

Կենտկոմի բաժինները, հանրապետության կառավարությունը պետք է մշտական հսկողության տակ պահեն այս գործը:

«Առաջիկայում մենք շատ աշխատանք ունենք անելու՝ պատասխանատու, լարված աշխատանք,— համագումարին տված զեկուցման մեջ ասաց Մ. Ս. Գորբաչովը:— Հնգամյակի առաջին տարին համառ աշխատանքի, յուրաքանչյուր ղեկավարի և աշխատավորական կոլեկտիվի գործնական քննության տարի է: Մենք պարտավոր ենք դիմանալ այդ քննությանը, արտադրության մեջ ներգրավել էկոնոմիկայի բոլոր ռեզերվները, ամրապնդել հետագա վերափոխումների հիմքը»:



Մեր կուսակցական կազմակերպության պարտքը և նրա պատվի գործն է լիովին իրականացնել համագումարի այս հիմնադրույթը:

## II.

ՍՄԿԿ XXVII համագումարը սկզբունքորեն նոր մոտեցում սահմանեց սոցիալական ոլորտի նկատմամբ, քննության առավ դրա հետագա զարգացման խնդիրները, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա ակտիվ, ամբողջական սոցիալական քաղաքականության ազդեցության ուժեղացման խնդիրները:

Նախատեսվում է առաջիկա տասնհինգամյակում կրկնապատկել մարդկանց կենսապայմանների բարելավմանը հատկացվող ռեսուրսների ծավալը, ապահովել բարձրորակ և բազմազան ապրանքների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջարկը, շեշտակիորեն բարելավել առևտրի ու հասարակական սննդի աշխատանքը, ստեղծել սպասարկման արդիական ոլորտ:

Ընթացիկ հնգամյակում հանրապետությունում իրականացվելու է սոցիալական զարգացման ծավալուն ծրագիր: Կմեծանա բնակելի տների, դպրոցների, հիվանդանոցների և պոլիկլինիկաների շինարարությունը: Ընդլայնվելու է կոմունալ-կենցաղային սպասարկումների ծավալը: Կարագանան գյուղի սոցիալական վերակառուցումը, ակումբների և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների շինարարությունը:

Այս ծրագրի իրականացումը պետական մեծ կարևորության գործ է: Սա առավել ևս կարևոր է այն առումով, որ չնայած աճին, մեզանում երեխաների ապահովվածությունը նախադպրոցական հիմնարկներով, ընդհանուր բնակմակերեսով միջին ապահովվածությունը քաղաքային մեկ բնակչի հաշվով, 10 հազար բնակչին ընկնող հիվանդանոցային մահճակալների թիվը ցածր են միջին միութենական ցուցանիշներից:

Բնակարանների, սոցիալ-կենցաղային և մշակութային օբյեկտների շինարարությունը միշտ էլ պետք է կատարվի «շուտ, որակով, գեղեցիկ» նշանաբանով, մըշտապես գտնվի կուսակցական, սովետական և արհմիութենական մարմինների վերահսկողության ներքո:

Սոցիալական կարևոր խնդիրներից է շուկայի հագեցումը բազմազան ապրանքներով և սպասարկումներով: Այստեղ մենք շատ անելիք ունենք:

Պրոբլեմի էությունն այն է, որ չնայած ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ծավալային ցուցանիշների կատարմանը և դրանց արտադրության աճի արագ տեմպերին, ժողովրդական սպառման շատ արտադրանքների նկատմամբ բնակչության պահանջարկը դեռևս մնում է չբավարարված, իսկ ձեռնարկությունները երբեմն արտադրում են ոչ ոքի պետք չեկող և ցածրորակ արտադրանք: Ստեղծված վիճակը բացատրվում է նրանով, որ այդ ճյուղերը դեռևս լիովին չեն կողմնորոշվել դեպի կոնկրետ գնորդի կարիքների բավարարումը:

Անցյալ տարի ընտրովի ստուգումներով ոչ ստանդարտ է ճանաչվել և իջեցվեց Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունում ստուգված կարվածքեղենի, կոշկեղենի, բրդե և բամբակե գործվածքեղենի 11 տոկոսի, հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրությունում (ընկ. Մ. Զուրաբյան) ստուգված էմալապատ ամանեղենի 18 տոկոսի, մանկական հեծանիվների և տրիկոտաժե սպիտակեղենի 11 տոկոսի սորտայնությունը: Լուրջ քննադատության է արժանի Հայկական ՍՍՀ անտառային ու փայտամշակման արդյունաբերության մինիստրության (ընկ. Ս. Օհանյան) արտադրանքը:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների զարգացման հանրապետական կոմպլեքսային ծրագրով նախատեսված է միութենական մինիստրությունների ձեռնարկություններում շեշտակիորեն ավելացնել ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը: Այդ խմբի ձեռնարկությունների առջև դրված են մեծ ու պատասխանատու խնդիրներ: Մինչդեռ միութենական մինիստրությունների մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ դեռևս խույս են տալիս կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրության պլանների հստակ կատարումից:

Պետք է դեմքով դեպի այդ պրոբլեմները շրջվի նաև Հայկական ՍՍՀ պետպլանը, իսկ կուսակցական կոմիտեները՝ ուժեղացնեն պահանջկոտությունը ղեկավարնե-

րի նկատմամբ: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ոլորտում առաջիկա ամբողջ աշխատանքի գլխավոր նպատակն է արմատական բեկումը դրանց որակի բարձրացման, տեսականու ընդլայնման և նորացման գործում:

Բազմազան ապրանքների արտադրության ավելացումով նոր իրավիճակ է ստեղծվում առևտրի ասպարեզում: Այն պահանջում է շուկայի կոնյունկտուրայի, ծագող միտումների խոր ուսումնասիրում, գրագետ վերլուծություն և օբյեկտիվ հետևություններ: Պահանջարկի վատ ուսումնասիրման հետևանքով հանրապետության առևտրի մինիստրությունը և Հայկոոպը (ընկ. Ռ. Գրիգորյան) հաճախ ներկայացնում են ապրանքների չհիմնավորված հայտեր ու պատվերներ, լուրջ սխալներ թույլ տալիս ապրանքային ռեսուրսները ըստ հանրապետության ռեգիոնների բաշխելիս:

Առևտրի և արտադրության որոշ ղեկավարների ծանրաշարժության, երբեմն էլ ուղղակի անպատասխանատվության հետևանքով թույլ են տրվում բավարար տեսականու ապրանքների վաճառքի ընդհատումներ, ժամանակին չեն վերացվում ապրանքային ռեսուրսների բաշխման ու օգտագործման, դրանցով օպերատիվորեն մանևրելու թերությունները: Հարկ է հարցնել առևտրի մինիստրության, Հայկոոպի, թեթև արդյունաբերության մինիստրության, տեղական արդյունաբերության մինիստրության ղեկավարներից՝ ի՞նչն է պատճառը, որ առևտրի ցանցում սիստեմատիկ կերպով ընդհատվում է մանկական տեսականու ապրանքների, տրիկոտաժեղենի, տղամարդկանց ու կանանց ձմեռային վերարկուների առացումը և այն էլ հենց ձմռանը: Բանն այնտեղ է հասնում, որ երբեմն դեֆիցիտային ապրանքների շարքն են ընկնում այնպիսի պարզագույն ապրանքներ, ինչպիսիք են թեյի բաժակը, թրմաթեյնիկը, գավաթները, էլեկտրապարկուճները և այլն:

Հանրապետությունում կազմակերպված չէ նաև սպասարկումների պահանջարկի ուսումնասիրումը: Հանրապետության բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության աշխատանքում (ընկ. Ս. Թումանյան) քիչ չեն նաև այլ թերությունները: Կենցաղային սպասարկումների որոշ տեսակների գծով հանրապետությունը ետ է մնում միջին միութենական ցուցանիշներից, դանդաղ են ներդրվում սպասարկման այնպիսի ձևեր, որոնք հեշտացնում են տնային աշխատանքը, տնտեսում ազատ ժամանակը, միշտ չէ, որ արդյունավետ է օգտագործվում առկա արտադրական պոտենցիալը: Կենցաղի օբյեկտների տեղաբաշխումը, նրանց աշխատանքի ռեժիմը միշտ չէ, որ հարմար են բնակչության համար:

Հարկ է ընդգծել, որ բնակչության սպասարկման ոլորտում գոյություն ունեցող թերությունների համար անհրաժեշտ պատասխանատվություն պետք է կրեն ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմները: Սակայն նրանցից շատերը նույնիսկ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո էլ պատշաճ կերպով չեն զբաղվում առևտրի և սպասարկման ոլորտի ձեռնարկությունների աշխատանքի կազմակերպմամբ, ղեկավարներից խիստ հաշիվ չեն պահանջում աշխատանքի որակական ցուցանիշների բարելավման համար: Իսկ կուսշրջկոմները թույլացրել են հսկողությունը: Եվ դրանով է նաև բացատրվում այն, որ ապրանքաշրջանառության և բնակչության կենցաղային սպասարկման եռամսյա պլանները չեն կատարվել Կալինինոյի (կուսշրջկոմի քարտուղար՝ ընկ. Վ. Եղիազարյան, շրջսովետի գործկոմի նախագահ՝ ընկ. Կ. Ղազարյան), Գուգարքի (ընկ. ընկ. Լ. Բաղդասարյան, Ա. Սաֆարյան), Ամասիայի (ընկ. ընկ. Ի Բաղիրով, Մ Հակոբյան), Ստեփանավանի (ընկ. ընկ. Վ. Բալայան, Յու. Ճշմարիտյան), Ծամշադինի (ընկ. ընկ. Հ. Քոսակյան, Ռ. Առաքելյան) շրջաններում:

Սպասարկման ոլորտի աշխատանքը, նրա բստ ամենայնի կատարելագործումը պետք է մշտապես գտնվեն կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Համագումարը լուրջ խնդիրներ է առաջադրել անընդհատ կրթության միասնական համակարգի ստեղծման, ինքնուրույն կյանքի ու աշխատանքի երիտասարդության նախապատրաստման գործի արմատական բարելավման, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման, մասնագետների պատրաստման և օգտագործման աշխատանքի կատարելագործման, բանվորների ու մասնագետների որակավորման բարձրացման և վերապատրաստման գործի բարելավման ուղղությամբ:

Արվածը գնահատելով կուսակցության համագումարի պահանջների լույսի ներքո,



մենք գտնում ենք, որ աշխատանքի բոլոր ուղղություններում էլ առկա են լուրջ բացթողումներ:

Առայժմ անբավարար են դպրոցական ռեֆորմով նախատեսված միջոցառումների իրացման տեմպերն ու խորությունը: Լուսավորության մինիստրությունը (ընկ. Ս. Հախումյան), պրոֆտեխնիկական կրթության պետական կոմիտեն (ընկ. Հ. Քոթանջյան), նյութային մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է գործուն միջոցներ ձեռնարկեն ուսումնադաստիարակչական աշխատանքի բովանդակությունն ու որակը կատարելագործելու, ուսումնական պրոցեսում էլեկտրոնահաշվողական տեխնիկայի ներդրումն արագացնելու, սովորողների կոմպյուտերային գրագիտությունը ապահովելու նպատակով: Հարկավոր է էապես ուժեղացնել ուշադրությունը աշակերտների հանրօգուտ աշխատանքի կազմակերպման համար անհրաժեշտ բազայի ստեղծման, երիտասարդության համընդհանուր պրոֆեսիոնալ կրթության անցնելու համար պայմանների ստեղծման, մասնագիտական կողմնորոշման աշխատանքի բարելավման նկատմամբ:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է հասնեն այն բանին, որ պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, ուսումնական հաստատությունները, նրանց կուսակցական կազմակերպությունները ակտիվորեն, միացյալ ջանքերով մասնակցեն դպրոցական ռեֆորմի իրականացմանը:

Բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական կրթության վերակառուցման՝ կուսակցության առաջադրած խնդիրը պարտավորեցնում է գործուն միջոցներ ձեռնարկել ժողովրդական տնտեսության համար որակյալ մասնագետների պատրաստման և օգտագործման պլանավորումը կատարելագործելու, այդ գործում մինիստրությունների ու գերատեսչությունների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով: Պետք է կտրուկ և արագ բարձրացնել մասնագետների, նախ և առաջ ինժեներների պատրաստման մակարդակը, ապահովել հիմնարար գիտելիքների, ինֆորմացիայի ու հաշվողական տեխնիկայի տիրապետումը, կազմավորել տնտեսագիտական ու տեխնոլոգիական մտածողության նոր տիպ, դաստիարակել բարձր գիտակցականություն, քաղաքացիական ակտիվ կենսադիրք: Բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների ուսումնական պրոցեսը, նրանց գիտական ու մանկավարժական կյանքը պետք է սերտորեն շաղկապել արտադրության հետ, հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերի հետ, ուժեղացնել վերջիններիս փոխադարձ շահագրգռությունը կադրերի պատրաստման ու վերապատրաստման մակարդակի բարձրացման, նրանց օգտագործման արմատական բարելավման համար: Այս հարցերը պետք է դառնան հանրապետության բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրության, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների մշտական ուշադրության առարկան:

Համագումարը միանգամայն նորովի, սոցիալական լայն դիրքերից մշակեց առողջության պահպանման, մասսայական ֆիզիկական կուլտուրայի և սպորտի, տուրիզմի զարգացման, մարդկանց, հատկապես երիտասարդների բովանդակալից ժամանցի ապահովման գործի հետագա բարելավման միջոցառումները, ընդգծեց առողջ ապրելակերպի հաստատման, հարբեցողության ու ալկոհոլիզմի հաղթահարման աշխատանքի բացառիկ կարևորությունը:

Նոր, ավելի բարձր պահանջներ ներկայացվեցին ամբողջ սոցիալ-կուլտուրական համալիրին, այդ թվում՝ առողջապահության համակարգին: Մենք համագումարում ասացինք և անհրաժեշտ ենք համարում մեկ անգամ էլ ընդգծել. մեզանում առայժմ դանդաղ է զարգանում առողջապահության նյութատեխնիկական բազան, ինչը թույլ չի տալիս լիովին բավարարել բնակչության բուժպրոֆիլակտիկ օգնության պահանջմունքները:

Հանրապետությունում հիվանդանոցային ու պոլիկլինիկային ապահովման գործի ետ մնալը հաղթահարելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և կառավարությունը մշակել են առողջապահության նյութական բազայի զարգացման հատուկ ծրագիր, լրացուցիչ առաջադրանքներ են սահմանվել հանրապետական ու միութենական ենթակայության մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար: Այդ ծրագրի իրականացումը համընդհանուր խնդիր է:

Արմատական բարելավման կարիք է զգում մշակույթի ու սպորտի հիմնարկների աշխատանքը: Պետք է ակտիվացվի նրանց դերը առողջ ապրելակերպ հաստատելու, հարբեցողությունն ու ալկոհոլիզմը, վնասակար այլ սովորույթները արմատախիլ անելու գործում:

Այդ ոլորտի աշխատանքում քիչ չեն թերությունները: Դրանց մասին մենք խոսել ենք բազմիցս, սակայն վճռական բեկման առայժմ չենք հասել: Դեռևս անբավարար է օգտագործվում ունեցած նյութական բազան: Ցածր է մշակույթի հիմնարկների հաճախումների թիվը: Հանրապետության սպորտկոմիտեի (ընկ. Մ. Նուրիջանյան) ոչ գործարարության, որոշ ֆիզկուլտուրային կազմակերպությունների անգործունության, ինչպես նաև գերատեսչական պատնեշների պատճառով մարզակառույցները հաճախ գործում են կես ծանրաբեռնվածությամբ և նույնիսկ դրանից էլ պակաս: Թույլ է ֆիզկուլտուրային-կազդուրիչ աշխատանքի դրվածքը աշակերտների, ուսանողների, բանվոր և հատկապես գյուղական երիտասարդության շրջանում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների, կուլտուրայի մինիստրության (ընկ. Յու. Մելիք-Օհանջանյան), ՀԱՄԽ-ի ուշադրությունը բազմիցս հրավիրել է կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի մակարդակը բարձրացնելու, նրանց նյութատեխնիկական բազան զարգացնելու, դրանք որակյալ կադրերով ամրապնդելու անհրաժեշտության վրա: Սակայն վիճակը, հատկապես գյուղական վայրերում, խիստ դանդաղ է փոխվում: Մի շարք վայրերում մշակույթի տները, ակումբները, գրադարանները զուրկ են աշխատանքի տարրական պայմաններից: Արդեն շարքից դուրս են եկել շենքերը, կահավորանքը, գույքը:

2.644 ակումբային աշխատողներից միայն 146-ն ունի բարձրագույն մասնագիտական, իսկ 548-ը՝ միջնակարգ մասնագիտական կրթություն: Վիճակն է՛լ ավելի վատ է հանրապետության կինոցանցում: Անցած հնգամյակում փոխվել է քաղաքային ու շրջանային կինոթատրոնների դիրեկտորների ավելի քան կեսը: 22 նոր դիրեկտորներից միայն չորսն ունեն համապատասխան կրթություն:

Նման վիճակի հիմնական պատճառներից մեկը այդ ոլորտի ոչ բավարար կուսակցական ղեկավարումն է, կուսակցության շրջկոմների, տեղական սովետների գործկոմների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների թույլ ուշադրությունը բնակչության կուլտուրական ժամանցի կազմակերպման պրոբլեմների նկատմամբ: Այստեղ տեղին է ասել նաև Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի (ընկ. Գ. Ասատրյան) և կուլտուրայի բաժնի ցածր պահանջկոտության մասին:

Կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի արմատական բարելավումը, մասսայական ֆիզկուլտուրայի ու սպորտի զարգացումը հանրապետությունում, բնակչության բովանդակալից ժամանցի ապահովումը սոցիալ-քաղաքական մեծ նշանակության խնդիրներ են, որոնց լուծումը պահանջում է կուսակցական ու պետական սևեռուն ուշադրություն և հոգատարություն, կոնկրետ և հետևողական աշխատանք:

Սոցիալական ապահովության մարմինները, մինիստրությունների ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարները պետք է միջոցներ ձեռնարկեն բարելավելու կենսաթոշակային տարիքի աշխատավորների մասնագիտական կողմնորոշման գործը, ընդլայնելու ոչ լրիվ աշխատաժամանակով, ճկուն գրաֆիկով, հատուկ ստեղծված արտադրամասերում կամ տանը աշխատելու հնարավորությունները: Պետք է առանձնակի հոգատարություն ցուցաբերվի միայնակ կենսաթոշակառուների, այն մարդկանց նկատմամբ, ում վիճակվել են Հայրենական մեծ պատերազմի ծանր փորձությունները, ժողովրդական տնտեսության ետպատերազմյան վերականգնման դժվարությունները:

Խոսքը վերաբերում է վետերանների ոչ միայն կենսաթոշակի բարձրացմանը, այլև նրանց բնակարանային-կենցաղային և սոցիալ-կուլտուրական պայմանների բարելավմանը, նրանց պահանջմունքների նկատմամբ զգայուն վերաբերմունքին, զառամյալ քաղաքացիների շուրջը ուշադրության և բարյացակամության մթնոլորտի ստեղծմանը: Էական բարելավման կարիք ունեն զառամյալների ու հաշմանդամների գիշերօթիկ-տների գործունեությունը, դրանցում աշխատանքային արհեստանոցների, բժշկական ու կոմունալ-կենցաղային սպասարկման նոր առաջադիմական ձևերի կազմակերպումը:



## III.

ՍՄԿԿ XXVII համագումարը որպես առաջնահերթ, ամենաէական խնդիր առաջադրեց այն, որ կուսակցական ներգործության ամբողջ ուժը կենտրոնացվի յուրաքանչյուրի կողմից ներկա պահի սրությունը, բեկումնային բնույթն ըմբռնելու վրա, մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը խթանելու վրա: «Հասարակությունը շրջել դեպի նոր խնդիրները,— նշված էր ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը՝ այսպիսին է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ամենաառաջին պայմանը»:

Մեր անհետաձգելի խնդիրն է լայն աշխատանք ծավալել համագումարի նյութերի խորացված պրոպագանդման և բազմակողմանի պարզաբանման համար: Կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների, հանրապետության բոլոր գաղափարախոսական օղակների պարտքն ու նվիրական գործն է կուսակցության հեղափոխական խոսքը, համագումարի նորարարական ոգին, նրա կարևորագույն հիմնադրույթները հասցնել յուրաքանչյուր կոմունիստի, բոլոր աշխատավորներին, մասսաների կենդանի ստեղծագործությունը նպատակամղել կուսակցության վիթխարի կանխագծումների իրականացմանը, տասներկուերորդ հնգամյակի պլանների անվերապահ կատարմանը:

Նոր հիմունքներով էկոնոմիկայի վերակառուցումը, ակտիվ սոցիալական քաղաքականությունը, իր դարն ապրած ու լճացած ամեն ինչի դեմ պայքարը, ստեղծագործության մթնոլորտը, որ ամենուրեք հաստատում է կուսակցությունը, բացառիկ բարենպաստ պայմաններ են ստեղծում գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի ներգործունության բարձրացման համար: Դա ամենևին չի նշանակում, թե դյուրանում է մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքը: Ավելի շուտ՝ ընդհակառակն: Կուսակցության առաջադրած խնդիրների մասշտաբայնությունն ու նորությունը պահանջում են գաղափարախոսական աշխատանքի նկատմամբ ստեղծագործական մոտեցում, հրաժարում հանդիսամոլությունից, շաբլոնից, դատարկախոսությունից, մտացածին կամպանիաներից, որոնք պրոպագանդան հեռացնում են կյանքից:

Համագումարը կուսակցությանն ու ժողովրդին նպատակամղեց վերափոխումների, ամենանշանակալից, ամենալուրջ արդյունքների նպատակաուղղված աշխատանքի, գործունեության մի ամբողջ ժամանակաշրջանի աշխատանքի: Այս ամենը հրնկայական խնդիրներ է դնում հասարակական գիտությունների առջև: Նրանք պետք է լինեն նորացման պրոցեսի, հասարակական-քաղաքական, սոցիալ-տնտեսական զարգացման ինտենսիվացման պրոցեսի ավանգարդում: Հասարակական գիտությունները պարտավոր են մեր գաղափարախոսական կադրերին մշտապես զինել կոմունիստական դաստիարակության ամբողջ գործի բարելավման վերաբերյալ լուրջ և հիմնավորված հանձնարարականներով:

Յուրաքանչյուր կուսակցական կոմիտե և կազմակերպություն՝ համագումարի պարզ ու հստակ հիմնադրույթներով զինված, պետք է մշակի և իրականացնի գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության գործի արմատական բարելավման կոմպլեքսային միջոցառումներ: Ինչպես և միշտ, առաջին պլանում պետք է գտնվի ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության, սովետական ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ամրապնդման, սովետական մարդու համազգային հպարտության զգացումի խորացման գործը:

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է հաղթահարեն իներցիան գաղափարախոսական կադրերի որոշ մասի մտածողության մեջ, հաստատեն աշխատանքի այնպիսի ոճ, որը մերժում է ձևականությունը, սովորական «համախառն» մոտեցումը գործին, երբ թվերի ու «ընդգրկումների» խայտաբղետության մեջ կորչում է կենդանի, կոնկրետ մարդը:

Վերցնենք, օրինակ, դասախոսական պրոպագանդան: Աշխատանքի այդ ձևի առթիվ «գաղափարախոսական հաշվապահությունը» պատկառելի թվեր է տալիս: Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների դասախոսական խմբերում ընդգրկված են 1.600 մարդ, «Գիտելիք» հանրապետական ընկերության (ընկ. Լ. Քա-

լաշյան) կազմում՝ ավելի քան 18 հազար դասախոս: Նրանցից 4 հազարը գիտությունների դոկտորներ ու թեկնածուներ են, 77-ը՝ ակադեմիկոսներ և թղթակից անդամներ: Իսկ անհա վերջերս անցկացված հասարակական ատեստավորման արդյունքներով դասախոսների վերոհիշյալ թվից յուրաքանչյուր հինգերորդը զրկվեց այդ աշխատանքը տանելու իրավունքից՝ դրան պիտանի չլինելու պատճառով:

Գաղափարախոսական աշխատանքի ներգործունության բարձրացումը ենթադրում է կյանքի հետ պրոպագանդայի կապի ամրապնդում, այսօրվա իրադրության, մեր նվաճումների ու թերությունների սթափ հաշվառում և, որ առանձնապես կարևոր է, դաստիարակության գործում առավելագույն կոնկրետության, մարդկանց հետ անհատական աշխատանքի ուժեղացման ապահովում: Մինչդեռ մի շարք քաղաքային ու շրջանային կուսկազմակերպություններում դաստիարակչական աշխատանքը շարունակում են վարել հին ձևով, առանց պատշաճ կոնկրետության, առանց առկա թերությունները վերացնելու նպատակադրման:

Գաղափարախոսական աշխատանքի որ բնագավառն էլ վերցնելու լինենք, ամեն ինչում պետք է ելակետ ունենալ կյանքը: Լճացումը, դանդաղկոտությունը, թղթաբանությունը անթույլատրելի են քաղաքական և աշխատանքային, բարոյական և աթեիստական դաստիարակության բոլոր բնագավառներում: Չնայած աթեիստական աշխատանքի կազմակերպական ամրապնդման, աթեիզմի հարցերում կուսակցական կադրերի, գաղափարախոսական ակտիվի իրազեկության բարձրացման նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ձեռնարկած միջոցներին, այդ բնագավառում եղած թերությունները դանդաղ են վերացվում: Առանձնապես ուզում ենք նշել աղանդավորության դեմ մղվող պայքարի անբավարար վիճակը, առանձին աղանդավորական համայնքների անդամների հետ անհատական աշխատանքի բացակայությունը:

Դաստիարակչական աշխատանք տանելիս կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները պետք է մշտապես իրենց ուշադրության կենտրոնում պահեն պայքարն ընդդեմ հարբեցողության և ալկոհոլիզմի, ընդդեմ ամեն տեսակ հետադիմական սովորույթների և ավանդույթների:

Մեզանում մշակվել և իրականացվում է բարոյական դաստիարակության կոմպլեքսային ծրագիր: Սակայն այդ ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների աշխատանքը միշտ չէ, որ աչքի է ընկնում հարկ եղած հետևողականությամբ և հաստատակամությամբ, և ծրագիրը դեռևս դանդաղ է իրագործվում:

«Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը: Պայքարը կյանքի անաղարտության համար գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, նրա սոցիալական հասույցի բարձրացման, անառողջ երևույթների առաջացումից ապահովվելու ամենագործուն եղանակն է»:

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է հետևողականորեն վճռական, անզիջում պայքար ծավալեն մեր կյանքի անաղարտության համար, պարզորոշ արտահայտված սեփականատիրական նկրտումներ ունեցող մարդկանց դեմ, հասարակական շահերի նկատմամբ քամահրական վերաբերմունքի դեմ: Ոչ մի ներում չպիտի լինի նրանց, ովքեր ձեռնարկությունից թռցնում են ինչ որ ձեռքներն ընկնի, ամեն կարգի կաշառակերների ու գողերի, պաշտոնեական դիրքը չարաշահողների, սպեկուլյանտների, ժողովրդական բարիքը հափշտակողների, ամեն կարգի բացասական հատկանիշներ կրողների համար: Նրանց նկատմամբ պետք է կիրառել հասարակական դատապարտման ամբողջ ուժը, օրենքի ամբողջ ուժը:

Այսօր հարկ է ուղղակի ասել՝ ամենուրեք չէ, որ պահանջածին պես պայքար է մղվում այդ երևույթների, նման գործողություններ թույլ թվող անձանց դեմ:

Բացասական երևույթների, անաշխատ եկամուտների դեմ պայքարը իրավապահպան մարմինների կարևոր ֆունկցիան է: Եվ նրանց գլխավոր խնդիրն է հասնել պատժի անխուսափելիության, որպեսզի մարդիկ իմանան ու վստահ լինեն, որ ոչ մի իրավախախտող չի խուսափի արժանի պատժից: Սակայն ոչ բոլորի կողմից է այդ ֆունկցիան կատարվում ժամանակի պահանջի, ստեղծված իրավիճակի մակարդակով:

Վերցնենք, օրինակ, սպեկուլյացիայի հարցը: Մի՞թե ներքին գործերի մինիստրության մարմիններին (ընկ. Հ. Ծահինյան) հայտնի չէ, որ հանրապետությունում ձմռանը ջերմոցային պոմիդոր ու վարունգ, բացի պետական հիմնարկներից, ոչ մի



այլ տեղ չեն աճեցվում: Այնինչ ամբողջ այդ ընթացքում հանրապետության, առանձնապես Երևանի, շուկաներում դրանք վաճառվում են մեծ քանակությամբ: Բայց չէ որ դա բացահայտորեն սեփական արտադրության մթերք չէ: Ինչո՞ւ չեն ձեռնարկվում օրենքով սահմանված միջոցները: Կամ՝ միլիցիայի աշխատողները մի՞թե չեն տեսնում, թե ինչպես են ոմանք ծաղիկների, զանազան ապրանքների սպեկուլյացիայով զբաղվում: Տեսնում են, բայց միջոցներ չեն ձեռնարկում: Ինչո՞ւ ակտիվ պայքար չի մղվում սպասարկման ոլորտում օրինականության խախտումների դեմ, որոնք կատարվում են նրանց իսկ աչքի առջև: Ավելին, ցավոք, լինում են դեպքեր, երբ ներքին գործերի մարմինների առանձին անազնիվ աշխատողներ իրենք են թույլ տալիս չարաշահումներ:

Անհրաժեշտ է ուժեղացնել նաև դատախազական հսկողությունը (ընկ. Ս. Օսիպյան), դատական մարմինների՝ արդարադատության մինիստրության, գերագույն դատարանի (ընկ. ընկ. Ա. Դադայան, Ա. Գևորգյան) կողմից մեր օրենքներով նախատեսված պատժամիջոցների լրիվ կիրառումը սոցիալիստական բարոյականության նորմերի ամեն կարգի խախտողների նկատմամբ: Այսօր պլենումը պետք է իրավապահպան մարմինների ղեկավարներից, նրանց կուսակցական կազմակերպություններից պահանջի կտրուկ վերակառուցել իրենց աշխատանքը կուսակցության XXVII համագումարի պահանջների լույսի ներքո: Աշխատանքում ավելի մեծ հաստատակամություն ու պահանջկոտություն պետք է դրսևորի նաև Կենտկոմի վարչական մարմինների բաժինը (ընկ. Մ. Դավթյան), որը պետք է հետևի օրինականության և իրավակարգի ամրապնդման վերաբերյալ կուսակցական որոշումների անշեղ կատարմանը:

Բացասական երևույթների դեմ մղվող պայքարում անհրաժեշտ է բարձրացնել նաև ձեռնարկությունների ու կազմակերպությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների պատասխանատվությունը: Կենտկոմը գտնում է, որ նրանք պետք է անհատական պատասխանատվություն կրեն կարգուկանոնի համար: Հանրապետության կառավարությունը, Կենտկոմի քարտուղարությունը և բյուրոն պետք է բարձրացնեն պահանջկոտությունը նրանց նկատմամբ: Բացասական երևույթների դեմ պայքարի գործը կգտնվի Կենտրոնական կոմիտեի անդուլ ուշադրության կենտրոնում: Եվ ոչ մեկի նկատմամբ ոչ մի զիջում չի լինի: Այդ պայքարն ամենուրեք պետք է տարվի վճռականորեն և հետևողական:

Ընկերնե՛ր: Մեր ժամանակներում, որ առլեցուն են դինամիզմով, վերափոխումներով, հասարակության կենսագործունեության շատ կողմերի նկատմամբ նոր մոտեցումներով, առանձնապես մեծանում է մասսայական ինֆորմացիայի միջոցների դերը: Դրական գնահատելով նրանց կողմից կատարվող աշխատանքը, պետք է ուղղակի ասել, որ խմբագրական կոլեկտիվները, նրանց կուսակցական կազմակերպությունները դեռևս լրիվ չափով չեն վերակառուցել իրենց աշխատանքը կուսակցության արդի պահանջների ոգով: Այսօր առանձնապես անհանդուրժելի են մի շարք լրագրային նյութերի, հեռուստատեսային և ռադիոհաղորդումների մակերեսայնությունն ու գորշությունը: Դատարկաբանությունը, խրատականությունը, տարրական ճշմարտությունների կրկնությունը անթույլատրելի են թե՛ խորհրդակցությունների ու նիստերի ամբիոններից և թե մամուլի էջերում ու հեռուստացույցի էկրանին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն մասսայական ինֆորմացիայի միջոցները դիտում է որպես արարման գործիք, հանձին նրանց տեսնում համակուսակցական տեսակետն արտահայտողի: Դա պարտավորեցնում է խմբագրական կոլեկտիվներին աշխատել ուժերի ավելի մեծ հատույցով, առաջադրել կարևոր, հրատապ պրոբլեմներ, հանդես գալ առկա թերությունների կոնստրուկտիվ քննադատությամբ, պաշտպանել ամեն նորն ու առաջավորը, վառ կերպով պրոպագանդել մեր նվաճումները:

Հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել այն հրապարակումների, ռադիո և հեռուստատեսային հաղորդումների նախապատրաստմանը, որոնք նպատակամղված են սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորների, առանձնապես երիտասարդության դաստիարակությանը: Իսկական հայրենասիրությունը, նշվեց համագումարում, գործնական քաղաքացիական դիրքորոշումն է: Մեր մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի, պրոպագանդայի բոլոր միջոցների գլխավոր խնդիրներից մեկն է դաստիարակել գիտակից, ակտիվ քաղաքացիներ, որոնք իրենց բոլոր ուժերը, գիտելիքները, փորձը ի սպաս դնեն սոցիալիստական

հայրենիքին ծառայելուն, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման գործին:

Մասսայական ինֆորմացիայի միջոցները պետք է ապահովեն ավելի լայն հրապարակայնություն բացասական երևույթների դեմ մղվող պայքարում, մերկացնեն և սուր, անզիջում ձաղկեն բոլոր նրանց, ովքեր խախտում են կոմունիստական բարոյականության նորմերը:

Բուրժուական պրոպագանդան փորձում է խեղաթյուրել սովետական ապրելակերպի էությունը, սովետական մարդկանց գիտակցության մեջ սերմանել հոռետեսություն և անվստահություն կոմունիստական իդեալների իրականացման նկատմամբ, արմատավորել քաղաքական ինֆանտիլիզմ, սպառողական հոգեբանություն, նացիոնալիստական գաղափարներ: Իմպերիալիզմի սանձազերծած համատարած «հոգեբանական պատերազմի» պայմաններում մասսայական ինֆորմացիայի միջոցները, բոլոր գաղափարախոսական օղակները պետք է ուժեղացնեն հակապրոպագանդայի հարձակողականությունը, մշտապես մերկացնեն հակակոմունիզմի և հակասովետիզմի գաղափարախոսական դիվերսիաները, վառ ու համոզիչ կերպով ցույց տան սոցիալիզմի, մեր ապրելակերպի պատմական առավելությունները:

Հանրապետական կուսակցական թերթերի, Արմենպրեսի, պետհեռուստառադիոյի, Հրատպետկոմի ղեկավարները (ընկ. ընկ. Է. Մանուկյան, Բ. Մկրտչյան, Զ. Կուրբանով, Մ. Մստոյան, Մ. Խաչատրյան, Ս. Պողոսյան, Գ. Մուղնեցյան), մյուս մարմինները, ղեկավարները, համագումարի հիմնադրույթներից ելնելով, պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն թերությունների վերացման, ստեղծագործական կոլեկտիվների աշխատանքի կատարելագործման և դրա մակարդակի բարձրացման համար, հասնեն մասսայական ինֆորմացիայի միջոցների ներգործունության ռեալ ուժեղացման:

Կատարելով ՍՄԿԿ համագումարի պահանջները, անհրաժեշտ է ապահովել արտաքին քաղաքական պրոպագանդայի հարձակողականությունը, ավելի ակտիվորեն օգտագործել բոլոր առկա հնարավորությունները սփյուռքահայ համայնքների հասարակայնությանը հասցնելու ճշմարտությունը մեր երկրի մասին, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաջողությունների մասին, վառ ու համոզիչ կերպով բացահայտել ՍՄԿԿ-ի և սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը:

Ապահովելով արտաքին քաղաքական պրոպագանդայի ուժեղացումը, հարկավոր է առաջին հերթին բարձրացնել արտասահմանյան երկրների համար նախատեսված հրապարակումների ու ռադիոհաղորդումների, ինչպես նաև Արմենպրես պետական ինֆորմացիոն գործակալության կողմից սփյուռքահայ թերթերին ուղարկվող նյութերի ներգործունությունը:

Արտասահմանում իրականացվող ամեն մի միջոցառում, լինեն դրանք Հայկական ՍՍՀ-ի օրեր, թե հանդիպումներ սփյուռքահայության ներկայացուցիչների հետ, հյուրախաղային ուղևորություններ թե ցուցահանդեսներ, պետք է ունենա պրոպագանդիստական բարձր արդյունավետություն, արտասահմանյան լսարանին ճշմարտացի ինֆորմացիա տա մեր հանրապետության մասին, սոցիալիզմի ռեալ նվաճումների, սովետական ապրելակերպի մասին:

Երկրի կոմունիստների բարձրագույն համաժողովը նոր ուժով ցուցադրեց կուսակցության կենսական շահագրգռությունը գրականության և արվեստի դերի հետագա բարձրացման գործում: «Կուսակցությունը,— ասվում է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման առթիվ համագումարի ընդունած բանաձևում,— պաշտպանում է և կպաշտպանի գրականության և արվեստի մեջ ողջ տաղանդավորը, որը տոգորված է կուսակցականության ու ժողովրդայնության ոգով: Գեղարվեստական մտավորականության հետ կուսակցական կազմակերպությունների աշխատանքի նորման գաղափարական սկզբունքայնությունն է և խստապահանջությունը, հարգանքը տաղանդի նկատմամբ, նրբանկատությունը»:

Նա, ով իր բախտը կապել է գրականության և արվեստի հետ, ով օժտված է արվեստագետի բարձր կոչումով, իրավունք չունի այսօր աշխատելու իր ուժի ու եռանդի կես լարումով, պաղ սրտով: Ընթերցողը և հանդիսականը հեշտությամբ են տարբերում իսկական տաղանդի ստեղծածը արհեստավորի գործից: Մարդիկ չեն ուզում հաշտվել գորշության հետ, որն իրեն զգալ է տալիս ստեղծագործության տարբեր բնագավառներում:



Վերցնենք, թեկուզ, «Հայֆիլմ» կինոստուդիայի կողմից թողարկվող արտադրանքը: Հայ կինեմատոգրաֆիստների առանձին բարձրարվեստ տաղանդավոր ստեղծագործությունների կողքին թողարկվում են նաև թույլ, անմշակ, պրոֆեսիոնալ տեսակետից սնանկ ֆիլմեր: Էկրան թողարկվող նման կինոնկարների բերած վնասը ոչ միայն գաղափարաբարոյական է, այլև նյութական: Հանրապետության պետկինոն (ընկ. Ռ. Սամսոնով) պետք է լրջորեն վերակառուցի իր աշխատանքը, եռանդուն միջոցներ ձեռնարկի այդ բնագավառում տիրող վիճակը արմատապես բարելավելու համար, առավել լրիվ օգտագործի առկա ստեղծագործական և նյութական պոտենցիալը:

Արդարացի կշտամբանքներ են հարուցում նաև որոշ գրական ստեղծագործություններ, ներկայացումներ, հեռուստաճրագրեր, որոնք զուրկ են ոչ միայն գաղափարագեղագիտական նշանակալիությունից, այլև տարրական ճաշակից: Հանրապետության կուլտուրայի մինիստրությունը, հեռուստառադիոպետկոմը, հրատպետկոմը, ստեղծագործական միությունները, մյուս այն կազմակերպություններն ու գերատեսչությունները, որոնցից կախված է ստեղծագործական ոլորտի գործերի վիճակը, պետք է պատնեշ կանգնեցնեն գեղարվեստական խոտանի ճանապարհին, բարձրացնեն կուլտուրական ճակատի իրենց տեղամասերի ղեկավարման մակարդակը:

Մենք իրավասու ենք շատ բան ակնկալելու հանրապետության ստեղծագործական միություններից, որ ազդեցիկ հասարակական ուժ են, գրականության և արվեստի աշխատողների քաղաքացիականության դպրոց: Այստեղ ավելի քան անհանդուրժելի են ձևականությունը, իներտությունը, բյուրոկրատիզմը: Մեր ստեղծագործական միություններն ունեն հարուստ ավանդույթներ, նրանք արժեքավոր ու բազմակողմանի փորձ են կուտակել: Բայց վճռական փոփոխությունները համառորեն բախում են նաև նրանց դռները: Նրանք պետք է հասնեն իրենց գործունեության բոլոր կողմերի կատարելագործման՝ համագումարի պահանջների ոգով: Պետք է ելնել այն բանից, որ այդ գործունեության գլխավոր արդյունքը չափվում է ոչ թե բանաձևերով ու նիստերով, այլ տաղանդավոր, ժողովրդին հարկավոր գրքերով, ֆիլմերով, ներկայացումներով, նկարներով, երաժշտական ստեղծագործություններով: Հասարակությունը գրողից սպասում է գեղարվեստական հայտնագործություններ, կյանքի ճշմարտություն, սպասում է անհատի բարոյաքաղաքական դաստիարակությանը, նրա հայրենասիրական, ինտերնացիոնալիստական համոզմունքների ու զգացմունքների ձևավորմանը ակտիվորեն նպատակամիտված ստեղծագործություններ:

Այսօր առանձնակի պահանջ է ներկայացվում գրական-գեղարվեստական քննադատությանը, որի ուղղակի պարտականությունն է լինել հասարակական շահերի պաշտպան, մասսաների մեջ կուսակցության քաղաքականության անմիջական կենսագործող: Մինչդեռ այստեղ այդպես էլ չի հաջողվել ազատվել հաճոյախոսությունից, բարեհոգությունից, ատիճանահարգությունից: Կուսակցությունը հաստատակամորեն պահանջում է արմատապես բարելավել այդ բնագավառում տիրող վիճակը: «Քննադատությունը,— նշվեց համագումարում,— հասարակական գործ է և ոչ թե հեղինակային ինքնասիրությունների ու ամբիցիաների սպասարկման ոլորտ»:

Գրականության և արվեստի գործիչների տեղը առաջավոր շարքում է: Կասկած չկա, որ նրանք արժանի ավանդ կներդնեն հասարակության գործերում մարդկային, բարոյական գործոնի դերի բարձրացման մեջ, ժողովրդի հոգևոր ու գեղագիտական հարաճուն պահանջմունքների բավարարման մեջ:

Հոգևոր կյանքի ասպարեզում համագումարի առաջադրած խնդիրների իրականացումը, ամենուրեք գաղափարադաստիարակչական աշխատանքի նկատմամբ կըշռադատված ստեղծագործական, գործարար մոտեցման հաստատումը կախված են նախ և առաջ կադրերից: Իհարկե, գաղափարախոսական աշխատանքը ամբողջ կուսակցության, յուրաքանչյուր կոմունիստի գործն է: Բայց այստեղ շատ բան կախված է տեղերում կուսակցության քաղաքականությունը անմիջականորեն իրականացնող պրոֆեսիոնալ գաղափարախոսական աշխատողներից: Մեր ամբողջ կադրային քաղաքականությունը, այդ թվում նաև գաղափարախոսության բնագավառում, պետք է նպատակամղված լինի այն բանին, որ ղեկավարման և կառավարման ղեկի մոտ

կանգնած լինեն բանիմաց, գործերի վիճակի բարելավմամբ խորապես շահագրգռված մարդիկ, իրենց կոչումով, ներքին մղումով քաղաքական աշխատողներ:

Քաղկոմներն ու շրջկոմները, Կենտկոմի համապատասխան բաժինները պետք է բարելավեն գաղափարախոսական կադրերի ընտրության ու դաստիարակության աշխատանքը, ավելի համարձակորեն առաջ քաշեն երիտասարդների, մշտապես հոգ տանեն նրանց ստեղծագործական աճի մասին:

Որակյալ գաղափարախոսական աշխատողի պատրաստումը տևական ու բարդ պրոցես է: Այստեղ հարկավոր են քրտնաջան և համատակալ աշխատանք, կուսակցական հոգատարություն մեր քաղդաստիարակչական գործունեության վաղվա օրվա նկատմամբ:

Ներկայումս չափազանց բարդ խնդիրներ են դրված գաղափարախոսության ոլորտի առջև: Այսօր հատկապես կարևոր է ձևավորել ժամանակակից խնդիրների բնույթի խոր ըմբռնում,— ընդգծեց համագումարը,— կայուն գիտական աշխարհայացք, սկզբունքայնություն, բարձր կուլտուրա, պատասխանատու վերաբերմունք գործի նկատմամբ ամեն մի տեղամասում: Բարձրացնել հասարակության հասունության աստիճանը, կոմունիզմ կառուցել՝ նշանակում է անշեղորեն բարձրացնել մարդու գիտակցության հասունությունը, հարստացնել նրա հոգևոր աշխարհը:

Այս պատասխանատու գործի կատարմանը պետք է նպատակամղված լինեն պրոպագանդայի բոլոր միջոցներն ու հնարավորությունները, գաղափարախոսական ճակատի աշխատողների գիտելիքները, փորձը, տաղանդը, մեր կուսակցական կազմակերպությունների քաղդաստիարակչական աշխատանքը:

## IV.

Համագումարի որոշումները, նրա բուն ոգին, արդյունքները պահանջում են կուսակցական աշխատանքի էական վերակառուցում: Դրա իմաստն այն է, որ կոմունիստները ակտիվորեն պայքարեն կենսագործելու ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի գիծը, որն իր զարգացումը գտավ համագումարում, ապրեն որոնման, իրենց գործունեության ձևերի ու մեթոդների նորացման մթնոլորտում:

Այժմ գլխավորն է անհետաձգելիորեն զբաղվել համագումարի որոշումների կենսագործման կենդանի, գործնական աշխատանքով: Այդ աշխատանքի մեջ ամբողջ կարողությամբ պետք է ներգրավել կուսակցական կազմակերպության բոլոր օղակները, մշակել ինչպես առաջնահերթ, այնպես էլ հեռանկարային կոնկրետ խնդիրները, մեր ամբողջ գործունեությունը դիտել նորովի կուսակցական հայացքով, ճիշտ տեղաբաշխել ուժերը, կարգավորել վերահսկողությունը, ամենուրեք կենտրոնանալ գործի պրակտիկ կազմակերպման վրա:

Հասարակության որակական վերափոխման փուլում յուրաքանչյուր կոմունիստից, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունից պահանջվում են նոր ջանքեր, գնահատականների սկզբունքայնություն, գործարարություն և անձնվիրություն: Նոր պահանջներ պետք է ներկայացվեն թե՛ կադրերին և թե աշխատանքի ամբողջ ոճին, դրա մեթոդներին ու բնույթին: Այստեղ նպատակին հասնելու միջոց պետք է ծառայեն թե՛ ներկուսակցական դեմոկրատիայի, քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի զարգացումը, կոլեկտիվ ղեկավարման սկզբունքի իրականացումը և թե գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի ապահովումը: Հարկավոր է ամենուրեք ստեղծել այնպիսի մթնոլորտ, որի պայմաններում կանոն դառնա իրերը իրենց անուններով կոչելը, ամեն ինչի մասին շիտակ դատելը, վերադաս մարմիններին և մասսաների գործերի վիճակի մասին օբյեկտիվ ինֆորմացիա տալը:

Նորի ոգին, քարացածության և լճացման նկատմամբ անհանդուրժողությունը պետք է իշխեն յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում:

Բոլոր կուսակցական կազմակերպությունների աշխատանքի հիմքում պետք է դրված լինեն կուսակցական կյանքի լենինյան սկզբունքների և նորմերի խստիվ կիրառումը, աշխատանքի լենինյան ոճը, բոլշևիկյան ավանդույթների ոգով գործելու, ՍՄԿԿ համագումարում ստեղծված մթնոլորտը պահպանելու ձգտումը:



«Առողջ, գործարար, իր կոնկրետ դրսևորումներով ու հոգսերով բազմակողմանի, անկեղծությամբ, պլանների ու որոշումների հրապարակայնությամբ, կոմունիստների մարդկայնությամբ, համեստությամբ բնորոշվող կուսակցական կյանք՝ ահա թե ինչ է այսօր հարկավոր մեզ»,— ընդգծեց Մ. Ս. Գորբաչովը համագումարում: Եթե մենք ամենուրեք ստեղծենք այդպիսի մթնոլորտ, ապա գործը հաջողությամբ առաջ կգնա:

Այս ամենում գլխավոր դերը պետք է խաղան կուսակցական կոմիտեները: Այդ մարմինների, դրանց ապարատի աշխատանքի բուն ոճը շատ բանով օրինակ է ծառայում կուսակցական կազմակերպությունների համար: Քաղկոմներն ու շրջկոմները՝ որպես քաղաքական ղեկավարման մարմիններ, այսօր, քան երբևիցե մեծ պատասխանատվություն են կրում սկզբնական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում տիրող վիճակի համար: Յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի և կազմակերպության աշխատանքին պետք է բնորոշ լինեն նորի զգացումը, ակտիվ վերակառուցումը փոփոխված պայմաններին համապատասխան, նախաձեռնողական մոտեցումը գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, սոցիալ-տնտեսական զարգացման պրոբլեմների լուծմանը:

Եվ պետք է ասել, նրանցից շատերը հենց այդպես էլ աշխատում են: Բայց, ցավոք, վերակառուցման անհրաժեշտությունը գիտակցված է բնավ ոչ բոլորի կողմից և ոչ ամենուրեք: Մի շարք կոմիտեներում և կազմակերպություններում չի զգացվում նորովի աշխատելու, լուրջ, ինքնաքննադատական վերլուծության, թույլ տրված սխալներից գործնական հետևություններ անելու տրամադրվածությունը: Որպես հետևանք՝ աշխատանքը ընթանում է հին ձևով, չի ապահովվում առաջադրված խնդիրների կատարումը:

Այս տեսակետից հատկանշական է կուսակցության Ստեփանավանի շրջկոմի աշխատանքի օրինակը: 1982 թվականի հունիսին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց «ՍՄԿԿ XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների լույսի ներքո անասնապահության հետագա ինտենսիվացման ուղղությամբ կուսակցության Ստեփանավանի շրջանային կոմիտեի կատարած աշխատանքի մասին»: Բյուրոյում նշվեց կուսշրջկոմի անբավարար աշխատանքը անասնապահության ինտենսիվացման բնագավառում, առաջադրվեցին ճյուղում տեղ գտած թերացումները հաղթահարելու կոնկրետ խնդիրներ:

Կուսշրջկոմի ղեկավարությունը (քարտուղար՝ ընկ. Վ. Բալայան) հետևություններ չարեց իր հասցեին արված քննադատությունից, չկարողացավ սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների, ֆերմաների աշխատավորների ջանքերը նպատակամղել շրջանի առջև դրված խնդիրների հաջող լուծմանը: Շրջանը, որը կոչված է հանրապետության տնտեսություններին մատակարարելու ազնվացեղ կենդանիներ, ինքը սկսեց կովերի հոտը համալրել ներմուծման և գնումների հաշվին: Հինգ տարվա ընթացքում տարբեր վայրերից գնվել է ավելի քան 3,5 հազար կով:

Իբրև արդյունք շրջանում, որի անասնապահությունը կերերով ամենաապահովվածներից մեկն է, տասնմեկերորդ հնգամյակում կաթի արտադրության ծավալների աճը կազմեց ընդամենը 3 տոկոս, իսկ մեկ կովի կաթնատվությունը ավելացավ միայն 24 կիլոգրամով, որը ցածր է հանրապետական ցուցանիշներից:

Իսկ ո՞րն է շրջանի անասնապահության նման անհրապույր պատկերի պատճառը: Ճշմարիտ իրավիճակը բացահայտելու, թերությունների մասին հրապարակայնորեն, բացեիբաց ու ազնվորեն խոսելու երկյուղը, քարացածությունն ու պահպանողականությունը հաղթահարելու անկարողությունը, գործարարության, կոնկրետ խնդիրների լուծման նպատակադրվածության բացակայությունը, անպատասխանատվության դրսևորումը: Այլապես ինչով բացատրել, որ շրջանի վերաբերյալ Կենտկոմի բյուրոյի որոշումը նույնիսկ չի քննարկվել շրջկոմի պլենումում, իսկ շրջկոմի բյուրոյում հաստատված միջոցառումների պլանն էլ մինչև վերջ չի կատարվել: Կենտկոմի որոշման կատարման ստուգման կազմակերպումը հանգեցվել է տեղեկանքների կազմմանը և նույն այդ հարցերին վերաբերող հերթական որոշումների ընդունմանը: 1983—1984 թվականներին կուսակցության շրջկոմը երեք անգամ քննարկել է Կենտկոմի որոշման կատարման ընթացքը: Եվ քաղ էության ապարդյուն: Վերջին երեք տարվա ընթացքում անցկացված կուսշրջկոմի պլենումներում շրջկոմի, նրա բյուրոյի

ու քարտուղարության հասցեին ոչ մի քննադատություն չի եղել, իսկ հազվադեպ հնչած երկչոտ խնդրանքները հիմնականում մնացել են «ձայն բարբառո հանապատի», որոնց չեն անսացել ինչպես կուսակցության շրջանային կոմիտեում, այնպես էլ ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմում:

Կուսշրջկոմում նման վիճակ է տիրել նաև այն պատճառով, որ Կենտկոմի գյուղատնտեսության ու սննդարդյունաբերության բաժինը (ընկ. Ն. Այվազյան) և կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժինը հարկ եղածին պես չեն կլերահսկել կուսշրջկոմի հաշվետվության վերաբերյալ Կենտկոմի որոշման կատարումը, պատշաճ պահանջկոտություն չեն հանդես բերել: Այս իրողությունից պետք է համապատասխան հետևություններ անել: Դա հարկավոր է մանավանդ որ վերակառուցման պրոցեսը դժվարությամբ է ընթանում հանրապետության մի ամբողջ շարք կուսակցական կոմիտեներում, այդ թվում Արտաշատի, Կալինինոյի, Թումանյանի, Ամասիայի և այլ շրջաններում:

Այստեղ հարկ է ուշադրություն հրավիրել հետևյալ հանգամանքի վրա: Մի շարք վայրերում փոխվել է կուսշրջկոմների, մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարությունը: Նոր նշանակված ղեկավարներից ոմանք ակտիվ գործողությունների չեն դիմում վիճակը բարելավելու, պլանները կատարելու համար, կարծելով, թե իրենց զիջողություն կանեն: Կուսակցական կոմիտեները պետք է արմատապես մերժեն նման հոգեբանությունը, բոլոր ղեկավարներից պահանջեն լրիվ կատարել առաջադրված քաղաքական ու տնտեսական խնդիրները:

Կուսակցական և տնտեսական աշխատանքի ձևերի ու մեթոդների բազմապլան վերակառուցման կարևորագույն օղակը, անտարակույս, սկզբնական կուսկազմակերպություններն են, որոնք գործում են մասսաների ընդերքում, այնտեղ, ուր քաղաքական որոշումները պրակտիկ գործերի են վերածվում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները պետք է այնպես ղեկավարեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեությունը, ստեղծեն այնպիսի պայմաններ, որոնք ապահովեն նպատակների պարզ ընկալումը, փոխադարձ բարձր պահանջկոտությունը, հասնեն այն բանին, որ նրանք ապրեն լիարյուն կյանքով, որ կոմունիստները զբաղվեն կոնկրետ գործերով, վճռականորեն հաղթահարեն իներտությունը, ձևականությունն ու շաբլոնը աշխատանքում: Չէ որ մեզ մոտ դեռ շատ են այնպիսի սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք ինչպես հարկն է չեն ներազդում աշխատավորական կոլեկտիվների գործերի վիճակի վրա: Ջերժինսկու անվան հաստոցաշինական միավորումը տասնմեկերորդ հնգամյակում չապահովեց արտադրության ծավալի և աշխատանքի արտադրողականության պլանավորված աճը: Ձեռնարկության ղեկավարությունը պատշաճ տեխնիկական քաղաքականություն չի վարել ձեռնարկության վերազինման, արտադրության կազմակերպման և արտադրանքի որակի բարելավման գործում: Նման իրավիճակում կուսակցական և հասարակական կազմակերպությունները մոռացության են մատնել կուսակցության փորձված զենքը՝ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, զբաղված են պարապ խոսակցություններով, ձևական որոշումներ ընդունելով: Կուսակցական կոմիտեն անբավարար է օգտագործում ադմինիստրացիայի գործունեության վերահսկման իրավունքը, արդյունավետ միջոցառումներ չի ապահովում աշխատանքային և արտադրական կարգապահության խախտումների հաղթահարման, բանվորական վերահսկողության ապահովման համար: Տվյալ դեպքում աշխատանքի ոչ մի վերակառուցման մասին խոսք չի կարող լինել: Օրերս կուսակցության Երևանի քաղկոմը քննարկեց ձեռնարկությունում ստեղծված դրությունը: Միավորման գլխավոր դիրեկտորը ազատվեց պաշտոնից, սկզբունքային գնահատական տրվեց կուսկազմակերպության գործունեությանը:

Երկար տարիներ անհամաչափ է աշխատում Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատը, պլանները կատարելով կոլեկտիվի ուժերի հսկայական լարման գնով և չապահովելով արտադրանքի պատշաճ որակը: Կոմբինատի ղեկավարությանը, կուսակցական և հասարակական կազմակերպություններին, ըստ երևույթին, քիչ են զբաղեցնում արտադրության զարգացումն արագացնելու անհրաժեշտության վերաբերյալ կուսակցության ցուցումները: Կուսակցական կոմիտեն հաշտվել է պասիվ հայեցողի դերի հետ: Այդ քարացածության հաղթահարման համար շինանյութերի



արդյունաբերության մինիստրությունը և Արարատի կուսշրջկոմը պետք է վճռական միջոցների դիմեն:

Ամփոփելով, պետք է մեկ անգամ ևս ընդգծել. կուսակցական կոմիտեների պարտքն է հաստատակամորեն կատարելագործել սկզբնական կազմակերպությունների գործունեությունը, հիմնավորապես, առարկայորեն խորամուխ լինել նրանց աշխատանքին, անհրաժեշտ ամեն ինչ անել, որպեսզի նրանք դառնան մասսաների իսկական քաղաքական կազմակերպիչներ երկրի զարգացման բեկումնային փուլում:

Կուսակցական կազմակերպության հզոր պոտենցիալը գործի դնելը պահանջում է թե՛ նոր մոտեցումներ կադրերի նախաձեռնության ու պատասխանատվության բարձրացմանը, և թե անդուլ հոգածություն կուսակցության շարքերի անաղարտության մասին՝ այն հաշվով, որպեսզի կուսակցությունը հուսալիորեն պատսպարվի պատահական մարդկանցից, կարիերիստներից ու շահամոլներից: Դրա հետ մեկտեղ պետք է մշտապես ուժեղացնել կոմունիստների գաղափարական դաստիարակությունը, բարձրացնել պահանջկոտությունը կուսակցական կարգապահության, կանոնադրական պահանջների անվերապահ կատարման համար:

Միայն հօգուտ ընդհանուր բարօրության արվող պրակտիկ գործերում են դրսևորվում կոմունիստի ավանգարդային դերը, կուսակցականի մաքուր և ազնիվ կերպարը՝ գործոններ, որոնց նշանակության մասին ամենայն ուժով ասվեց համագումարի ամբիոնից: Բոլոր մակարդակների կուսակցական կոմիտեները՝ Կենտկոմից մինչև ձեռնարկության կուսկոմիտեն, սկզբնական կուսակցական կազմակերպությունները, պետք է կատարելագործեն կադրային աշխատանքը XXVII համագումարի պահանջների ոգով, ղեկավարվելով նրա այն ցուցումներով, որ բոլոր առաջքաշումների ու պաշտոնափոխությունների չափանիշը մեկն է. աշխատողի քաղաքական և գործնական հատկանիշները, ընդունակությունները, ռեալ ձեռքբերումները, մարդկանց նկատմամբ նրա վերաբերմունքը:

«Մասսաների հետ սերտորեն կապված, գաղափարապես համոզված, նախաձեռնողաբար մտածող, գործունյա ղեկավար՝ այսպիսի մարդ է այսօր հարկավոր յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն գլխավորելու համար»,— ընդգծված է Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ:

Չէ որ ղեկավարի, ամենից առաջ կուսակցական ղեկավարի, կերպարի հետ են մարդիկ կապում իրենց կոնկրետ, ռեալ կյանքի բոլոր պլյուսներն ու մինուսները:

Այս ամենը Կենտկոմից, նրա բաժիններից, քարտուղարությունից և բյուրոյից պահանջում է սևեռուն հետևել ղեկավար կադրերի և առաջին հերթին կուսակցական կոմիտեների ղեկավարների աշխատանքին, նրանց մշտապես դաստիարակել բոլշևիզմի մեծ ավանդույթների ոգով:

Կուսակցության շրջկոմի, քաղկոմի յուրաքանչյուր քարտուղար, Կենտկոմի, կառավարության պատասխանատու աշխատող, յուրաքանչյուր մինիստր, շրջսովետի գործկոմի նախագահ, այդ մարմինների ղեկավար աշխատող պետք է մշտապես հիշի, որ շարքային աշխատավորը իրենով է դատում ամբողջությամբ վերցված կուսակցության, սովետի, ամբողջ պետության մասին, իսկ դա նրանց վրա մեծագույն պատասխանատվություն է դնում իրենց աշխատանքի ոճի ու մեթոդների, գործելակերպի ու վարքի համար:

Այդպիսի պատասխանատվության զգացումով պետք է տոգորված լինեն մեր բոլոր ղեկավար կադրերը: Այսօր հարկ է Կենտկոմի պլենումում մեկ անգամ ևս ասել. կուսակցության գործին նվիրված, նրա քաղաքական գիծը ակտիվորեն կենսագործող, ազնվորեն ու նախաձեռնողաբար աշխատող կադրերը միշտ էլ լիակատար ու հաստատ աջակցություն են գտել ու կգտնեն Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի, կուսակցական կոմիտեների կողմից:

Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է ընդգծել նաև հետևյալը: Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները ոչ մի ներողամտություն չպիտի ցուցաբերեն այն կադրերի ու աշխատողների նկատմամբ, ովքեր աշխատանքում թույլ կտան հնամոլություն, պահպանողականություն, լրիվ չեն կատարի առաջադրված խնդիրները, չեն վերակառուցվի նոր բարձր պահանջներին համապատասխան, կաշխատեն հին ձևով, կդրսևորեն անսկզբունքայնություն, էլ չենք ասում կոմունիստական բարոյականության նորմերի խախտումների մասին:

Վերջին տարիներս հանրապետության առևտրի մինիստրության համակարգում

Ստեղծվել է լուրջ մտահոգություն առաջացնող իրադրություն: Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն բազմիցս քննադատել և մինիստրության կոլեգիայի, անձամբ մինիստրի ուշադրությունը հրավիրել էր համակարգի աշխատանքում տեղ գտած էական թերությունների վրա: Ընկ. Ս. Սաֆարյանը կուսակցական տույժի էր ենթարկվել: Սակայն պատշաճ հետևություններ չարվեցին: Գործերը շտկելու խոստումները չեն ամրապնդվել գործով: Անհրաժեշտ մակարդակի վրա չի եղել բնակչության սպասարկման կազմակերպումը, թույլ են տրվել փոփոխումներ կադրային աշխատանքում, գործնական միջոցներ չեն ձեռնարկվել սոցիալիստական սեփականության պահպանումն ամրապնդելու, չարաշահումների դեմ պայքարն ուժեղացնելու համար: Համակարգի կազմակերպություններում տեղ էին գտել խոշոր հափշտակումներ և զեղծարարություններ, որոնց մի մասը կրում է խմբակային բնույթ: Փաստորեն անպատիժ էին մնում առևտրի կանոնները խախտողները, սպեկուլյանտները: Էական թերություններ կան առևտրի օբյեկտների նյութատեխնիկական բազայի զարգացման, դրանց տեղաբաշխման գործում, ցածր են սպասարկման որակն ու կուլտուրան:

Այս ամենի մասին իրավացիորեն ասված է նաև «Պրավդա» թերթի այս տարվա փետրվարի 15-ի համարում տպագրված հոդվածում:

Ստեղծված դրության պատճառները քիչ չեն: Բայց գլխավորը ճյուղի աշխատանքի, նրա ղեկավարման արատավոր ոճն ու մեթոդներն են, առևտրական կազմակերպությունների աշխատանքի անբավարար վերահսկողությունը, անսկզբունքայնությունը, անթույլատրելի հանդուրժողությունը այն անձանց նկատմամբ, ովքեր խախտում են կարգապահությունը և կարգուկանոնը: Օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննարկեց հանրապետության առևտրի մինիստրությունում տիրող իրավիճակը, «Պրավդա» թերթում տպագրված հոդվածը: Առևտրի սիստեմի ու մինիստրության ապարատի գործունեության թերությունները գնահատելիս անսկզբունքայնություն հանդես բերելու, ղեկավարման պատշաճ մակարդակ չապահովելու, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշումների կատարումը կազմակերպելու գործում անհետևողականություն հանդես բերելու համար ընկ. Ս. Սաֆարյանը ազատվել է Հայկական ՍՍՀ առևտրի մինիստրի պաշտոնից:

Մինիստրության համապատասխան ստորաբաժանումների գործունեության ղեկավարման լուրջ թերությունների և կոլեգիայի անդամների՝ իրենց պարտականությունները կատարելիս ցուցաբերած անպատասխանատվության, առևտրի համակարգում չարաշահումների փաստերի նկատմամբ հաշտվողական վերաբերմունքի համար Հայկական ՍՍՀ առևտրի մինիստրի տեղակալներ, ՍՄԿԿ անդամներ Լ. Գյոդակյանին, Ս. Կասպարովին և Տ. Տիգրանյանին հայտարարվեց նկատողություն՝ գրանցելով անձնական քարտում: Կուսակցական կազմակերպությունը քննարկելու է մինիստրի տեղակալ ընկ. Վ. Սահակյանի կուսակցական պատասխանատվության հարցը:

Պաշտոնեական դիրքը չարաշահելու, պրոտեկցիոնիզմի համար զբաղեցրած պաշտոնից ազատվել է ավիացիայի աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեի նախագահ ընկ. Ի. Ստեփանյանը:

Կուսակցական կոմիտեները պետք է ղեկավար աշխատողներին մշտապես դաստիարակեն կուսակցական սկզբունքայնության ու գործարարության ոգով: Ասածի ու արածի միջև ամեն մի խզում վնասում է մեր քաղաքականության հեղինակությանը, մեր գործին և անհանդուրժելի է՝ ինչ ձևով էլ դրսևորվելու լինի: Կոմունիստների կուսակցությունը խոսքի ու գործի միասնության կուսակցություն է, ընդգծվեց համագումարում: Սա պետք է հիշի յուրաքանչյուր ղեկավար, յուրաքանչյուր կոմունիստ:

Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է ուշի-ուշով հետևեն, թե յուրաքանչյուր կոմունիստ, հատկապես ղեկավարը, գործնականում ինչ է արել Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության համագումարի որոշումների իրագործման ուղղությամբ: Միայն պրակտիկ գործողությունները, և ոչ թե այդ որոշումների առթիվ ճամարտակությունը, կարող են ապահովել վերակառուցումը, բեկումը գործերում:

Կուսակցական կոմիտեները պետք է բարձրացնեն կադրերի, բոլոր կոմունիստների հետ անհատական աշխատանքի այնպիսի ձևերի արդյունավետությունը, ինչպիսիք են նրանց հետ անցկացվող զրույցները, կուսակցական բնութագրերի հաստատումը: Պետք է զարգացնել և լայնորեն տարածել կուսակցական կազմակերպությունների ժողովներում, բյուրոների նիստերում կոմունիստների հաշվետվությունների քննարկման պրակտիկան:



Նրանց ամենօրյա ուշադրության և հոգատարության առարկան պետք է դառնա աշխատանքը կուսակցական կազմակերպության քարտուղարների հետ, որոնց այժմ հատուկ պահանջ է ներկայացվում կոլեկտիվներում տիրող իրավիճակի, կոմունիստների մարտունակության ապահովման, արդի փուլի մեծ խնդիրների լուծման մեջ կոմունիստների ավանգարդային դերի ուժեղացման համար: Կադրերի, կուսակցական կազմակերպությունների աշխատանքը օբյեկտիվորեն և ճիշտ գնահատելու համար անհրաժեշտ է, որ կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողները ավելի շատ կապված լինեն աշխատավորական կոլեկտիվների հետ, ավելի շատ շփվեն մասսաների հետ:

Անհրաժեշտ է, որ բոլոր ղեկավար աշխատողները և առաջին հերթին Կենտկոմի քարտուղարները, հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալները ակտիվորեն մասնակցեն XXVII համագումարի աշխատանքի արդյունքների քննարկմանը սկզբնական կուսակցական կազմակերպություններում, ակտիվի ժողովներում և շրջկոմների պլենումներում:

Ժամանակը խիստ բարձրացրել է բոլոր կադրերին ներկայացվող պահանջները, դրանք հագեցրել է նոր բովանդակությամբ: Գործարարություն, գաղափարական տոկունություն, հաստատուն բարոյական համոզմունքներ, նորի սուր զգացողություն, կոլեկտիվ աշխատանք կազմակերպելու, լիակատար պատասխանատվություն ստանձնելու, մարդկանց շահերով ու կարիքներով ապրելու ընդունակություն՝ ներկայումս սրընթաց աճում է այս հատկանիշների նշանակությունը:

Գործարարության հաստատման խնդրի հետ սերտորեն շաղկապվում է աշխատանքի սոցիալիստական կարգապահության ուժեղացման հարցը, որը սրությամբ արծարծվեց կուսակցության համագումարում:

Կարգապահության ամրապնդման, կադրերի պատասխանատվության բարձրացման գործուն միջոց են սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Դա կուսակցական կազմակերպության քաղաքական առողջության ապացույցն է, կոլեկտիվում նրա հեղինակության հատկանիշը:

Խիստ քննադատական մոտեցումը, բոլորդ էլ քաջ հասկանում եք, մեր օրերում ձեռք է բերում առաջնահերթ նշանակություն: Ուստի հարկավոր է ըստ ամենայնի զարգացնել սկզբունքային ընկերական քննադատությունն ու ինքնաքննադատությունը, դրանք արդյունավետորեն օգտագործել բարեհոգության, ինքնահանգստացման դեմ, դժվարությունների հաղթահարման, ավելի արագ առաջ ընթանալու գործում տեղ-տեղ ցուցաբերվող դժկամության դեմ: Ոմանք ասում են, թե հարկավոր է դադարեցնել քննադատությունը, քննադատեցինք հաշվետու-ընտրական կամպանիայի ժամանակ, համագումարում և՝ վերջ: Սրա հետ չի կարելի համաձայնել: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը ոչ թե կամպանիա են, այլ պրոցես, դրանք պետք է լինեն մեր աշխատանքի մշտական հատկանիշը, մեր զարգացման շարժիչ ուժը: Ամեն ինչում պետք է առկա լինի հրապարակայնություն: Իրենց շատ նեղված պետք է զգան բոլոր նրանք, ովքեր վարժվել են ապրել անթույլատրելի առանձնաշնորհումներով:

Պետք է գործն այնպես այնպես կազմակերպել, որ յուրաքանչյուր ղեկավար, ինչպես արդեն ասվել է, մշտապես գտնվի վերահսկողության տակ թե՛ վերևից և թե՛ ներքևից, զգալով ողջ պատասխանատվությունը թե՛ նրանց առջև, ովքեր իրեն են ղեկավարում և թե՛ նրանց առջև, ում ինքն է ղեկավարում, այսինքն կուսկազմակերպության, իր ընկերների, աշխատավորական կոլեկտիվի առջև, պետք է լիովին կենսագործել համագումարի այն հետևությունը, որ կուսակցության մեջ չկան և չեն կարող լինել վերահսկողությունից դուրս մնացող, քննադատության համար փակ կազմակերպություններ, չկան և չեն կարող լինել կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ:

Կենտկոմի պլենումներում, հանրապետության կուսկազմակերպության ակտիվի ժողովներում պետք է քննադատության ենթարկվեն բոլոր այն օրգանները և աշխատողները՝ անկախ գրաված պաշտոնից— սկզբնական կուսկազմակերպության քարտուղարից մինչև Կենտկոմի քարտուղար, որոնք չեն ապահովում ընդունված որո-

շումների լրիվ և ժամանակին կատարումը: Այս սկզբունքը հավասարապես պետք է կիրառվի քաղաքային և շրջանային կուսկազմակերպություններում, բոլոր մակարդակների սովետներում, մինիստրություններում, գերատեսչություններում, յուրաքանչյուր հիմնարկում ու ձեռնարկությունում: Կուսակցական և պետական որոշումների կատարման գործում պասսիվություն ցուցաբերող կադրերը պետք է մշտապես գտնըվեն քննադատության կրակի տակ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինները պետք է մեծացնեն մինիստրությունների ու գերատեսչությունների կուսակցական կոմիտեների դերը, բարձրացնեն նրանց աշխատանքի մակարդակը կառավարման ապարատի, ճյուղերի բովանդակ գործունեության վերակառուցման գործում, հասնեն այն բանին, որ դրանք հանդես գան որպես առաջադիմության կատալիզատորներ, գերատեսչականության, թղթաբարության ու քաշքշուկի դեմ մղվող պայքարի խթանիչներ: Չէ որ հանրապետության ոչ բոլոր մինիստրություններին ու գերատեսչություններին է բնորոշ աշխատանքի նըման ոճը:

Առհասարակ հրատապ է պայքարը բյուրոկրատիզմի դեմ: Դրան հարկ է վճռական և անողոք պատերազմ հայտարարել:

Այսօր բյուրոկրատիզմը լուրջ խոչընդոտ է գլխավոր՝ սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդրի լուծման, ամեն մի վերակառուցման ճանապարհին: Բյուրոկրատիզմը նաև սոցիալական մեծ չարիք է: Եվ այն ախտահարել է մեր աշխատանքի ոչ քիչ տեղամասեր: Փորձեք որևէ տեղեկանք ստանալ որոշ տեղական սովետներում, առանց այսպես ասած, համապատասխան հրետանային նախապատրաստության՝ առանց վերադաս աշխատողի կամ էլ ծանոթի հեռախոսային զանգի կամ միջնորդության: Դա ուղղակի չարչարանք է, և դրան ենթարկվում են մեր շատ քաղաքացիներ, ինչի մասին նրանք գրում են Հայաստանի կոմկուսի Կենտկոմ հասցեագրած նամակներում:

Համագումարը սկզբունքային համարեց հրապարակայնության ընդլայնման հարցը, առանց որի չի կարող լինել ոչ դեմոկրատիզմ, ոչ մասսաների քաղաքական ստեղծագործություն, ոչ նրանց մասնակցությունը կառավարման գործերին: Կուսակցական կոմիտեները, սովետական, տնտեսական մարմինները պետք է իրենց աշխատանքը կառուցեն հրապարակայնության սկզբունքով, հիշելով, որ դա գործին աշխատավորների պետական մոտեցման գրավականն է, մեր կադրերի հոգեբանական վերակառուցման ելակետը:

ՍՄԿԿ համագումարում հատկապես կարևորվեց կուսակցական կոմիտեների ֆունկցիաները պետական ու հասարակական մարմինների ֆունկցիաների հետ շփոթելու դեմ վճռական պայքար մղելու անհրաժեշտությունը: Որպեսզի կուսակցական վերահսկողությունը մանրախնդիր խնամակալության չվերածվի, պետք է բարձրացնել ղեկավարների քաղաքական կուլտուրան, հասնել աշխատանքի հանձնարարված տեղամասի համար յուրաքանչյուրի առավելագույն պատասխանատվության դրսևորման:

Հասարակության զարգացումն արագացնելու կարևորագույն պայմանը կուսակցությունը համարում է սոցիալիստական դեմոկրատիայի, նրա բոլոր կողմերի ու դրսևորումների հետագա խորացումը: Նոր խնդիրների մասշտաբներն ու բարդությունը պահանջում են մասսաների նախաձեռնության ու ստեղծագործության լայն ծավալում, քաղաքական ու հասարակական կյանքի հանգուցային պրոբլեմների լուծման մեջ նրանց ամենաակտիվ ներգրավում: Մասսաների ակտիվացման մեծ ռեզերվներ կան ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հետագա զարգացման, երկրի գործերին յուրաքանչյուր քաղաքացու մասնակցության ընդլայնման մեջ: Կուսակցությունը հետևողականորեն միջոցներ է ձեռնարկում ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության, մյուս մասսայական կազմակերպությունների աշխատանքի կատարելագործման, քաղաքական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծմանը նրանց ակտիվ մասնակցությունն ապահովելու համար, որպեսզի պետական ու հասարակական կազմակերպությունները լիովին օգտագործեն իրենց անած իրավունքները, լիովին կատարեն իրենց վրա դրված պարտականությունները:



Ընկերնե՛ր:

Դժվար է մեկ զեկուցման մեջ արտացոլել բոլոր այն խնդիրներն ու պրոբլեմները, որ կուսակցական կազմակերպություններին առաջադրել է ՍՄԿԿ XXVII համագումարը: Դրանց բազմապլանայնությունն ու մասշտաբայնությունը, դրանց խորությունը յուրաքանչյուր կոմունիստից, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունից ու կոմիտեից կպահանջեն կրկին ու կրկին անդրադառնալ դրանց, իմաստավորել և ըստ այդմ կառուցել իրենց աշխատանքը: Կենտկոմի բյուրոյի զեկուցման մեջ խոսվեց դրանցից գլխավորների մասին:

Հիմնական հետևությունը, որ այսօր պետք է անի մեր պլենումը, այն է, որ համագումարի որոշումների կատարումը, այն ամենը, ինչ սկսել է ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը, և իր հաստատումը գտավ համագումարում, պետք է դառնա մեր կյանքի նորմը: Պետք է ձեռնամուխ լինել գործին, կտրուկ փոխել կադրերի հոգեբանությունը, գտնել աշխատանքի այնպիսի կոնկրետ ձևեր, որոնք համապատասխանեն ժամանակի ոգուն: Կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել գլխավոր ուղղություններում ու դժվար տեղամասերում, ամենուրեք ամրապնդել կարգուկանոնը, կարգապահությունը, բարձրացնել կազմակերպվածությունն ու պատասխանատվությունը: Բոլոր ջանքերը նպատակամղել տասներկուերորդ հնգամյակի առաջին տարվա և ամբողջ հնգամյակի առաջադրանքների կատարմանը:

Մի խոսքով հարկավոր է մտահղացումների էներգիան վերածել կոնկրետ գործողությունների էներգիայի, աշխատել համառ ու համախմբված: **(Երկարատև ծափահարություններ):**

# ՀՍՏԱԿ ԿՈՂՄՆՈՐՈՇԻՉՆԵՐ, ՄԱՍՇՏԱԲԱՅԻՆ ՈՒ ՆՈՐԱՐԱՐԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ հերթական XXVII համագումարն անցավ սովետական հասարակության մեջ, բովանդակ աշխարհում տեղի ունեցող բեկումնային անցքերի ժամանակաշրջանում:

ՍՄԿԿ-ն, անշեղորեն շարունակելով մեծ Հոկտեմբերի գործը, վստահորեն ընթանում է լենինյան կուրսով, պատվով ու արժանավայել կատարում բանվոր դասակարգի, սովետական ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը:

Հետևողականորեն կյանքի կոչելով ՍՄԿԿ ծրագրային հիմնադրույթները, կուսակցության XXVI համագումարի որոշումները՝ սովետական ժողովուրդը ակնառու հաջողությունների է հասել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Ամրապնդվել են մեր պետության արտաքին քաղաքական դիրքերը, բարձրացել է նրա միջազգային հեղինակությունը: ՍՄԿԿ-ն խաղաղության ու սոցիալական առաջադիմության դրոշակակիրն է:

Կուսակցության կյանքում բացառիկ նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը, որը համակողմանիորեն վերլուծեց ժողովրդական տնտեսության մեջ և հասարակական կյանքի մյուս ոլորտներում տիրող դրությունը, սահմանեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական հիմնադրույթը: Կուսակցության մշակած քաղաքական գիծն արժանացավ կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց ջերմ պաշտպանությանը:

Ապրիլյան պլենումը, այնուհետև ՍՄԿԿ XXVII համագումարը համարձակորեն բացահայտեցին մեր կյանքում տեղ գտած թերությունները, ժողովրդին հրապարակավ ասացին դժվարությունների ու վրիպումների մասին, մեծապես խթանեցին սովետական հասարակության առաջընթաց շարժումը, արմատական շրջադարձի ուղիներ հարթեցին եռանդագին պրակտիկ գործողությունների, կարգապահության ու գործարարության վճռական ամրապնդման համար:

Կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցման մեջ, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը, մարմնավորված են կուսակցության տեսական իմաստությունը, նրա քաղաքական ռեալիզմը և նպատակամղվածությունը դեպի ապագան: Այդ դրույթներով են հագեցված ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, ՍՄԿԿ կանոնադրությունը: Համաժողովի ընդունած ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններին բնորոշ են պրակտիկ նպատակամիտությունը, կոնկրետությունը, ժամանակային ու տարածական որոշակիությունը:

Համագումարը պատասխանեց կուսակցության, ժողովրդի առջև դրված արմատական հարցերին, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու զինեց առաջիկա խնդիրների հստակ պատկերացմամբ: Քաղաքական զեկուցման, մյուս փաստաթղթերի ու նյութերի մեջ, համագումարի պատգամավորների ելույթներում շեշտվում է արագացման կոնցեպցիան: Վերջինս նախ և առաջ տնտեսական աճի տեմպերի բարձրացում է: Այդուհանդերձ, նրա էությունը աճի նոր որակն է, արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումը՝ գիտատեխնիկական առաջադիմության, էկոնոմիկայի, աշխատանքի կառավարման, կազմակերպման ու խթանման արդյունավետ ձևերի կառուցվածքային վերափոխման հիման վրա: Արագացման կուրսը ենթադրում է վարել սոցիալական ակտիվ քաղաքականություն, հետևողականորեն հաստատել սոցիալիստական արդարության սկզբունքը, կատարելագործել հասարակական հարաբերությունները, նորացնել քաղաքական ու գաղափարախոսական հաստատությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները, խորացնել սոցիալիստական դեմոկրատիան, վճռականորեն հաղթահարել իներցիան, անշարժությունն ու պահպանողականությունը՝ այն ամենը, ինչը խոչընդոտում է հասարակական առաջադիմությունը:



Որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման գլխավոր լծակ, կուսակցությունը առաջ է քաշում գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացումը, նոր սերունդների տեխնիկայի, սկզբունքորեն նոր տեխնոլոգիաների լայն արմատավորումը, որոնք ապահովեին առավելագույն արտադրողականություն և արդյունավետություն:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման առաջատարը մեքենաշինությունն է, որն անհրաժեշտ է ամենակարճ ժամանակամիջոցում հասցնել տեխնիկական ամենաբարձր մակարդակի: Հրատապ խնդիր են արդիական էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի մշակումն ու մասսայական արտադրությունը, վառելիքաէներգետիկ համալիրի արմատական վերակառուցումը, էներգետիկ ծրագրի կատարումը: Շատ բան է արվելու մետալուրգիայի զարգացման, ժողովրդական տնտեսության քիմիացման, նոր կոնստրուկցիոն և առաջադիմական այլ նյութերի նկատմամբ եղած պահանջմունքների ապահովման համար: Կյանքը թելադրում է արմատապես բարելավել կապիտալ շինարարությունը, ինդուստրիալ և կազմակերպական նոր մակարդակի բարձրացնել ամբողջ շինարարական համալիրը, էապես կրճատել ինվեստիցիոն շրջափուլը:

Կուսակցությունը խնդիր է դնում իրականացնել գիտության եռանդագին շրջադարձը դեպի երկրի ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինում՝ այն ավելի սերտորեն զուգակցելով արտադրության հետ: Այդ նպատակներով օգտագործել ինտեգրացման ու փոխգործողության նոր, իրենց արդարացրած ձևերը՝ պրակտիկայում հետազոտությունների արդյունքների ներդրման արագացում, ակադեմիական և ճյուղային ինստիտուտների, բուհական գիտության պոտենցիալի բարձրացում, գիտական հերթափոխի պատրաստման բարելավում:

Համակուսակցական, համաժողովրդական առաջնահերթ խնդիր է պարենային ծրագրի հետևողական կենսագործումը: Ագրոարդյունաբերական համալիրի զարգացման ասպարեզում հրամայական պահանջ է, արդեն ընթացիկ հնգամյակում, արմատապես բարելավել բնակչության պարենի մատակարարումը: Կարևոր է հասնել ագրոարդյունաբերական համալիրի բոլոր օղակների հստակ, տնտեսապես փոխկապակցված աշխատանքի: Ուժեղացնել գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությունը գյուղատնտեսության և նրա հետ առնչվող ճյուղերի է՛լ ավելի կայուն զարգացման վրա:

Կառավարման կատարելագործումը պահանջում է մտածելակերպի վերակառուցում, կուսակցական ակտիվի, տնտեսական կադրերի, աշխատավորական լայն զանգվածների կողմից նոր խնդիրների հստակ ըմբռնում, ստեղծված ստերեոտիպերից հրաժարում: Անհրաժեշտ է բարելավել կառավարման տեսական հարցերի գիտական մշակումը, որոնք կապված են նախ և առաջ սոցիալիզմի օրոք արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների փոխգործողության դիալեկտիկայի, սոցիալիստական սեփականության զարգացման, ապրանքադրամային հարաբերությունների կատարելագործման, ցենտրալիզմի և տնտեսական կազմակերպությունների ինքնուրույնության զուգակցման հետ:

Տնտեսական, կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը պետք է ուղղված լինի նրան, որ մարդիկ տիրոջ շահագրգռությամբ վերաբերվեն արտադրությանը, որ ապահովվի նրանց ակտիվ մասնակցությունը կառավարմանը, զարգացվի աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, գործարար կերպով կազմակերպվի սոցիալիստական մրցությունը տասներկուերորդ հնգամյակի պլանների կատարման համար:

Կուսակցության մեծ համաժողովին նախորդեց Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարը, որի ուշադրության կենտրոնում էին գտնվում ՍՄԿԿ XXVII համագումարի գլխավոր փաստաթղթերը՝ կուսակցության ծրագրի նոր խմբագրության, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների նախագծերը: Բնականաբար, հանրապետության կուսակցական կազմակերպության կատարած աշխատանքը և առաջիկա գործերն ու

խնդիրները ինչպես ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, այնպես էլ պատգամավորների ելույթներում դիտվում էին այդ փաստաթղթերի գաղափարների և հիմնադրույթների ոգով, կուսակցության այսօրվա բարձր պահանջների ոգով։ Հայաստանի կոմունիստների համաժողովն ամենայն գործարարությամբ քննարկեց ՀԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը։ Մտքերի փոխանակությանը մասնակցած պատգամավորները համակողմանիորեն, սկզբունքային դիրքերից վերլուծեցին Կենտկոմի, կուսակցական կոմիտեների, սովետական, պետական ու տնտեսական մարմինների գործունեությունը, քննադատաբար գնահատեցին ձեռք բերած արդյունքները, բացահայտեցին լուրջ թերություններ ու վրիպումներ։ Միաժամանակ նշվեցին դրանց հաղթահարման ուղիները, արժեքավոր առաջարկություններ արվեցին տեղում վիճակը բարելավելու, հանրապետության առջև կանգնած տնտեսական ու մշակութային շինարարության խնդիրները լուծելու վերաբերյալ։

Ելնելով կուսակցության XXVII համագումարի պահանջներից, անհրաժեշտ է մասշտաբային մոտեցման հիման վրա գնահատել հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արդյունքները, պատասխանատվությամբ վերլուծել և բացահայտել տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում դեռևս առկա թերությունները, դժվարությունները, քննադատաբար իմաստավորել արվածը, իրավիճակը կենսագործունեության բոլոր տեղամասերում։

Վերջին երկու հնգամյակում հանրապետությունն զգալի հաջողությունների է հասել ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում։ Հետագա զարգացում են ստացել գիտությունը, մշակույթը, ժողովրդական կրթությունը, սպասարկման ոլորտը։

ՀԿԿ XXVIII համագումարում նշվեց, որ միջոցներ են ձեռնարկվել ժողովրդական տնտեսության կառուցվածքի, արտադրողական ուժերի կատարելագործման, դրանց ռացիոնալ տեղաբաշխման, բնակչությանը հասարակական արտադրության մեջ ներգրավելու խնդրի լուծման, քաղաքների ու գյուղերի բարեկարգման, բնության ու շրջակա միջավայրի պահպանության նպատակով։ Առանձնակի ուշադրություն է դարձվել լեռնային ու նախալեռնային շրջանների զարգացմանը, հողերի մելիորացմանը և ջրատնտեսական շինարարությանը։

Այդուհանդերձ, գոհացուցիչ չեն գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրության ինտենսիվացման և նրա արդյունավետության բարձրացման տեմպերը։ Տակավին ակտիվ աշխատանք չի տարվում արտադրության կառավարման ու կազմակերպման կատարելագործման, ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման, տնտեսման ու ռեսուրսախնայողության ասպարեզում։

Արտադրության պլանների անվերապահ կատարումը դեռևս նորմ չի դարձել բոլոր աշխատավորական կոլեկտիվների համար։ Անցած հնգամյակի ընթացքում միջին հաշվով ձեռնարկությունների 7—8 տոկոսը չի ապահովել ապրանքային արտադրանքի թողարկման և իրացման տարեկան պլանների կատարումը։ Անբավարար են աշխատել «Նաիրիտ» գիտաարտադրական, «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորումները, Երևանի ավտոդողերի ու ռետինատեխնիկական իրերի, Կիրովականի քիմիական մանրաթելի, Հրազդանի ցեմենտի գործարանները և մի շարք այլ ձեռնարկություններ, որոնք պակաս են տվել միլիոնավոր ռուբլիների արտադրանք։ Յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն չի ապահովել պայմանագրային մատակարարումների պլանների կատարումը։ Աշխատանքի արտադրողականության հավելաճի միայն 36 տոկոսն է ապահովվում նոր տեխնիկայի ներդրման հաշվին։

ՀԿԿ XXVIII համագումարը նշեց, որ դեռևս դանդաղ է վերակառուցվում կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, տնտեսական մարմինների աշխատանքը այսօրվա պահանջների լույսի ներքո։ Մի շարք ձեռնարկություններում նոր տեխնիկայի ներդրման ծրագրերն ու պլանները առաջվա պես անհիմն բնույթ են կրում, թույլ են շաղկապվում արտադրության զարգացման, կապիտալ շինարարության, նյութատեխնիկական մատակարարման պլանների հետ։

Շատ կոլեկտիվներ շարունակում են թողարկել հնացած կոնստրուկցիայի և սպառողական ցածր հատկություններ ունեցող արտադրանք։ Արդի մակարդակից ետ է մնում հանրապետության հաստոցաշինական ձեռնարկությունների արտադրանքը։ Էլեկտրատեխնիկական, սարքաշինական, գործիքաշինական, քիմիական մեքե-



նաշինության ձեռնարկությունները թողարկում են հնացած մոդելների և կոնստրուկցիաների արտադրանք։

Աշխատանքի ցածր արտադրողականության հիմնական պատճառներից է արտադրության կազմակերպման և նոր տեխնոլոգիայի արմատավորման անբավարար մակարդակը։ Արդյունաբերության շատ ձեռնարկություններում ինչպես հարկն է չեն զբաղվում աշխատանքային պրոցեսների մեքենայացման աստիճանի բարձրացմամբ։ Այսօրվա վիճակով հանրապետությունում յուրաքանչյուր երրորդ բանվորը ձեռքի աշխատանք է կատարում։

Բավարար չեն աշխատանքները ճկուն ավտոմատացված արտադրությունների ներդրման, հիմնական արտադրական ֆոնդերի նորացման և արդիականացման գործում։ Դրանց զգալի մասը բարոյապես ու ֆիզիկապես վաղուց հնացել է։ Սարքավորումների ընդհանուր քանակի մեջ ցածր է ավտոմատացված գծերի, մասնագիտացված, թվածրագրային կառավարմամբ հաստոցների, ռոբոտացված համալիրների բաժինը։ Միաժամանակ հանրապետության ձեռնարկություններում կան մեծ քանակությամբ չտեղակայված նոր սարքավորումներ։

Արտադրատեխնիկական պոտենցիալի և ռեսուրսների բոլոր տեսակների արդյունավետ օգտագործման խնդիրները հաջողությամբ կլուծվեն միայն պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու, արտադրության և աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրական, տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահությունը ամրապնդելու պայմաններում։ Հաջողության գրավականն, անշուշտ, բոլոր մասնագետների ու բանվորների որակավորման, նրանց սոցիալական ակտիվության հետևողական բարձրացումն է, ստեղծագործական բարեխիղճ աշխատանքը։

Էկոնոմիկայի տեխնիկական առաջադիմության արագացումը ենթադրում է գիտական գաղափարների ու մշակումների զինանոցի հարաճուն նորացում։ Այստեղ վճռական դերը պատկանում է հիմնարար հետազոտություններին։ Գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը կոմպլեքսային խնդիր է։ Բնականաբար, այդ պրոբլեմների հետազոտումը պահանջում է նաև գիտնականների միջգիտաճյուղային համագործակցություն։ Այնինչ մեզանում հետազոտությունների կոորդինացումը չունի անհրաժեշտ նպատակասլացություն։ Դեռևս ստեղծված չէ նոր գաղափարների արդյունավետ ընտրության, դրանց կուտակման և օգտագործման մեխանիզմ։ Այս գործում լուրջ անելիքներ ունեն հանրապետության գիտությունների ակադեմիան, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, ինչպես և ճյուղային հետազոտական ինստիտուտներն ու կոնստրուկտորական բյուրոները։ Օրվա պահանջ է բուհական գիտության շրջադարձը դեպի արտադրություն։ Հարկավոր է օգնել բուհերի այն ամբիոններին, որոնց հետազոտությունների արդյունքները կարելի է հաջողությամբ կիրառել պրակտիկայում։ Ձեռնարկությունների տեխնիկական վերազինման կարևոր օղակ պետք է դառնա գիտության գործարանային սեկտորը։

Կուսակցության XXVII համագումարը կարևորագույն խնդիր համարեց սննդամթերքներով բնակչության հուսալի ապահովումը, պարենային ծրագրի իրականացումը։ Չնայած հանրապետության էկոնոմիկայի ագրարային սեկտորի ինտենսիվացման նպատակով կատարված աշխատանքին, այդ գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Շատ շրջաններում ռացիոնալ կերպով չեն օգտագործվում հողը, նյութատեխնիկական և ֆինանսական ռեսուրսները, ցածր է դաշտերի ու ֆերմաների արդյունավետությունը, մի շարք տնտեսություններում նվազում է ֆոնդահատույցը, աճում արտադրանքի ինքնարժեքը։ Այս ամենը վկայում է, որ կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը, կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերը բավարար չափով չեն կենտրոնացնում ագրոարդյունաբերական համալիրի աշխատանքի արդյունավետության, նրա ինտենսիվացման բարձրացման վրա։

Այս հարցերը հանգամանորեն քննարկվեցին Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում, և այժմ, ՍՄԿԿ XXVII համագումարի նոր և ավելի բարձր պահանջների լույսի ներքո, դրանք առանձնակի նշանակություն և սրություն են ստանում, աշխատանքի առաջին պլան մղվում։

Հրատապ խնդիր է հասնել ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի

արդյունավետության բարձրացման, աշխատողների ջանքերը մոբիլիզացնել կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականության կենսագործման, պարենային ծրագրի կատարման համար: Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը կարևոր որոշում ընդունեցին ագրոարդյունաբերական համալիրի տնտեսական մեխանիզմի կատարելագործման վերաբերյալ: Ընթացիկ հնգամյակի համար մտցվում են պետությանը գյուղատնտեսական արտադրանք վաճառելու հաստատուն պլաններ, որոնք ենթակա չեն փոփոխման, ընդ որում տնտեսություններին իրավունք է տրվում տնօրինել այն ամենը, ինչ արտադրված է պլանից դուրս: Նման մոտեցումը լայն ասպարեզ է բացում գյուղի աշխատավորների նախաձեռնության համար, մեծացնում է նրանց շահագրգռությունը մթերքների արտադրության ավելացման գործում:

Ընդլայնվում է կոլտնտեսությունների ու սովխոզների ինքնուրույնությունը և ուժեղացվում նրանց պատասխանատվությունը աշխատանքի արդյունքների համար: Տեղական մարմինները ևս շահագրգռված են այդ սկզբունքի կիրառմամբ: Նրանց տրամադրության տակ կմնան մսի, կաթի, մյուս արտադրանքի ռեսուրսներ, երբ տնտեսությունները կատարեն մատակարարումների պլանները կենտրոնացված ֆոնդերի համար: Այսպիսով, ռեալ ուղիներ են բացվում տեղական հնարավորությունների հաշվին մատակարարումը բարելավելու համար:

Նյութական արտադրության ոլորտում ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրները իրենց մասշտաբներով վիթխարի են, բարդ ու բազմազան: Հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների պարտքն է առավելագույն ավանդ ներդնել այդ խնդիրների անթերի կատարման մեջ:

Ժողովրդական տնտեսության մեջ խոր վերափոխումներ կատարելու կուսակցության մշակած ստրատեգիայի իրագործումը կապահովի էկոնոմիկայի զարգացման արագացում: Բայց դա քիչ ժամանակ չի պահանջի: Ուստի անհրաժեշտ է սկսել այն ռեզերվներից, որոնք խոշոր ծախսումներ չեն պահանջում, բայց տալիս են արագ և շոշափելի արդյունք: Խոսքը վերաբերում է կազմակերպական-տնտեսական և սոցիալ-հոգեբանական գործոններին, ստեղծված արտադրական պոտենցիալի ավելի լավ օգտագործմանը, աշխատանքի խթանման բարձրացմանը, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդմանը, անտնտեսվարության հաղթահարմանը: Շահագրգռության, տիրոջ հոգածության պարագայում միայն այդ միջոցառումները բարձր հատույց կտան:

Տասներկուերորդ հնգամյակը երկարաժամկետ տնտեսական ստրատեգիայի իրականացման առաջին և շատ պատասխանատու փուլն է: Այն կոչված է շրջադարձային լինելու երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման բոլոր ուղղություններում:

Կուսակցությունը հաստատուն կերպով սոցիալական ոլորտի զարգացումն արագացնելու կուրս է վերցրել: Այդ ասպարեզում արդեն ձեռնարկված են լուրջ միջոցներ, մտցված են անհրաժեշտ ճշգրտումներ պլանավորման սկզբունքների մեջ: Իրականացված է կապիտալ ներդրումների վերաբաշխումը հօգուտ սոցիալական ծրագրի: Ավելի լրիվ են հաշվի առնվելու ռեգիոնների պահանջմունքներն ու առանձնահատկությունները: Լրացուցիչ միջոցներ են նախատեսվում բնակարանային շինարարության ընդլայնման նպատակով:

Ընթացիկ հնգամյակում հանրապետությունում իրականացվելու է սոցիալական զարգացման ծավալուն ծրագիր: Կընդլայնվի բնակելի տների, դպրոցների, հիվանդանոցների և պոլիկլինիկաների շինարարությունը, կմեծանա կոմունալ-կենցաղային սպասարկումների ծավալը: Կարագանան գյուղի սոցիալական վերակառուցումը, այլ օբյեկտների շինարարությունը:

Սոցիալական կարևոր խնդիրներից է շուկայի հագեցումը բազմազան ապրանքներով և սպասարկումներով: Չնայած ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ծավալային ցուցանիշների կատարմանը և դրանց արտադրության աճի արագ տեմպերին, շատ արտադրատեսակների նկատմամբ բնակչության պահանջարկը դեռևս մնում է չբավարարված, իսկ ձեռնարկությունները երբեմն արտադրում են ոչ ոքի պետք չեկող և ցածրորակ արտադրանք: Ստեղծված իրավիճակը բացատրվում է նրանով, որ այդ ճյուղերը դեռևս լիովին չեն կողմնորոշվել դեպի կոնկրետ գնորդի կարիքների բավարարումը:



Այժմ երկրի մասշտաբով ավարտվում է թեթև արդյունաբերության մեջ տնտեսավարման տնտեսական մեխանիզմի մշակումը, որի նպատակն է վերջ դնել գործի նկատմամբ հախուռն մոտեցմանը, նպաստել այդ ճյուղի, ինչպես նաև առևտրի աշխատողների առավելագույն շահագրգռվածությանը բարձրորակ ապրանքների արտադրության ու վաճառքի ավելացման համար: Այսպիսով, ոչ միայն ձեռնարկությունների արտադրական կյանքը, այլև աշխատանքի վարձատրությունը ուղղակի կախման մեջ կդրվեն թողարկվող արտադրանքի որակից, տեսականուց, շուկայի պահանջմունքներին արձագանքելու կարողությունից:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների զարգացման հանրապետական կոմպլեքսային ծրագրով նախատեսված է միութենական ենթակայության ձեռնարկություններում շեշտակիորեն ավելացնել ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը: Մինչդեռ դրանց ղեկավարներից շատերը խույս են տալիս կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրության կազմակերպումից:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ոլորտում առաջիկա ամբողջ աշխատանքի գլխավոր նպատակն է արմատական բեկումը դրանց որակի բարձրացման, տեսականու ընդլայնման և նորացման գործում:

Բազմազան ապրանքների արտադրության ավելացումով նոր իրավիճակ է ստեղծվում առևտրի ասպարեզում: Այն պահանջում է շուկայի կոնյունկտուրայի, ծագող միտումների խոր ուսումնասիրում, սթափ վերլուծություն և օբյեկտիվ հետևություններ: Պահանջարկի վատ ուսումնասիրման հետևանքով հանրապետության առևտրի մինիստրությունը և Հայկոոպը հաճախ ներկայացնում են ապրանքների չհիմնավորված հայտեր ու պատվերներ, լուրջ սխալներ անում ապրանքային ռեսուրսներն ըստ հանրապետության ռեգիոնների բաշխելիս:

Բնականաբար հարց է ծագում. ի՞նչն է պատճառը, որ առևտրի ցանցում սիստեմատիկ կերպով ընդհատվում է մանկական տեսականու ապրանքների, տրիկոտաժեղենի, տղամարդկանց ու կանանց ձմեռային վերարկուների ստացումը և այն էլ հենց ձմռանը: Երբեմն դեֆիցիտային ապրանքների շարքն են ընկնում նույնիսկ թեյի բաժակը, գավաթները, անձեռոցիկը և այլն:

Կենցաղային սպասարկումների որոշ տեսակների գծով հանրապետությունը ետ է մնում միջին միութենական ցուցանիշներից, դանդաղ են ներդրվում սպասարկման այնպիսի ձևեր, որոնք հեշտացնում են տնային աշխատանքը, տնտեսում ազատ ժամանակը: Կենցաղի օբյեկտների տեղաբաշխումը, նրանց աշխատանքի ռեժիմը միշտ չէ, որ հարմար են բնակչության համար: Սպասարկման ոլորտի աշխատանքը, նրա ըստ ամենայնի կատարելագործումը պետք է մշտապես գտնվեն կուսակցական, սովետական մարմինների ու կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Կուսակցությունը լուրջ խնդիրներ է առաջադրել անընդհատ կրթության միասնական համակարգի ստեղծման, ինքնուրույն կյանքի ու աշխատանքի երիտասարդության նախապատրաստման գործի արմատական բարելավման նպատակով: Նախատեսվում են բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման, բանվորների ու մասնագետների որակավորման բարձրացման բարեփոխումներ: Անհրաժեշտ է ձեռնարկել գործուն միջոցներ ուսումնադաստիարակչական աշխատանքի բովանդակությունն ու որակը կատարելագործելու, ուսումնական պրոցեսում էլեկտրոնահաշվողական տեխնիկայի ներդրումն արագացնելու, սովորողների կոմպյուտերային գրագիտությունը ապահովելու նպատակով: Հարկավոր է էապես ուժեղացնել ուշադրությունը աշակերտների հանրօգուտ աշխատանքի կազմակերպման համար անհրաժեշտ բազայի ստեղծման, երիտասարդության համընդհանուր պրոֆեսիոնալ կրթության անցնելու պայմանների ստեղծման, մասնագիտական կողմնորոշման աշխատանքի բարելավման նկատմամբ:

Գիտատեխնիկական առաջընթացի արդի փուլը հրամայաբար պահանջում է կտրուկ և արագ բարձրացնել մասնագետների, նախ և առաջ ինժեներների, պատրաստման մակարդակը, ապահովել հիմնարար գիտելիքների, ինֆորմատիկայի ու հաշվողական տեխնիկայի տիրապետումը, կազմավորել տնտեսագիտական ու տեխնոլոգիական մտածողության նոր տիպ, դաստիարակել բարձր գիտակցականություն, քաղաքացիական ակտիվ կենսադիրք:

Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն-

ների ուսումնական պրոցեսը, նրանց գիտական ու մանկավարժական կյանքը պետք է սերտորեն շաղկապել արտադրության հետ, հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերի հետ, ուժեղացնել վերջիններիս փոխադարձ շահագրգռությունը կադրերի պատրաստման ու վերապատրաստման մակարդակի բարձրացման, նրանց օգտագործման արմատական բարելավման համար:

ՍՄԿԿ XXVII համագումարը հանգամանորեն, սոցիալական լայն մեկնակետից մշակեց առողջության պահպանման, մասսայական ֆիզիկական կուլտուրայի և սպորտի, տուրիզմի զարգացման, մարդկանց, հատկապես երիտասարդների բովանդակալից ժամանցի ապահովման գործի հետագա բարելավման միջոցառումներ: Ծեշտվեց առողջ ապրելակերպի հաստատման, հարբեցողության ու ալկոհոլիզմի հաղթահարման բացառիկ կարևորությունը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը մշակել են առողջապահության նյութական բազայի զարգացման հատուկ ծրագիր, այդ կապակցությամբ լրացուցիչ առաջադրանքներ են սահմանվել հանրապետական ու միութենական ենթակայության մինիստրությունների, գերատեսչությունների ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար:

Արմատական բարելավման կարիք է զգում մշակույթի ու սպորտի հիմնարկների աշխատանքը: Դեռևս անբավարար է օգտագործվում առկա նյութական բազան: Ցածր է հաճախումների թիվը մշակույթի հիմնարկներ: Որոշ ֆիզկուլտուրային կազմակերպությունների անգործության, ինչպես նաև գերատեսչական պատնեշների պատճառով մարզակառույցները հաճախ գործում են թերբեռնվածությամբ: Թույլ է ֆիզկուլտուրային-կազդուրիչ աշխատանքի դրվածքը աշակերտների, ուսանողների, բանվոր և հատկապես գյուղական երիտասարդության շրջանում: Պատշաճ ուշադրություն չի դարձվում բնակչության կուլտուրական ժամանցի կազմակերպմանը:

Այդ հարցերի լուծումը պահանջում է կուսակցական ու պետական մարմինների սևեռուն ուշադրությունն ու հոգատարությունը, կոնկրետ և հետևողական աշխատանքը:

Կուսակցության XXVII համագումարը հավաստեց, որ ՍՄԿԿ-ն, հավատարիմ իր ազգային քաղաքականության լենինյան սկզբունքներին, պսուհետ ևս անդուլ կամրապնդի մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, աշխատավորներին կդաստիարակի սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով: Կուսակցությունը մի առանձին նրբազգացություն և շրջահայացություն է դրսևորում այն ամենում, ինչ վերաբերում է ազգային հարաբերությունների զարգացմանը, շոշափում յուրաքանչյուր ազգի և ազգության շահերը, մարդկանց ազգային զգացումները, ժամանակին լուծում այդ ոլորտում ծագող հարցերը, սկզբունքային պայքար մղում նացիոնալիզմի ու շովինիզմի, տեղայնության ամեն տեսակ դրսևորումների դեմ:

Ռուս մեծ ժողովրդի, մեր հայրենիքի եղբայրական բոլոր ժողովուրդների հետ բարեկամությունը եղել է, կա և մշտապես կլինի սրբություն հայ ժողովրդի համար, նրա կյանքի հզոր շարժիչ ուժը, նրա բոլոր հաջողությունների երաշխիքը: Ինչպես ՍՄԿԿ XXVII համագումարի բարձր ամբիոնից ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը, այդ բարեկամության, ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության հետագա ամրապնդումը, երկրի ժողովրդատնտեսական միասնական, համալիր զարգացման գործում հանրապետության ավանդի մեծացումը Հայաստանի կուսակցական կազմակերպությունը համարում է իր կենսական գործն ու մեծագույն պարտքը:

Կուսակցության համաժողովը առաջնահերթ խնդիր համարեց կուսակցական ներգործության ամբողջ ուժի կենտրոնացումը յուրաքանչյուրի կողմից ներկա պահի սրությունը, բեկումնային բնույթն ըմբռնելու վրա, մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը խթանելու վրա:

Գաղափարախոսական աշխատանքի ներգործունության բարձրացումը ենթադրում է կյանքի հետ պրոպագանդայի կապի ամրապնդում, արդի իրադրության, մեր նվաճումների ու թերությունների սթափ հաշվառում: Առանձնապես կարևոր է դաստիարակության գործում առավելագույն կոնկրետությունը, մարդկանց հետ անհատական աշխատանքի ուժեղացումը: Մինչդեռ հանրապետության մի շարք քաղաքային ու շրջանային կազմակերպություններում դաստիարակչական աշխատանքը շարունակում են վարել հին ձևով, առանց պատշաճ նպատակասլացության, առանց առկա թերությունները վերացնելու պատրաստակամության: Լճացումը, դանդաղկոտությունը, թղթաբարությունը անհարիր են քաղաքական և աշխատանքային, բարոյական և էսթետիկական դաստիարակության բոլոր բնագավառներում:

Կուսակցության ժամանակակից կուրսը, արագացման ստրատեգիան ստեղծում են գաղափարախոսական գործունեության արդյունավետության զգալի բարձրացման բացառիկորեն բարենպաստ հնարավորություններ, որոնք առայժմ թույլ են օգտագործվում: Խնդիրն այն է, որ աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակությունը, դրա ձևերն ու մեթոդները համապատասխանեցվեն ներքին ու միջազգային կյանքի իրողություններին, ապահովվի դրա միացումը կազմակերպչական և տնտեսական գործունեության հետ: Որքան ակտիվ է մարքս-լենինյան տեսության դերը կենդանի պրակտիկայի իմաստավորման մեջ, այնքան հաջող է իրականացվում սոցիալիստական հասարակության կատարելագործումը:

Գաղափարախոսական աշխատանքում գլխավոր կողմնորոշիչը աշխատավորներին կոմունիստական գաղափարայնության, սովետական հայրենիքի նկատմամբ նվիրվածության, պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, աշխատանքի ու հանրային հարստության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ոգով դաստիարակելն է: Կոմունիզմ կառուցողների գաղափարայնությունը անբաժանելի է ազնվությունից, ճշմարտությունից, օրինավորությունից:

«Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը: Պայքարը կյանքի անաղարտության համար գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, նրա սոցիալական հատույցի բարձրացման, անառողջ երևույթների առաջացումից ապահովվելու ամենազորեղ եղանակն է»: Պետք է անզիջում պայքար ծավալել մեր կյանքի անաղարտության համար, սեփականատիրական նկրտումներ ունեցող մարդկանց դեմ, հասարակական շահերի նկատմամբ քամահրական վերաբերմունքի դեմ: Ոչ մի ներում չպիտի լինի նրանց, ովքեր ձեռնարկությունից «թռցնում են» ինչ որ ձեռքներն ընկնի, ամեն կարգի կաշառակերների ու գռփողների, պաշտոնեական դիրքը չարաշահողների, սպեկուլյանտների, ժողովրդական բարիքը հափշտակողների, ամեն կարգի բացասական հատկանիշներ կրողների համար: Նրանց նկատմամբ պետք է կիրառել հասարակական դատապարտման, օրենքի ամբողջ ուժը:

Բացասական երևույթների, անաշխատ եկամուտների դեմ պայքարը իրավապահպան մարմինների կարևոր ֆունկցիան է: Նրանց գլխավոր խնդիրն է հասնել պատժի անխուսափելիության, որպեսզի մարդիկ իմանան ու վստահ լինեն, որ ոչ մի իրավախախտող չի խուսափի արժանի պատժից:

Խտրություն չդնելով միջոցների մեջ՝ բուրժուական պրոպագանդան փորձում է խեղաթյուրել սովետական ապրելակերպի էությունը. սովետական մարդկանց գիտակցության մեջ սերմանել հոռետեսություն և անվստահություն կոմունիստական իդեալների իրականացման նկատմամբ, արմատավորել քաղաքական ինֆանտիլիզմ, սպառողական հոգեբանություն, նացիոնալիստական գաղափարներ:

Իմպերիալիզմի սանձազերծած համատարած «հոգեբանական պատերազմի» պայմաններում մասսայական ինֆորմացիայի միջոցները, բոլոր գաղափարախոսական օղակները պետք է ուժեղացնեն հակապրոպագանդայի հարձակողականությունը, մշտապես մերկացնեն հակակոմունիզմի և հակասովետիզմի գաղափարախոսական դիվերսիաները, վառ ու համոզիչ կերպով ցույց տան մեր ապրելակերպի պատմական առավելությունները:

Մեծ է հասարակության հոգևոր կյանքում արվեստի ու գրականության դերը: Մեր գեղարվեստական մշակույթը, արտացոլելով նոր աշխարհի ծնունդը, դրա հետ մեկտեղ ակտիվորեն մասնակցել է նրա կազմավորմանը, ձևավորելով այդ աշխարհի մարդուն՝ իր երկրի հայրենասերին, իսկական ինտերնացիոնալիստին: Դրանով իսկ նա ճիշտ է ընտրել իր տեղը, իր դերը համաժողովրդական գործում: Հասարակությունը արվեստագետից սպասում է գեղարվեստական հայտնագործություններ, կյանքի ճշմարտություն, որը միշտ եղել է իսկական արվեստի էությունը: Սակայն

ճշմարտությունը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— վերացական հասկացություն չէ, այն կոնկրետ է։ Ճշմարտությունը ժողովուրդների մեծագործությունների մեջ է և հասարակության զարգացման հակասությունների մեջ, ներուականության և աշխատանքային առօրյայի մեջ, հաղթանակների ու անհաջողությունների մեջ, այսինքն՝ հենց կյանքի մեջ, նրա ողջ բազմազանության, դրամատիզմի ու վեհության մեջ։ Միայն գաղափարական, գեղարվեստական, ժողովրդական գրականությունն է դաստիարակում ազնիվ, հոգով ուժեղ մարդկանց, որոնք ընդունակ են կրելու իրենց ժամանակի բեռը։

Համագումարը հատկապես նշեց, որ առաջիկա անելիքների մասշտաբներն ու նորությունը բացառիկ բարձր պահանջներ են ներկայացնում ՍՄԿԿ-ի քաղաքական, գաղափարախոսական և կազմակերպչական գործունեության բնույթին, որն այսօր միավորում է նպատակի, կամքի ու կարգապահության միասնությամբ զոդված ավելի քան 19 միլիոն կոմունիստների։

Առաջնահերթ կարևորություն ունեցող գործ են կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցումը, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում ստեղծագործության, սկզբունքային պահանջկոտության ու ինքնաքննադատության մթնոլորտի հաստատումը, սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և գաղափարադաստիարակչական պրոբլեմների նոր, գործուն լուծումների որոնումը։

Կուսակցական կոմիտեների պարտքն է հաստատակամորեն կատարելագործել սկզբնական կազմակերպությունների գործունեությունը, հիմնավորապես խորամուխ լինել նրանց աշխատանքում, անհրաժեշտ ամեն ինչ անել, որպեսզի նրանք դառնան մասսաների իսկական քաղաքական կազմակերպիչներ՝ երկրի զարգացման բեկումնային փուլում։

Կուսակցական կազմակերպության հզոր պոտենցիալը գործի դնելը պահանջում է թե՛ նոր մոտեցումներ կադրերի նախաձեռնության ու պատասխանատվության բարձրացմանը և թե՛ անդուլ հոգածություն կուսակցության շարքերի անաղարտության մասին այն հաշվով, որպեսզի կուսակցությունը հուսալիորեն պատնեշվի պատահական մարդկանցից, կարիերիստներից ու շահամոլներից։ Դրա հետ մեկտեղ պետք է մշտապես ուժեղացնել կոմունիստների գաղափարական դաստիարակությունը, ամրապնդել կուսակցական կարգապահությունը, ապահովել կանոնադրական պահանջների անվերապահ կատարումը։

Անհրաժեշտ է ըստ ամենայնի զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ուժեղացնել պայքարը հանդուրժողականության դեմ, ուղղել այն աշխատողներին, ովքեր խոսքով պայքարում են վերակառուցման օգտին, բայց մտածում և գործում հնացած սխեմաներով, հիվանդագին են ընդունում իրենց հասցեին արվող դիտողությունները։ Պետք է վճռականորեն կասեցնել առողջ քննադատությունը ճնշելու, դրա համար հալածելու ամեն տեսակ փորձերը։

Զարգացման արդի փուլը խիստ բարձրացրել է բոլոր կադրերին ներկայացվող պահանջները, դրանք հագեցրել է նոր բովանդակությամբ՝ գործարարություն, գաղափարական տոկունություն, հաստատուն բարոյական համոզմունքներ, նորի սուր զգացողություն, կոլեկտիվ աշխատանք կազմակերպելու, լիակատար պատասխանատվություն ստանձնելու, մարդկանց շահերով ու կարիքներով ապրելու կարողություն։

ՀԿԿ Կենտկոմի 1986 թվականի ապրիլյան պլենումը, հանգամանորեն քննարկելով «ՍՄԿԿ XXVII համագումարի արդյունքները և համագումարի որոշումների կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը, համոզմունք հայտնեց, որ համագումարի որոշումների կատարումը, այն ամենը, ինչ սկսել է ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը, և իր հաստատումը գտավ համագումարում, պետք է դառնա մեր կյանքի նորմ։ Անհրաժեշտ է ձեռնամուխ լինել գործին, արմատապես փոխել կադրերի հոգեբանությունը, գտնել աշխատանքի այնպիսի կոնկրետ ձևեր, որոնք համապատասխանեն ժամանակի ոգուն։

Կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել գլխավոր ուղղություններում ու դժվար տեղամասերում, ամենուրեք ամրապնդել կարգուկանոնը, կարգապահությունը, բարձրացնել կազմակերպվածությունն ու պատասխանատվությունը։ Բոլոր ջանքերը նպատակամղել տասներկուերորդ հնգամյակի առաջին տարվա և ամբողջ հնգամյակի առաջադրանքների կատարմանը։

---

# ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները գործողության մեջ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

**Ց. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

*ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, որն ունեցավ պատմական նշանակություն, բարձրագույն մակարդակով մարմնավորեց կուսակցության ստեղծագործական կոլեկտիվ միտքն ու կամքը, իր աշխատանքները ծավալեց խորք գիտական մոտեցման և նորարարական ոգու առկայության մթնոլորտում։ Այդ ամենն արտացոլվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումում, որով հանդես եկավ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը, ինչպես նաև համագումարի մյուս փաստաթղթերում։*

*Մատերիալիստական դիալեկտիկան՝ որպես կոմունիստական աշխարհայացքի տեսական հիմք, հնարավորություն ընձեռեց օբյեկտիվորեն ու համակողմանիորեն գնահատելու արդի հասարակական զարգացման ընթացքն իր բոլոր հակասություններով, հաջողություններով ու անհաջողություններով, դրական ու բացասական կողմերով հանդերձ, իմաստավորելու նորի, առաջավորի և հնի, իր դարն ապրածի միջև եղած պայքարը։ Այդ հակասությունների խոր վերլուծության շնորհիվ հնարավոր դարձավ մշակել գիտականորեն հիմնավորված ներքին ստեղծարար և արտաքին ակտիվ քաղաքականություն։*

*ՍՄԿԿ ստրատեգիան ու տակտիկան գիտական կոմունիզմի տեսության հիմնարար պրոբլեմներից են։ Կուսակցության ներկայիս ստրատեգիան ու տակտիկան ստեղծագործական շարունակությունն ու զարգացումն են կոմունիստական արարման ծրագրային խնդիրների, որոնք սկիզբ են առնում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից։ Սահմանելով նոր դարաշրջանի բովանդակությունը, Վ. Ի. Լենինը գրել է. «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում են համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 41, էջ 510—511)։ Մեծ Հոկտեմբերը դրեց կոմունիստական ֆորմացիայի լինելության սկիզբը, պահանջեց մեր կուսակցությունը սոցիալ-դեմոկրատականից վերանվանել կոմունիստականի։ Դա արվեց մեր կուսակցության հիմնադիր և առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի առաջարկով։ Նա գիտականորեն հիմնավորեց դեպի գլխավոր նպատակը՝ անցումային ժամանակաշրջանից կոմունիզմի առաջին փուլին՝ սոցիալիզմին, իսկ վերջինիս կատարելագործումից ու ամրապնդումից հետո աստիճանաբար դեպի բարձրագույն փուլ, հաջողությամբ առաջ ընթանալը։*

*Բոլոր նախորդ ֆորմացիաների համեմատությամբ նոր կոմունիստական ֆորմացիան պատմական կարճ ժամկետում վիթխարի թռիչք կատարեց սոցիալական զարգացման ասպարեզում։ Հաղթահարելով երկրի տնտեսական և կուլտուրական հետամնացության, առաջին և հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմների պատճառած ավերածությունների, ինչպես նաև զանազան սխալների ու վրիպումների հետ կապված հսկայական դժվարությունները, ՍՄԿԿ-ն վստահորեն առաջնորդում էր սովետական ժողովրդին*

դեպի սոցիալական առաջընթացի արդի բարձունքները՝ ՍՍՀՄ-ը թևակոխեց զարգացած սոցիալիզմի փուլը։

Այս փուլի տեսական ընկալումը պահանջում էր նոր, առավել խոր դիալեկտիկական մոտեցում հասարակության զարգացման և դեպի կոմունիզմ նրա առաջխաղացման արդյունքների, խնդիրների ու հեռանկարների նկատմամբ։ Սակայն զարգացած սոցիալիզմի միակողմանի, չափազանցված գնահատականը, ինքնահանգստացումը, մտածողության պահպանողականությունը, շքամոլությունը, և, որ գլխավորն է, նոր կենսական հակասությունները բացահայտելու անկարողությունը, կարևորագույն պատճառներն էին 70-ական թվականների և 80-ական թվականների սկզբի տնտեսական աճի դանդաղեցված տեմպերի։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, դա խզում առաջացրեց «հասարակական պահանջմունքների և արտադրության ձեռք բերված մակարդակի միջև, վճարունակ պահանջարկի և դրա նյութական ծածկույթի միջև»։

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումում Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Կենսական հակասությունների սրությունը հաճախ անտեսվել է, բացակայել է ռեալիզմը էկոնոմիկայի ասպարեզում, սոցիալական բնագավառում, նաև մյուս ոլորտներում իսկական դրությունը գնահատելիս» (ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին։ «Հայաստան» հրատ., 1986, էջ 146)։

Դրա հետևանքով առաջացել էր բացահայտ անհամապատասխանություն սոցիալիստական կարգի հսկայական նվաճումների և սովետական հասարակության կյանքի զանազան կողմերի ետ մնալու միջև։ Այդ ետ մնալը հատկապես անհանդուրժելի դարձավ միջազգային իրադրության սրման պայմաններում, երբ պահանջվում է բեկում իրականացնել ոչ միայն սոցիալիստական հասարակության հետագա զարգացման գործում, այլ նաև միջազգային հարաբերությունների ոլորտում՝ դեպի ժողովուրդների համընդհանուր խաղաղությունն ու անվտանգությունը։ Այդ դիալեկտիկական կապը համակողմանիորեն բացահայտված է ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում։ Բեկումը կարելի է իրականացնել հասունացած կենսական հակասությունների հաղթահարման հիման վրա։ Համագումարի փաստաթղթերում խորապես վերլուծված է ընդհանուր պատկերը. երկու աշխարհ՝ երկու տեսակի հակասություններ։

Ծրագրային նշանակության մեծաթիվ պրոբլեմներից դիտարկենք միայն մեկը, կենտրոնականը, որը կապված է ՍՍՀՄ-ում կառուցված սոցիալիստական հասարակության կատարելագործման հետ։ Այս պրոբլեմն արտացոլում է կուսակցության ծրագրի միայն առաջին մասը և նոր խմբագրությունում այն ձևակերպված է այսպես. «ՍՄԿԿ երրորդ ծրագիրն իր ներկա խմբագրությունում սոցիալիզմի պլանաչափ և համակողմանի կատարելագործման ծրագիր է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիման վրա դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա առաջընթացի ծրագիր։ Դա հանուն խաղաղության և սոցիալական առաջընթացի պայքարի ծրագիր է»։ Այս միասնական ու փոխկապակցված ամբողջական ծրագրի յուրաքանչյուր բաղադրամաս իր հարաբերական ինքնուրույնությունն ունի, որը խոր տեսական քննարկման և ընկալման պահանջ է առաջադրում։ Սկզբում դիտարկենք սոցիալիզմի պլանաչափ և համակողմանի զարգացման էությունը, որով պարզ կդառնա, թե ինչու այդ պրոցեսը օրինաչափորեն կապված է դեպի կոմունիզմ աստիճանական առաջընթացի հետ, և որ այդ ծրագրային նպատակն իրագործելի է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու և հանուն խաղաղության ու սոցիալական առաջընթացի պայքարի վերաբերյալ ՍՄԿԿ-ի գլխավոր գիծը հետևողականորեն անցկացնելու հիման վրա։

Սոցիալիզմի կատարելագործումը կոմունիզմի առաջին փուլի գործառության ու զարգացման երկարատև ժամանակաշրջանն է։ Պատմությունը ցույց տվեց, որ կոմունիստական ֆորմացիայի լինելիության ընթացքում նրա առաջին փուլը, այն է՝ անցման ժամանակաշրջանը, համեմատաբար պակաս տևական է, քան հետագա փուլը՝ սոցիալիզմը։ Սոցիալիզմի՝ որպես նոր հասարակարգի երկարատև փուլի, թերագնահատումը տարածված էր մեր մամուլում։ Կուսակցության ծրագրի նախկին խմբագրությունում և բազմաթիվ աշխատություններում մեր դարաշրջանը բնորոշվում էր որպես կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջան։ Նոր խմբագրությունում ասված է, որ մեր դարաշրջանը կապիտալիզմից սոցիալիզմին և կոմունիզմին անցնելու դարաշրջան է։ Այնուհետև, նախկինում մեզ մոտ գրում էին կոմունիզմի ծավալուն շինարարության՝ որպես անմիջական խնդրի, մասին։ Նոր խմբագրությունում խոսվում է սոցիալիզմի պլանաչափ և համակողմանի կատարելագործման և դեպի կոմունիզմ աստիճանական առաջխաղացման մասին։ Հետևապես, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում սոցիալիզմն իր ողջ ծավալով ներկայացված է որպես կոմունիզմի առաջին փուլ, որի գործառության և կատարելագործման ընթացքում նախապատրաստվում են դեպի կոմունիզմի բարձրագույն փուլ առաջընթացի բոլոր անհրաժեշտ նյութական ու հոգևոր նախադրյալները։

Այժմ դժվար է որոշել սոցիալիզմի կատարելագործման ողջ պրոցեսի ժամկետներն ու պատմական շրջանակները, որովհետև դա մեծապես պայմանավորված է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերով, համաշխարհային իրադարձությունների զարգացման ընթացքով։ Մի բան անվիճելի է. 2000 թվականի վերջին ՍՍՀՄ-ը կհասնի իր հասունության ու կատարելության որակապես նոր և բարձրագույն վիճակի։ Դա կոնկրետ կարտահայտվի հասարակության բոլոր ոլորտներում։ Այդ սահմանագծերը հստակորեն որոշարկված են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում և ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում։

Սոցիալիզմի զարգացման որակապես բարձրագույն մակարդակին հասնելը և նրա առաջընթացը դեպի կոմունիզմ որպես օրինաչափություն խարսխված է երկու փուլերում էլ ընդհանուր կոմունիստական հիմունքների առկայության վրա, որոնք ապահովում են նոր հասարակության իրոք առաջընթացը մեկ աստիճանից մյուսին՝ առավել բարձրին։ Բայց դրա համար անհրաժեշտ է սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ուղիով սոցիալիզմի հասունության նոր բնագծերի հասնել հասարակության բոլոր՝ տնտեսական, սոցիալական, քաղաքական և հոգևոր ոլորտներում։

Տնտեսական մարզում հասնել աշխատանքի արտադրողականության համաշխարհային բարձր մակարդակին, որը Լենինը միշտ համարել է կոմունիզմի վերջնական հաղթանակի կարևոր պայմանը։ Այս ամենը կապված է արտադրաուժերի զարգացման գործում արմատական փոփոխությունների հետ՝ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, ամբողջ ժողովրդական տնտեսությունը ինտենսիվացման ուղի փոխադրելու, աշխատանքի նորագույն գործիքների և համապատասխան կադրերի՝ որակապես նոր արտադրությունն իր ավտոմատացմամբ, ռոբոտացմամբ, քոմփյութերացմամբ և այլ նորամուծություններով հանդերձ կառավարելու ունակ մասնագետների, պատրաստման միջև եղած հակասությունների հաղթահարման հետ։ Այստեղ հատուկ կարևորություն ունի ժողովրդի բարեկեցության որակապես նոր մակարդակի ապահովումը ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի հետևողական կիրառման պայմաններում, ինչը հնարավորություն կընձեռի ամենուր հաստատելու սոցիալական արդարության սկզբունքները։ Նախահամագումարյան բանավեճի ընթացքում և բուն համագումարում այդ հարցին մեծ ուշադրություն նվիրվեց։

Ինչպես հայտնի է, գիտական կոմունիզմը հստակորեն սահմանում է սոցիալիստական և կոմունիստական սոցիալական արդարության հասկացությունների ընդհանուր գծերն ու նրանց որակական տարբերությունը։ Սոցիալիստական սոցիալական արդարության իրականացումը կապված է որոշ անհավասարության անխուսափելի մնացորդի առկայության հետ։ Այն լիովին կհաղթահարվի կոմունիզմին անցնելիս, երբ վերջնականապես կհաղթանակի կոմունիստական սոցիալական արդարությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ Մ. Ս. Գորբաչովը շեշտեց. «Մեզ համար ամենևին էլ միևնույնը չէ, թե ինչ ուղիներով ու միջոցներով է

ձեռք բերվում նյութական և հոգևոր կյանքի բարելավումը, ինչ սոցիալական հետևանքների է այն հանգեցնում: Եթե սկսում են դրսևորվել մասնավոր սեփականատիրական, խնամառուական տրամադրություններ, հավասարարական միտումներ, նշանակում է, ինչ-որ բան ճիշտ չէ մեր աշխատանքի ուղիների ու միջոցների ընտրության գործում և շտկման կարիք ունի: Նախահամագումարյան փաստաթղթերի քննարկման ընթացքում կոմունիստներն ու անկուսակցականներն անհանգստությամբ էին խոսում աշխատանքի ու սպառման չափի վերահսկողության թուլացման, սոցիալիստական արդարության պահանջների խախտման փաստերի մասին, անաշխատ եկամուտների դեմ պայքարի ուժեղացման անհրաժեշտության մասին: Չի կարելի չտեսնել այդ հարցերի լրջությունն ու կարևորությունը» (էջ 73—74):

Կուսակցության Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ն. Ելցինի բացառիկ բովանդակալից և սուր ելույթում ասվեց, որ «զեկուցման մեջ համոզիչ հնչեց սոցիալական գործոնների մասին բաժինը: Շարունակելով թեման, կցանկանայի ավելացնել մի բան: Անշուշտ, պատգամավորները աշխատանքային կոլեկտիվներում առիթ են ունեցել բախվելու սոցիալական արդարության հարցերի: Դրանք միշտ քննարկվում են սրությամբ, որովհետև շոշափում են մարդու ամենակենսական շահերի շրջանակը: Անհարմար ես զգում, լսելով զայրույթը անարդարության՝ այսօրվա թե արդեն վաղուցվա, ցանկացած դրսևորման առթիվ: Բայց հատկապես ցավ ես զգում, երբ բացեիբաց խոսում են ղեկավարների համար հատուկ բարիքների մասին: Եթե կոմունիստ-ղեկավարը կորցնում է իր անհրաժեշտ հատկանիշները՝ արդարամտությունը, կուսակցական համեստությունը, ինքնամոռաց աշխատելը, բարիքներն օգտագործում է ոչ ըստ աշխատանքի, ապա, արտահայտվելով Լենինի խոսքերով, դա «խախտում է դեմոկրատիզմը և հանդիսանում կուսակցության բարոյալքման և կոմունիստների հեղինակությունը գցելու աղբյուր», որը թույլ տալ մենք չենք կարող: Ուստի իմ կարծիքն է՝ այնտեղ, ուր բոլոր մակարդակների ղեկավարների համար բարիքները արդարացված չեն, դրանք պետք է վերացվեն: Դա անպայմանորեն կհանգեցնի մարդկանց աշխատանքային և հասարակական ակտիվության բարձրացմանը, մեր գաղափարական հակառակորդներին առիթ չի տա զանազան սպեկուլյացիաների համար: Մեզ համար սոցիալական արդարության չափանիշ պետք է մշտապես լինեն նախ և առաջ բանվոր դասակարգի շահերը»:

Սոցիալական արդարության սկզբունքները հետևողականորեն իրականացնելու նպատակով կուսակցության բոլոր միջոցառումները պաշտպանելու մասին խոսեց իր ելույթում բանվոր դասակարգի առաջավոր ներկայացուցիչ, Դոնբասի մարզի Օրջոնիկիձեի ածխի հանույթի արդյունաբերական միավորման Կարլ Մարքսի անվան հանքի հորատող, սոցիալիստական աշխատանքի հերոս Յու. Մ. Շատալովը: «Բանվորները,— ասաց նա,— մեծ հավանությամբ են արտահայտվում բացասական երևույթներն արմատախիլ անելու նպատակով վերջերս տարվող աշխատանքի մասին: Զանազան տեսակի սպեկուլյանտները, կաշառակերները, պորտաբույծները մի քիչ սսկվել են: Սակայն դեռևս հաճախ են նրանք օգտվում մեր թողտվությունից: Եվ ահա ստացվում է, որ խոսում ենք սոցիալական արդարության սկզբունքների հաստատման մասին, իսկ կյանքում հանդուրժողաբար ենք վերաբերվում նրանց նկատմամբ, ովքեր մեր կողքին ապրում են անաշխատ եկամուտներով: Իսկ դա խարխլում է բարոյական հիմքերը, քայքայիչ ազդեցություն գործում մարդկանց և, հատկապես, երիտասարդ սերնդի վրա: Չէ որ կյանքում, գործարանում, դաշտում կոպեկը վաստակում են ոչ թեթև աշխատանքով, իսկ մեր կողքին, պարզվում է, կարելի է բարեկեցիկ ապրել և չաշխատել: Այդ չարիքի դեմ մղվող պայքարում պետք է կիրառել ամենախիստ, ամենավճռական միջոցները: Վստահորեն կարող եմ ասել, որ բանվոր մարդիկ դրանք ջերմորեն կպաշտպանեն»:

Այս հարցին հատուկ ուշադրություն է նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման առթիվ կուսակցության XXVII համագումարի ընդունած բանաձևում: Այնտեղ ասված է. «Վճռականորեն արմատախիլ անել հավասարարությունը, թույլ չտալ չվաստակած փողի, ոչ արժանի պարգևների վճարում, անզիջում պայքար մղել անաշխատ եկամուտների, «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների՝ յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիզմի հիմնական սկզբունքից կատարվող այլ շեղումների դեմ: Մոտակա ժամանակում իրականացնել լրացուցիչ միջոցառումներ՝ պորտաբույծների, սոցիալիստական սեփականության հափշտակողների, կաշառակերների դեմ»:

Սոցիալական ոլորտն ընդգրկում է նաև սոցիալիզմի կատարելագործման այլ, ոչ պակաս կարևոր պրոբլեմներ: Նրա առավել հասուն փուլում մենք պետք է հիմնականում հասնենք հասարակության անդասակարգ կառուցվածքի ստեղծմանը, որն ամենից առաջ պայմանավորված է քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների հաղթահարմամբ, արտադրական գործունեությունում ֆիզիկական ու մտավոր աշխատանքների օրգանական միացմամբ: Սոցիալական ոլորտն ընդգրկում է նաև ազգային հարաբերությունների զարգացումը, որը կդրսևորվի սոցիալիստական ազգերի հետագա ծաղկմամբ ու մերձեցմամբ, սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրության, առավել համախմբմամբ:

**Քաղաքական բնագավառում** սոցիալիզմի կատարելագործման նոր բնագծերը ամենից առաջ պայմանավորված են ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հետագա ծավալմամբ՝ պետական և հասարակական գործերի կառավարման ասպարեզում քաղաքացիների առավել լրիվ ընդգրկման, ինչպես մեր երկրի, այնպես էլ սոցիալիզմի մյուս երկրների դրական փորձը հաշվի առնելով ընտրական սիստեմի կատարելագործման միջոցով: Կբարձրացվի հասարակական կազմակերպությունների դերը, կբարելավվի ներկայացուցչական և ուղղակի դեմոկրատիայի բոլոր ձևերի արդյունավետությունը:

**Հոգևոր կյանքի բնագավառում** սոցիալիստական հասարակության որակապես նոր վիճակը պայմանավորված է հարցերի մի ողջ կոմպլեքսի լուծմամբ՝ սովետական մարդկանց գիտակցության մեջ մեր դարաշրջանի ամենաառաջավոր և միակ գիտական գաղափարախոսության՝ մարքսիզմ-լենինիզմի հետագա ամրապնդմամբ. մեր հասարակության շատ ասպարեզներում դեռևս տեղի ունեցող խախտումներից ազատ սոցիալիզմի բարոյական սկզբունքների լիակատար հաստատմամբ: Նոր, առավել բարձր մակարդակի կբարձրանա կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության ոգին. բնակչության ավելի ու ավելի լայն խավեր հաղորդակից կդառնան գիտության ու մշակույթի նվաճումներին, կարագացվի համակողմանի զարգացած անհատի ձևավորման պրոցեսը:

ՍՄԿԿ ծրագրում արված է կարևոր հետևություն. «Այս վերափոխումների արդյունքը կլինի սովետական հասարակության որակապես նոր վիճակը, որը լիովին բացահայտում է սոցիալիզմի վիթխարի առավելությունները կյանքի բոլոր ոլորտներում: Դրանով իսկ պատմական առաջընթաց քայլ կարվի կոմունիզմի բարձրագույն փուլի ճանապարհին: Կուսակցությունը մշտապես կոմունիստական հեռանկարի հետ հարաբերակցում է իր քաղաքականությունը, տնտեսական ու սոցիալական ստրատեգիան, կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի խնդիրները»:

Սոցիալիստական հասարակության կատարելագործման, նրա առաջընթաց զարգացման ժամանակ նոր որակի իրականացման պրոցեսում կստեղծվեն բոլոր անհրաժեշտ նախադրյալները ողջ մարդկության խաղաղության պահպանման ու ամրապնդման նպատակով միջազգային իրադրությունում շրջադարձի հասնելու համար:

Նման շրջադարձը պայմանավորված է աշխարհում մի ամբողջ խումբ հակասությունների գործառությամբ: Քաղաքական զեկուցման մեջ հստակորեն անցկացված է լենինյան գաղափարն այն մասին, թե «հակասությունների առաջին խումբը, որն առավել կարևոր է մարդկության ճակատագրի տեսակետից, կապված է **երկու սիստեմների պետությունների, երկու ֆորմացիաների հարաբերությունների հետ**» (էջ 16): Այս և մյուս խումբ հակասությունների բանական լուծման համար կա մեկ ուղի՝ այդ սիստեմների խաղաղ գոյակցությունը: Ուստի և ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ասված

է. «Միջուկային պատերազմի լիակատար անընդունելիության պայմաններում ոչ թե սիստեմների առճակատումը, այլ խաղաղ գոյակցությունը պետք է դառնա միջպետական հարաբերությունների օրենքը» (էջ 20)։ Զանգվածային ոչնչացման միջուկային զենքի բոլոր տեսակների լրիվ վերացման սովետական լայն մասշտաբի ծրագիրը պատմական նշանակություն ունի և արտացոլում է աշխարհի բոլոր ժողովուրդների, ողջ մարդկության արմատական շահերը, կոչված է արագացնելու շրջադարձը միջազգային հարաբերություններում։

Խաղաղության պահպանման այդ գլոբալ ծրագրի իրականացման համար հետևողական պայքարի ընթացքում կուժեղանա բախումը մարդկության բացարձակ մեծամասնության և խավարամոլների, անուղղելի ճուռակների հետըզհետե նեղացող շրջանակի միջև։ Նման բախման վկայությունն է ագրեսիվ շրջանակների պարտությունը Միացյալ Նահանգների ներկայացուցիչների պալատում, ուր գերակշիռ մեծամասնությամբ ընդունվեց բանաձև, որով կոչ է արվում ԱՄՆ-ի վարչակազմին՝ անհապաղ վերականգնել միջուկային փորձարկումները լրիվ ու համընդհանուր արգելելու նպատակով պայմանագիր կնքելու վերաբերյալ բանակցությունները։

Աշխարհում խաղաղության պահպանումը Սովետական Միությանն ու սոցիալիզմ կառուցող եղբայրական երկրներին հնարավորություն է ընձեռում հրապուրիչ օրինակի ուժով ցույց տալ, որ միայն նոր ֆորմացիայի պայմաններում հիմնական շարժիչ հակասությունը կլինի հասարակական արտադրության կայուն և անընդհատ աճի հիման վրա հասարակության բոլոր անդամների նյութական ու հոգևոր բանական պահանջմունքների հարաճուն բավարարումը։ ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում միանգամայն իրավացիորեն ընդգծվում է գիտական կոմունիզմի հիմնադրույթն այն մասին, թե նոր հասարակարգի հիմնական նպատակը հասարակության բարձրագույն տիպի կառուցողների հասարակական և անհատական պահանջմունքները բավարարելուն հասարակական արտադրությունը ենթարկելն է։ Հենց դրան է ուղղված կոմունիստական արարման ուղիով ընթացող ՍՍՀՄ-ի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիան։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՎԵՐԱԶԻՆՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Ս. ՕՀԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ անտառային և փայտամշակման
արդյունաբերության մինիստր

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին զգալիորեն մեծացել է հանրապետության տնտեսական պոտենցիալը, առաջընթաց լուրջ քայլ է կատարվել արտադրողական ուժերի զարգացման ասպարեզում։ Բարձրացել է հանրային արտադրության արդյունավետությունը, այն հետևողականորեն փոխադրվում է զարգացման ինտենսիվ ուղի, կատարելագործվում է ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածքը։ ՀԿԿ XXVIII համագումարում Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը խնդիր դրեց, որ «Մենք պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրենք գործող ձեռնարկությունների վերակառուցմանը, տեխնիկական վերազինմանը, որը տեխնիկական առաջադիմության արագացման, արտադրանքի որակի բարելավման հնարավորությունների ընդլայնման, աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրը լուծելու առավել խնայողական և արագ ուղին է»։

Կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան և հոկտեմբերյան պլենումների որոշումները՝ հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները նկատելիորեն ակտիվացրել են գիտատեխնիկական առաջադիմության արագացման, արտադրության տեխնիկական վերազինման աշխատանքը։ Ընդլայնվել է սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիայի, էներգախնայողական և նյութախնայողական տեխնոլոգիական պրոցեսների ու մեքենայական համակարգերի ներդրումը։ Դրական արդյունքներ են ձեռք բերվել արտադրության ինտենսիվ գործոնների ակտիվացման և արդյունավետության բարձրացման գործում։ Բարելավվել է արտադրական կարգապահությունը, կրճատվել են աշխատաժամանակի կորուստները, ավելի խնայողաբար են օգտագործվում նյութական ռեսուրսները։

Հանրապետության աշխատավորների հաջողությունները ըստ արժանվույն գնահատվեցին։ Հայկական ՍՍՀ-ն տասներորդ անգամ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

ՀՍՍՀ արդյունաբերության հաջողություններում իրենց ներդրումն ունեն նաև անտառային և փայտամշակման արդյունաբերության ձեռնարկություններն ու կազմակերպությունները։ Մինիստրության համակարգի աշխատավորական կոլեկտիվները ժամկետից տասն օր շուտ կատարեցին տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները։ Ապրանքային արտադրանքի աճը կազմեց 33,9 տոկոս՝ հնգամյակի համար սահմանված 30,9 տոկոսի փոխարեն։

Մինիստրության համակարգում այսօր չկա մի ձեռնարկություն, որը չկատարի իր արտադրական առաջադրանքները։ «Աշխատել առանց հետ մնացողների». այս կոչը մեզ համար դարձել է ռեալ իրողություն և աշխատանքի կանոն։

Ծյուղում լայն թափ է ստացել տեխնիկական առաջադիմությունը։ Աշխա-

տանքի այդ բնագավառում մեր կարևորագույն խնդիրը ձեռնարկությունների արտադրական ու տեխնոլոգիական մասնագիտացման հետագա խորացումն է։

Անցած հնգամյակում իրականացվեց գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման լայնածավալ ծրագիր, որն ապահովեց կահույքի արտադրության կարողությունների 26,2 մլն ռուբլու հավելաճ։ Այս նպատակին հատկացվեց կապիտալ ներդրումների 76 տոկոսը։ Հնգամյակի ընթացքում ընդլայնվեց Լենինականի կահույքի ֆաբրիկան, վերակառուցվեցին մյուս ձեռնարկությունները։ Ընդ որում հիմնական ուշադրությունը դարձվեց կիսահումքի, սոսնձման-նրբատախտակապատման և կրկնակի մշակման բաժանմունքներում ցածրարտադրողական, բարոյապես ու ֆիզիկապես հնացած սարքավորումները ժամանակակից կիսաավտոմատ գծերով փոխարինելուն։ Մեկ ձեռնարկության հաշվով միջին կենտրոնացումն այժմ կազմում է 8,8 մլն ռուբլի՝ 1981 թվականի 6,3 մլն ռուբլու դիմաց։ Կահույքի թողարկումը հինգ տարում ավելացավ 1,37 անգամ։

Ճյուղի ձեռնարկությունների տեխնոլոգիական մասնագիտացման նպատակով աշխատանքներ են կատարվում Հոկտեմբերյանի ֆաբրիկան կահույքի վահանների և քառակող դետալների արտադրության բազային ձեռնարկության վերածելու համար։ Վերակառուցումն ավարտվելուց հետո այս տարի ֆաբրիկան նշված դետալներով կապահովի կահույքի գրեթե բոլոր ձեռնարկություններին։

Բազային ձեռնարկության ստեղծմանը զուգահեռ կահույքի նախագծման կոնստրուկտորական ու տեխնոլոգիական համամիութենական ինստիտուտը և մեր մինիստրության հատուկ նախագծային, կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոն մշակում են ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և հարդարման-հավաքման ռեժիմի փոխադրման նախագծերը։ Այդ աշխատանքները ժամանակին կատարելու համար ներկայումս, ըստ ֆաբրիկաների, մշակվում և իրականացվում են անհրաժեշտ միջոցառումներ։

Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին ճյուղում ներդրվել է նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ավելի քան 250 միջոցառում։ Շահագործման են հանձնվել կիսաավտոմատ և ավտոմատ գծեր, որոնք էապես նպաստում են աշխատանքի արտադրողականության և որակի բարձրացմանը, կրճատում ձեռքի աշխատանքը։ Կիրովականի կահույքի արտադրական միավորումում ներդրվել է կահույքի վահանների ձևաչափային մշակման գիծը, յուրացվել է ժամանակակից տեխնոլոգիայով փափուկ կահույքի արտադրությունը։ Ալ. Մյասնիկյանի անվան միավորումում հայրենական արտադրության սարքավորումների տեղադրմամբ ավարտվել է տեխնոլոգիական տաշեղի պատրաստման տեղամասի վերակառուցումը։ Երևանի № 1 ֆաբրիկայում մեծ աշխատանք է կատարվել մամլող տեղամասի մեքենայացման նպատակով, իսկ Իջևանի փայտամշակման կոմբինատում ավտոմատացվել է միաշերտ նրբատախտակի ռանդումը։ Մի շարք ձեռնարկություններում ներդրվել է կահույքի եզրաշերտերը պլաստիկ զանգվածով երեսպատելու տեխնոլոգիան։ Տարեցտարի ընդլայնվում է հավաքովի կահույքի արտադրությունը։

Չնայած կատարված աշխատանքին, մենք դեռևս շատ անելիքներ ունենք արտադրանքի որակի բարձրացման ասպարեզում։ ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. ապրիլյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ արդարացի քննադատական խոսք ասվեց մեր մինիստրության հասցեին՝ վատորակ կահույք արտադրելու համար։ Որակը պատշաճ մակարդակի վրա չէ Հոկտեմբերյանի և Ղափանի ֆաբրիկաներում, իրենց մակնիշի պատիվը բարձրացնելու հարցում հետևողականություն չեն դրսևորում Երևանի № 1, «Արաբկիր», ինչպես նաև Դիլիջանի ֆաբրիկաների կահույքագործները։ Մինիստրությունը, ձեռնարկությունները լուրջ հետևությունների հանգեցին պլենումում արված քննադատական դիտողություններից, մշակեցին հատուկ կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ, որոնց իրականացումը կօգնի մոտ ապագայում շտկելու դրությունը։

Կահույքի արտադրության ծավալների հետագա աճը նախ և առաջ պայմանավորված է ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցմամբ և կա-



րողությունների ընդլայնմամբ։ Հատկապես մեծ տեղ է հատկացվում ֆաբրիկաների կարողությունների մեծացմանը, որի շնորհիվ կապահովվի արտադրանքի թողարկման 3—4 մլն ռուբլու տարեկան միջին աճ։ Այսպես, եթե 1984 թվականին արտադրվել է 78,7 մլն ռուբլու կահույք, իսկ 1985 թվականին՝ 84,7 մլն, ապա 1986 թվականին այն կհասնի 89,3 մլն ռուբլու։

Քանակական առումով կահույքի արտադրության խնդիրը հաջողությամբ է լուծվում։ Սակայն բնակչության պահանջմունքները մշտապես փոխվում են։ Դա մասնավորապես վերաբերում է արտադրանքի գեղարվեստական արտահայտչականությանը և, ինչ խոսք, որակին, իսկ կահույքի որակի բարելավումն անմիջականորեն կապված է տեսականին պարբերաբար նորացնելու հետ։ Մեր ճյուղում արտադրանքի լրիվ նորացումն իրականացվում է հնգամյա ցիկլով, այսինքն՝ տարեկան միջինը 20 տոկոսով։

Պետք է նշել, որ առանձին ֆաբրիկաների արտադրանքի տեսականին դեռևս մեծ չէ։ Դա հատկապես վերաբերում է մանկական կահույքին, և մինիստրությունն անհրաժեշտ միջոցներ է ձեռնարկում դրա արտադրությունն ու տեսականին ընդլայնելու և որակը բարելավելու համար։ Այդ նպատակով բավականին աշխատանք են կատարել մեր հատուկ նախագծային-կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոյի և Ստեփանավանի կահույքի ֆաբրիկայի աշխատողները։ Այստեղ թողարկվում են մանկական մահճակալներ, սեղաններ, աթոռներ, պահարաններ և ճաշակով ձևավորված, գեղեցիկ ու զվարճալի նկարներով այլ արտադրանք։ Հետագայում ևս մեծ ուշադրություն կնվիրվի մանկական կահույքի արտադրության ավելացմանն ու որակի բարձրացմանը։

Կահույքի որակի բարելավման գործում կարևոր դեր են խաղում օգտագործվող նյութերը։ Վերջին տարիներին մենք սկսել ենք խոհանոցի կահույքի հարդարման համար օգտագործել մեծ քանակությամբ պլաստիկատներ, լայնորեն կիրառում ենք գունավոր արծնները, փայլատ լաքերը։ Փայտե միաշերտ նրբատախտակի հետ մեկտեղ օգտագործում ենք նաև արհեստական, տեքստուրային թուղթ։ Ավանդական նյութերից բացի (վատին, պորոլոն) օգտագործվում է նաև պոլիուրետան։

Հարկ է նշել, որ փափուկ կահույքի արտաքին տեսքը մեծապես կախված է պաստառապատման նյութերի որակից, որոնք մեզ մատակարարում է հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրությունը։ Դեկորատիվ այդ կտորների տեսականին տարեցտարի ընդլայնվում է, սակայն որակը, մասնավորապես գունային լուծումները միշտ չէ, որ համապատասխանում են արդի պահանջներին։ Հարցի արմատական լուծումը հնարավորություն կընձեռի բարելավել փափուկ կահույքի ընդհանուր տեսքը և լիովին բավարարել գնորդների պահանջարկը։

Ճյուղում մեծ ուշադրություն է նվիրվում արտադրանքի որակի կառավարման համակարգի ներդրմանը։ Այդ կապակցությամբ երկու ամիսը մեկ անցկացվում են «Տեխնիկական առաջադիմության օրեր», կոլեգիայի արտագնա նիստեր, որոնց մասնակցում են նաև ձեռնարկությունների ներկայացուցիչները։ Տեղերում քննարկվում են թողարկվող արտադրանքի որակի, առաջավոր տեխնոլոգիայի ներդրման և շատ այլ հարցեր։ Կարևոր նշանակություն ունեն ամենամյա ցուցահանդես-տոնավաճառները, որոնց ժամանակ տեղի է ունենում արտադրողների, առևտրի աշխատողների և գնորդների արդյունավետ խորհուրդ։ Արտադրանքի որակի բարելավման գործում խոշոր դեր է խաղում գրեթե բոլոր ֆաբրիկաներում արտադրանքի ստանդարտների ներդրումը։

Մշտապես հարստացվում են բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների մասնագիտական գիտելիքները։ Ուսուցման տարբեր ձևերին մասնակցելուց բացի, շատ աշխատողներ պարբերաբար լինում են երկրի առաջավոր ձեռնարկություններում՝ նորագույն տեխնոլոգիային ծանոթանալու և փորձի փոխանակման նպատակով։ Մեզ համար հատկապես ուսանելի է մերձբալթյան հանրապետությունների և Մոլդավիայի կահույքագործների աշխատանքի փորձը։ Այսպես, Մոլդավիայի առաջավոր ձեռնարկությունների օրինակով մեր երաժշտական գործիքների ֆաբրիկայում կազմակերպվեց

գործիքային տնտեսություն, որը զգալի խնայողություն տվեց և երկարաձգեց գործիքների ծառայության ժամկետը: Արգասաբեր է անդրկովկասյան երեք եղբայրական հանրապետությունների կահույքագործների ավանդական մրցությունը:

Արտադրության բարձր կուլտուրայի և արդյունավետության առումով բարի համբավ է վայելում Կիրովականի կահույքի միավորումը: Այստեղ, աշխատանքի լավագույն կազմակերպման շնորհիվ, թողարկվում է բարձրորակ արտադրանք, լիովին կատարվում են առևտրական կազմակերպությունների պատվերները:

Ֆաբրիկայում ստեղծվել է անթափոն արտադրություն: Փաստորեն օգտագործվում է ամեն ինչ՝ փայտի թափոնները, տաշեղասալերի մնացորդները, շերտաձողիկներից պատրաստված ատաղձասալերը, որոնք կիրառվում են վահանների արտադրության մեջ: Պորոլոնի, սպունգատիպ այլ նյութերի, գործվածքների մանր թափոնները սոսնձվում են կամ կարվում և կրկին օգտագործվում արտադրության մեջ, ինչպես նաև փաթեթավորման նպատակով:

Այստեղ շատ բան է արվում աշխատանքի ու կենցաղի լավագույն պայմաններ ստեղծելու համար: Հետևողականորեն լուծվում է բնակարանային պրոբլեմը: Վերջին տարիներին կառուցվել են ընդարձակ ճաշարան, ակումբ, կենցաղի տուն, արդյունաբերական ապրանքների և խոհարարական արտադրանքի խանութներ: Աշխատողների երեխաները հաճույքով հանգստանում են «Հայկական Արտեկում», որը հանրապետության լավագույն պիոներական ճամբարներից է: Ֆաբրիկան ճյուղում առաջինը ստեղծեց իր ագրարային արտադրամասերը՝ կազմակերպելով խոզաբուծական և հավաբուծական տնտեսություններ:

Հաջողությունները, անշուշտ, քիչ չեն, սակայն այսօր, երբ մեր աշխատանքները գնահատում ենք ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների պահանջների ոգով, պարզորոշ տեսնում ենք, որ մենք դեռևս շատ անելիքներ ունենք բնակչության կահույքի պահանջարկը լիովին բավարարելու գործում: Առանձին ֆաբրիկաներ զանազան օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներով թերակատարում են տեսականու պլանը, ոչ միշտ է պահպանվում տեխնոլոգիական ռեժիմը, որը վատացնում է թողարկվող արտադրանքի որակը: Օրինակ, Հոկտեմբերյանի կահույքի ֆաբրիկան սիստեմատիկաբար չի կատարում գրադարակների տեսականու պլանը: Թվում է, թե հասարակ արտադրատեսակ է, բայց դրա համար պահանջվում են բացառիկ լավորակ տրամաչափված տաշեղասալեր, որոնք, սակայն, ստացվում են մեծ ընդհատումներով:

Ճյուղի ձեռնարկությունների թողարկած արտադրանքը հիմնականում սպառվում է հանրապետության ներսում: Չնայած վերջին տասնամյակում տեղի ունեցավ կահույքի շուկայի որոշ հագեցում, այնուամենայնիվ, կահույքի վաճառքը նկատելիորեն ավելանում է: Մեր արտադրանքի իրացման ասպարեզում թերություններ ունեն առևտրի մինիստրության ու Հայկոոպի առևտրական կազմակերպությունները: Հանրապետության կահույքի խանութների մեծ մասում փոքր տարածության պատճառով ցուցադրվող նմուշները գնորդներին չեն մատուցվում պատշաճ ձևով: Դա վերաբերում է նաև մանկական կահույքին, որի վաճառքի հատուկ սրահի կազմակերպումը օրակարգի հարց է դարձել: Կահույքի վաճառքը որոշ չափով բարելավվել է Երևանում՝ «Ամեն ինչ տան համար» խանութի և Լենինականում կահույքի խանութի բացումով:

Մինիստրության ձեռնարկությունները, տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով պլանները կատարելով հանդերձ, չեն ապահովում մատակարարումների պայմանագրային պարտավորությունների կատարումը: Այս հարցում մեզ հետ են պահում որոշ ձեռնարկություններ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան և հոկտեմբերյան պլենումներում սրությամբ դրվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերը: Կենսական կարևորության այդ խնդիրների լուծումը կնպաստի մեր երկրի տնտեսական պոտենցիալի հետագա աճին, ժողովրդի բարեկեցության բարձրացմանը: Այս գործում նույնպես մեզ մոտ զգալի առաջընթաց կա: Աշխատանքի արտադրողականությունը տարե-



կան միջին հաշվով բարձրանում է 5—6 տոկոսով: Սիստեմատիկաբար իջնում է արտադրանքի ինքնարժեքը:

Վերջին տարիներին մեր կահույքագործներն զգալի աշխատանք կատարեցին հանրապետության այնպիսի եզակի օբյեկտների համար, ինչպիսիք են «Զվարթնոց» օդանավակայանը, Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնը, Ա. Խաչատրյանի անվան մեծ համերգասրահը, Ստ. Շահումյանի անվան պալատը, մարզահամերգային համալիրը, մետրոպոլիտենը:

Նոր, առավել լարված բնագծեր են սահմանվում արդյունաբերության աշխատավորների համար նոր հնգամյակում: Այդ խնդիրները հստակորեն շարադրված են երկրի ժողովրդական տնտեսության զարգացման Հիմնական ուղղություններում:

1986—1990 թվականներին նախատեսվում է մեր հանրապետությունում կահույքի արտադրության կարողություններն ավելացնել 24,5 մլն ռուբլով: Մեկ ձեռնարկության միջին կենտրոնացումը կհասցվի մինչև 11,6 մլն ռուբլու: Բազային և հարդարման-հավաքման ձեռնարկությունների ստեղծման հաշվին նախատեսվում է երեք անգամ կրճատել նախնական մեքենայական մշակման և սոսնձման-երեսպատման արտադրական տեղամասերի քանակը: Կահույքի և փայտամշակման արտադրությունների հետագա կենտրոնացման ծրագրով Իջևանի փայտամշակման կոմբինատը միացվեց Կիրովականի կահույքի արտադրական միավորմանը: Դա հնարավորություն է տալիս ապահովել տեխնիկական վերազինման հարցերի լուծման առավել արդյունավետ ղեկավարում՝ ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառմամբ, կոոպերացիայի իրականացում և փայտի թափոնների ռացիոնալ օգտագործում:

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու, հարդարման-հավաքման արտադրամասերի կարողություններն առավել լրիվ օգտագործելու նպատակով 1988—1992 թվականներին կիրականացվի Հոկտեմբերյանի կահույքի դետալների կոմբինատի տեխնիկական վերակառուցումը: Այստեղ երեսպատման սարքավորումները կփոխարինվեն առավել արդյունավետ մեքենաներով: Նախանշված են ներարտադրամասային և միջարտադրամասային փոխադրական գործողությունների հետագա մեքենայացման աշխատանքներ: Խնդիրն այսպես է դրված՝ այսուհետև արտադրության մեջ ներդնել հայրենական և արտասահմանյան միայն լավագույն արտադրանմուշները:

Նախատեսվում է ֆիրմային խանութների աշխատանքի վերակառուցում, ինչպես նաև առևտրական կազմակերպությունների ու գնորդների հետ առավել սերտ կապերի հաստատում՝ թողարկվող արտադրանքի նկատմամբ պահանջարկի, գեղագիտական ձևավորման և մյուս ցուցանիշների վերաբերյալ դիտողությունների ու առաջարկությունների ուսումնասիրման նպատակով: Այդ ամենին կնպաստի նաև մինիստրության հատուկ նախագծային-կոնստրուկտորական տեխնոլոգիական բյուրոյի բազայի վրա գիտաարտադրական միավորման կազմակերպումը:

Առաջիկա հնգամյակում նախատեսված է մեծ ծավալներով նրբացված սալերի, թերթանյութերի և երեսպատման լաքերի ու սոսինձների, պոլիմերների ու բնական ռանդած միաշերտ նրբատախտակի փոխարինիչների կիրառում: Թվարկված միջոցառումների շնորհիվ կավելացվի բարելավված որակով և բարձր կատեգորիայի արտադրանքի թողարկումը:

Պլանավորված ձևով իրականացվում են նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործման, անթափոն տեխնոլոգիայի ներդրման աշխատանքները: Մեծանում են ինչպես սեփական, այնպես էլ հանրապետության մյուս կազմակերպությունների փայտի թափոնների օգտագործման ծավալները:

Ճյուղի տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների պլանով նախատեսվում է կահույքի թողարկման աճ՝ 1,4 անգամ, հաշվի է առնվում հանրապետության բնակչության պահանջմունքի առավել լրիվ բավարարումը: Դա, անշուշտ, կապված է նյութական ռեսուրսների օգտագործման ծավալների ավելացման և ցածրարտադրողական սարքավորումների փո-

*խարինման հետ։ Այս առումով ծագում են մի շարք պրոբլեմներ։ Արդեն այժմ հանրապետության կահույքի արդյունաբերությունը հումքի առանձին տեսակների, հատկապես ռանդած միաշերտ նրբատախտակի և տաշեղասալերի պակասություն է զգում։ Մեզ մոտ ռանդած միաշերտ նրբատախտակը պատրաստվում է երկու հաստոցների վրա, որոնք բարոյապես և ֆիզիկապես հնացած են։ Առկա կարողությունները չեն կարող տասներկուերորդ հնգամյակում բավարարել երեսպատման նյութերի այդ տեսակի նկատմամբ հանրապետության կահույքագործների պահանջները։ Ուստի հրատապ անհրաժեշտություն է հանրապետության անտառային ու փայտամշակման արդյունաբերության ձեռնարկություններին նրբատախտակը ռանդող նոր հաստոցների հատկացման հարցի լուծումը։*

*Հնգամյակում զգալիորեն կմեծանա նոր տաշեղասալերի նկատմամբ ձեռնարկությունների պահանջարկը։ Մինչդեռ ներկայումս օգտագործվող 50 հազար խմ-ից 42—44 հազարը բերվում է երկրի այլ՝ Հայաստանից զգալիորեն հեռու գտնվող շրջաններից, 6—8 հազարը արտադրվում է մեր մինիստրության՝ Մասիսի տաշեղասալերի գործարանում։*

*Այստեղ գործող սարքավորումները սակավազոր են, տեխնիկապես ոչ կատարյալ, դրանց պատրաստած սալերն իրենց ֆիզիկամեխանիկական ցուցանիշներով չեն համապատասխանում կահույքի արտադրության պահանջներին։*

*Օրակարգի հարց է 60 հազար խմ կարողությամբ տաշեղասալերի թողարկման նոր գծի տեղակայումը Մասիսի գործարանում։ Դա հնարավորություն կտա կիրառելու երկրորդային փայտահումքը և փայտամշակման թափոնները տնտեսական շրջանառության մեջ ներդնելու վերաբերյալ «Յուգմեբել», «Ցենտրոմեբել» համամիութենական արդյունաբերական միավորումների և «Կիևդրև» արտադրական միավորման ձեռնարկությունների կոլեկտիվների աշխատանքի փորձը, որը հավանության է արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի կողմից։ Մեր կարևոր խնդիրն է կազմակերպել սեփական փայտաթափոնների և հանրապետական մյուս ձեռնարկությունների փայտաթափոնների վերամշակումը, որի շնորհիվ զգալիորեն կկրճատվեն տրանսպորտային ծախսերը և մեծ քանակությամբ վագոններ կազատվեն ժողովրդատնտեսական այլ կարիքների համար, պայմաններ կստեղծվեն արտադրելու որակյալ սալեր՝ կահույքի արդյունաբերության պահանջները բավարարելու նպատակով։*

*Անտառային և փայտամշակման արդյունաբերության ձեռնարկությունների աշխատանքն անմիջականորեն առնչվում է աշխատավորների բարեկեցության բարձրացման խնդիրների իրականացմանը։ Ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը, «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու բարձրագույն իմաստը կուսակցությունը համարում է այն, որ անշեղորեն, հետզհետե բարձրացնի ժողովրդի բարեկեցությունը, բարելավի սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը, բարենպաստ պայմաններ ստեղծի անհատի ներդաշնակ զարգացման համար»։*

*Մեր համակարգի աշխատավորական կոլեկտիվները, զինված ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումներով, իրենց բոլոր ուժերը նպատակամղում են կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական ծրագրի անթերի իրականացմանը։*

# ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆ

**Ա. ՋԱՏԻԿՅԱՆ**

ԺՈՂՈՎՐԴԻ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ բարձրացումը կուսակցության ծրագրային պահանջն է, նրա սոցիալ-տնտեսական քաղաքականության առանցքը, իսկ բարեկեցության բարձրացման խնդիրների լուծումը սերտորեն կապված է սպասարկումների ոլորտի, մասնավորապես բնակչության կենցաղային սպասարկման լայն զարգացման հետ։ Ինչպես հայտնի է, կուսակցության Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունել են ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների ցանցի զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագիր, որը երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների բաղկացուցիչ մասն է։ Ծրագրի իրականացումը արմատական բեկում կառաջացնի աշխատավորների հարանուն պահանջմունքների բավարարման գործում։

ՍՄԿԿ XXVII համագումարը շեշտեց սպասարկման ժամանակակից ոլորտի ստեղծման հույժ կարևորությունը։ Ինչպես նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը, «Պետք է վճռական միջոցներ ձեռնարկվեն սպասարկումների պահանջարկի և դրանց առաջարկի միջև եղած խիստ անհամամասնությունը վերացնելու համար։ Նախ և առաջ այն սպասարկումների, որոնք կապված են տնային աշխատանքի հեշտացման, բնակարանների բարեկարգման ու նորոգման, տուրիզմի, ավտոսպասարկման հետ, որոնց նկատմամբ պահանջմունքը հատկապես արագ է աճում»։

Կենցաղային սպասարկումն ունի սոցիալական կարևոր ֆունկցիաներ և էապես նպաստում է սոցիալ-տնտեսական այնպիսի պրոբլեմների լուծմանը, ինչպիսիք են քաղաքի և գյուղի միջև առկա էական տարբերությունների հաղթահարումը, աշխատավորների ազատ ժամանակի արդյունավետ օգտագործումը, կանանց կենցաղային հոգսերի թեթևացումը և այլն։

Քաղաքի և գյուղի կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցումն արագացնելու գործում էական է գյուղական բնակչության կենցաղային սպասարկման զարգացման դերը։ Եվ մեզանում հիրավի մեծ ջանքեր են գործադրվում այս ասպարեզում։ Այսպես, հանրապետության բնակչության կենցաղսպասարկման ձեռնարկությունների իրացրած ծառայությունների ծավալը վերջին երկու տասնամյակում ավելացել է 8,29, իսկ գյուղում՝ 21,15 անգամ։

Սպասարկումների որակի բարելավման և սպասարկման կուլտուրայի բարձրացման հիմքը ճյուղի հետագա ինդուստրացումն է, բազային ձեռնարկությունների ստեղծումը, ընդունման կետերի ցանցի ընդլայնումը, գյուղական բնակչության սպասարկումների մասնագիտացումը և ներճյուղային կոոպերացման ու ծառայությունների նոր տեսակների ներդրումը։

Գյուղական բնակչությանը կենցաղային ծառայություններով ապահովելը բարենպաստ պայմաններ է ստեղծում տնային աշխատանքի թեթևացման, հանրային արտադրության զարգացման ու ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման համար։ Այստեղ կենցաղսպասարկումն ունեցել և այժմ էլ ունի իր առանձնահատկությունները։ Գյուղական բնակչության զգալի մասն ապրում է փոքր բնակավայրերում, որոնց մի մասում տնտեսապես նպատակահարմար չէ ստեղծել սպասարկման մշտական ձեռնարկություններ։ Այսպես, եթե քաղաքային բնակչությունը հիմնականում կենտրոնացված է հանրապետական ենթակայության 22, ինչպես նաև շրջանային 5 քա-

ղաքներում և 31 քաղաքատիպ ավաններում, ապա գյուղական բնակչությունն ապրում է 928 գյուղերում և ավաններում:

Վերջին տասնամյակներում գյուղական բնակավայրերի թիվը զգալիորեն կրճատվել է: Դրանց մի մասը վերակազմավորվել է քաղաքային բնակավայրերի կամ մտցվել քաղաքների սահմանագծի մեջ: Սակայն, որպես այդ պրոցեսի հետևանք, մենք ականատես եղանք մեծ թվով այնպիսի գյուղերի վերացման, որոնք գտնվում էին դժվարամատչելի, բնակության համար սակավ բարենպաստ լեռնային շրջաններում: Դեմոգրաֆիական հայեցակետով գուցե կարելի էր դա դիտել իբրև օբյեկտիվ օրինաչափություն, բայց չպետք է մոռանալ, որ այդ պրոցեսն ունեցավ նաև որոշակի բացասական հետևանքներ՝ կապված նախկինում բնակելի շրջաններում բնակչության նվազման, մարդկային ռեսուրսների աղքատացման, հետևաբար և՝ գյուղատնտեսական արտադրության պոտենցիալի կրճատման հետ: Այժմ իրավացիորեն խնդիր է դրվում վերականգնել անցյալում անհեռանկարային համարված գյուղական այդ բնակավայրերի մի մասը, և կենցաղային ծառայությունն իր անելիքները պլանավորելիս պետք է հաշվի նստի սույն իրողության հետ: Այս երևույթը բազմաթիվ այլ գործոնների թվում անմիջականորեն առնչվում է լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման, մասնավորապես բնակչության կենցաղային սպասարկման կազմակերպման պրոբլեմների հետ, որոնք արդի ժամանակաշրջանում ավելի ու ավելի են մղվում առաջին պլան:

Հանրապետությունում մշակվել և հետևողականորեն իրականացվում են լեռնային շրջանների զարգացման սոցիալ-տնտեսական կոմպլեքս միջոցառումներ: Բնական է, որ դրանց շարքում կարևոր տեղ է հատկացվում այդ շրջանների բնակչության կենցաղային պայմանների բարելավմանը:

Անցած հնգամյակի տարիներին կենցաղծառայությունն արագ տեմպերով է զարգացել հատկապես Սյունիքի, Սևանի, Շիրակի և Լոռու տնտեսական շրջաններում: Տեմպերը համեմատաբար դանդաղ են եղել Արարատի և Աղստևի ռեգիոններում: Սակայն, չնայած դրան, իր տեսակարար կշռով Արարատի տնտեսական շրջանը ծառայությունների իրացման ծավալում առաջատար դիրք ունի: Դա նախ և առաջ պայմանավորված է այդ տարածքում մեկ միլիոնից ավելի բնակիչ ունեցող Երևանի առկայությամբ, որտեղ բնակչության մեկ շնչի հաշվով սպասարկումների իրացման մակարդակն ամենաբարձրն է: 1984 թվականին այն կազմել է 46,8 ռուբլի, որը 52,9 տոկոսով գերազանցում է հանրապետության միջին ցուցանիշը:

Արարատյան տնտեսական ռեգիոնում սպասարկումների մակարդակը համեմատաբար բարձր է Էջմիածնի, Մասիսի, Հոկտեմբերյանի, իսկ ամենացածրը՝ Արարատի վարչական շրջանում: Վերլուծելով կենցաղային սպասարկման ձեռնարկությունների տեղաբաշխումն ու ծառայությունների ծավալը ըստ տնտեսական շրջանների, պարզվում է, որ Աղստևի, Շիրակի և Սյունիքի ռեգիոններում մեկ բնակչի հաշվով իրացվում է 23—25 ռուբլու ծառայություն, այն դեպքում, երբ Սևանի ավազանում այդ ցուցանիշը 20 ռուբլուց էլ պակաս է: Բնակչության մեկ շնչի հաշվով ծառայությունների իրացման զգալի տարբերություններ են դիտվում նաև հանրապետության առանձին վարչական շրջաններում:

Կենցաղային ծառայությունների նկատմամբ բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարման ուղին այդ բնագավառի կառուցվածքի համակողմանի կատարելագործումն է, ցանցի ճիշտ տեղաբաշխումը: Հեռանկարում, հատկապես գյուղական վայրերում, տնտեսապես նպատակահարմար է ստեղծել բնակչությանը զանազան կենցաղային ծառայություններ մատուցող կոմպլեքսային կենտրոններ:

Շրջկենտրոններում և խոշոր բնակավայրերում արդեն գործում են կոմպլեքսային ընդունման կետերով կենցաղի տներ, որոնք շատ բանով համապատասխանում են ժամանակակից պահանջներին: Այն վայրերում, որտեղ պայմաններ չկան և տնտեսապես նպատակահարմար չէ այդպիսի օբյեկտների ստեղծումը, բնակչությանը սպասարկում են կոմպլեքսային շարժական արհեստանոցները: Դրանք ընդունում են նաև այնպիսի պատվերներ, որոնք հնարավոր չէ կատարել տեղում: Ներկայումս բազմաթիվ փոքր բնակավայրեր սպասարկում են տեղերը մեկնող ընդունման կետերը և ավտոարհեստանոցները: Գյուղական բնակավայրերում այժմ գործում են կենցաղծառայության շուրջ 270 արհեստանոցներ ու տաղավարներ: Այսպիսով, կենցաղային մանր ծառայություններ ունեցող տնտեսությունների մոտ 90 տոկոսը սպա-



սարկվում է տեղում կամ ընդունման կետերի միջոցով: Աշխատանքի կազմակերպման նման ձևի պայմաններում կենցաղսպասարկման ծառայությունների ոլորտում ընդգրկվում է նաև հեռավոր վայրերի բնակչությունը:

Գյուղական բնակչության կենցաղային սպասարկման հարաճուն տեմպերի ապահովումը քաղաքի և գյուղի կենսապայմանների էական տարբերությունների վերացման պրոցեսի բաղկացուցիչ մասն է:

Կենցաղային ծառայությունն ունի նաև մեկ այլ, ոչ պակաս կարևոր ֆունկցիա. դա տնային տնտեսության մեջ կանանց հոգսերի թեթևացումն է, որպեսզի նրանք կարողանան ավելի ակտիվորեն մասնակցել հանրային արտադրությանը, հասարակական կյանքին, ավելի շատ ժամանակ ունենան ինքնակատարելագործման համար:

Տնային տնտեսության մեջ հոգնեցուցիչ աշխատանքից կնոջն ազատելու հրատապությունը նշել է Վ. Ի. Լենինը. «Կինը շարունակում է մնալ **տնային ստրկուհի,** չնայած ազատագրական բոլոր օրենքներին, որովհետև նրան ճզմում, խեղդում, բթացնում, ստորացնում է **մանր տնային** տնտեսությունը, նրան գամելով խոհանոցին և մանկասենյակին, նրա ջանքերը հափշտակելով վայրենության աստիճանի հասնող անարտադրողական, մանր, ջղայնացնող, բթացնող, ճնշող աշխատանքով: **Կնոջ** իսկական **ազատագրումը,** իսկական կոմունիզմը կսկսվի միայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ կսկսվի մասսայական պայքար (պետական իշխանությանը տիրապետող պրոլետարիատի ղեկավարությամբ) տնային այդ մանր տնտեսության դեմ, կամ, ավելի ճիշտ՝ նրա **մասսայական վերակառուցումը** որպես խոշոր սոցիալիստական տնտեսություն» (**ԵԼԺ**, հ. 39, էջ 28—29):

Մեր երկրում վիթխարի աշխատանք է կատարվում արտադրության մեջ և հասարակական կյանքին կանանց ակտիվորեն ներգրավելու նպատակով: 1984 թ. երկրում բանվոր և ծառայող կանանց տարեկան միջին թվաքանակը, 1970 թվականի համեմատությամբ, ավելացել է 30 տոկոսով, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 76 տոկոսով: Ամբողջությամբ վերցրած՝ Միությունում բանվոր-ծառայողների մեջ նրանց բաժինը կազմում է 51, իսկ ՀՍՍՀ-ում՝ 46 տոկոս (Народное хозяйство СССР в 1984 г., стр. 414—415):

Այդուհանդերձ, կանայք տակավին ծանրաբեռնված են տնային տնտեսությամբ և ընտանեկան պարտականություններով: Քանի դեռ կենցաղային ծառայությունների ոլորտը բավականաչափ զարգացած չէ, կնոջից պահանջվում է լրացուցիչ մեծ ծավալի աշխատանք: Տնտեսագետները հետաքրքիր հաշվարկ են կատարել: Եթե տնային աշխատանքը վարձատրվեր, ապա երկրի մասշտաբով դա կնշանակեր լրացուցիչ վարձատրել 67 **մլն** մարդու: Կենցաղային սպասարկման ոլորտի հետ մեկտեղ կանանց աշխատանքի հասարակական արդյունավետության վրա զգալի ազդեցություն են գործում նաև աշխատանքի ոչ նպատակահարմար կառուցվածքը, որոշ արտադրություններում կանանց որակավորման ավելի ցածր մակարդակը, աշխատանքի ճկուն գրաֆիկների, մասնավորապես ոչ լրիվ աշխատօրվա ռեժիմի անբավարար կիրառումը: Կնոջ կենցաղային հոգսերից թեթևացման, նրան հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելու գործում մեծ է մանկական հիմնարկությունների դերը: Սոցիալիզմի պայմաններում կանայք տղամարդկանց հետ միասին օգտվում են հավասար իրավունքներից, սակայն լիակատար իրավահավասարություն չի կարող լինել մանր տնային տնտեսության գոյության պայմաններում: Տնային տնտեսության մեջ աշխատանքի ծավալի կրճատմանը մեծապես նպաստում է երկարատև օգտագործման ժամանակակից իրերի (կենցաղային էլեկտրական մեքենաներ, սարքեր և այլն) կիրառումը: Ներկայումս միջին հաշվով յուրաքանչյուր ընտանիք օգտագործում է մոտ 10 կենցաղային մեքենա և սարք, որոնց կեսը էլեկտրական է: Բնակչությանը լվացքի մեքենաների, էլեկտրափոշեծծիչների, սառնարանների և կենցաղային օգտագործման մյուս մեքենաների վաճառքն զգալիորեն ավելացել է:

Եվ, այնուամենայնիվ, տնային աշխատանքի ծավալը դեռևս շատ մեծ է: Դա պայմանավորված է մի շարք հանգամանքներով, առաջին հերթին՝ նրանով, որ կենցաղսպասարկման հասարակական ոլորտը ամենևին էլ լրիվ չի բավարարում բնակչության պահանջմունքները, չեն ներդրվում ծառայությունների նոր, արդյունավետ ձևեր: ՀԿԿ XXVIII համագումարում իրավացիորեն նշվեց, որ բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունները «...դանդաղ են զարգացնում աշխատանքի վայրում, պատվիրատուի տանը մատուցվող ծառայությունները, ինչպես նաև

«այսօրվանը՝ այսօր» պատվերների շտապ կատարումը: Ետ են մնում սպասարկումների այնպիսի տեսակներ, ինչպիսիք են հագուստի անհատական պատվերները, կենցաղային տեխնիկայի, կահույքի նորոգումը, լվացքատների, լուսանկարչատների և այլ ծառայություններ»: Կենցաղային սպասարկման ոլորտի ընդլայնումը և գործունեության կատարելագործումը, ծառայությունների առավել առաջադիմական ձևերի կիրառումը մեծապես կնպաստեն ոչ միայն կանանց, այլև տղամարդկանց կենցաղային հոգսերի թեթևացմանը:

Արդի պայմաններում կարևորվում է նաև ծառայությունների ոլորտի մեկ այլ սոցիալական ֆունկցիան՝ մարդկանց աշխատանքային ու ոչ աշխատանքային ժամանակի ռացիոնալ հարաբերակցության հաստատումը և ազատ ժամանակի ավելացման համեմատ դրա արդյունավետ օգտագործման ապահովումը:

Հաշվարկների համաձայն, ոչ աշխատանքային ժամանակը մեկ օրվա ընդհանուր հաշվեկշռում կազմում է 66—70 տոկոս: Ազատ ժամանակը շաբաթվա ընթացքում, միջին հաշվով, տղամարդկանց մոտ կազմում է ոչ աշխատանքային ժամանակի 20—26,3, կանանց մոտ՝ 10,7—17,8 տոկոսը:

Աշխատաժամանակի կրճատումն առաջ է բերում ոչ աշխատանքային, հետևաբար և ազատ ժամանակի ավելացում: Սակայն համամասնորեն ավելացող ոչ աշխատանքային ժամանակը կարող է երբեմն հանգեցնել ազատ ժամանակի աննշան աճի կամ էլ չառաջացնել դրա աճ: Վերջինիս մեծությունն ամենից շատ կախված է ոչ աշխատանքային ժամանակի օգտագործումից:

Սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացումը մշտապես ուղեկցվել է ազատ ժամանակի ավելացմամբ, կրճատվել է այդ հարցում տղամարդկանց և կանանց միջև եղած տարբերությունը: Հնգօրյա աշխատանքային շաբաթը՝ երկու հանգստյան օրով, լրացուցիչ վճարովի ամենամյա արձակուրդների ավելացումը, մի շարք արտադրությունների ու մասնագիտությունների համար կրճատ աշխատանքային օրվա կիրառումը նպաստում են ազատ ժամանակի աճին: Ըստ երկրի մի շարք ռեգիոններում անցկացված հետազոտությունների, տղամարդկանց ազատ ժամանակը օրվա ընթացքում կազմում է 5,2 ժամ, իսկ կանանցը՝ 4,2 ժամ: Ներկայումս աշխատող կինը շաբաթվա ընթացքում տնային աշխատանքի վրա ծախսում է 30—35 ժամ, իսկ տղամարդը՝ 13—15 ժամ (А. Л. Максимов. Рабочее и свободное время в условиях развитого социализма. Изд. «Наука», М., 1981, стр. 64):

Կենցաղում տղամարդկանց և կանանց միջև ֆունկցիաների խիստ սահմանազատումը խորացրել է նրանց կողմից ազատ ժամանակի օգտագործման տարբերությունները, որոնց հաղթահարման ուղին սպասարկման ոլորտի աշխատանքի կատարելագործումն է, ընտանիքում պարտականությունների առավել հավասարաչափ բաշխումը:

Ըստ տնտեսագետների հաշվարկների, տնային պայմաններում ինքնասպասարկման վրա ծախսվում է այնքան ժամանակ, որը գերազանցում է արդյունաբերության մեջ, շինարարությունում և տրանսպորտում աշխատողների աշխատաժամանակը՝ միասին վերցրած:

Ընդհանուր առմամբ աշխատանքի արտադրողականությունը կենցաղային սպասարկման ձեռնարկություններում 3—4 անգամ ավելի բարձր է, քան տնային պայմաններում: Կենցաղսպասարկման զարգացման շնորհիվ վերջին տասնհինգ-քսան տարում տնային աշխատանքի միջին տարեկան ժամանակը կրճատվել է 8,5—9 **մլրդ** մարդ-ժամով կամ մեկ աշխատողի հաշվով՝ 80 ժամով: Այնինչ սպասարկման ծառայությունների շատ տեսակներ, որոնք էական ազդեցություն են գործում կենցաղում աշխատանքի ծախսումների կրճատման վրա, տակավին անբավարար են զարգացած: Ներկայումս հատկապես ցածր է լվացքատների ծառայություններից գյուղական բնակչության օգտվելու աստիճանը: Չնայած վերջին տարիներին լվացքատների ցանցը զգալիորեն ընդլայնվել է, սակայն այսօր էլ ընտանիքների 70 տոկոսը սպիտակեղենը լվանում է տանը: Բնակչությունը պատշաճ մակարդակով չի օգտվում նաև քիմիական մաքրման ձեռնարկություններից և կենցաղային ծառայությունների շատ այլ տեսակներից:

Լվացքատների, քիմմաքրման և հագուստի ներկման ծառայություններն առայժմ վճռական դեր չեն խաղում մարդկանց ազատ ժամանակն ավելացնելու գործում: Հագուստ, կոշիկ կարելու և դրանք, ինչպես նաև կենցաղային տեխնիկան նորոգող ձեռնարկությունների և ընդունման կետերի պակասի պատճառով բնակչությունը շատ ժամանակ է ծախսում: Այդ գործի վատ կազմակերպումը մարդկանց հաճախ ստիպում է դիմել մասնավոր ծառայությունների օգնությանը: Տնտեսագետների և մասնագետների հաշվարկների համաձայն, կենցաղծառայությունների մասնավոր «սեկտորն» ընդգրկում է առնվազն 17—20 մլն մարդ, որոնք տարեկան վաստակում են 5—6 մլրդ ռուբլի: Դա մոտավորապես հավասար է կենցաղսպասարկման ամբողջ համակարգի պետական բյուջեին: Մասնավոր ծառայություններն իրականացնում են կոշիկի, բնակարանների բոլոր նորոգումների մոտ կեսը, ավտոմեքենաների՝ 40 տոկոսը, կենցաղային բարդ տեխնիկայի՝ մեկ երրորդը: Գյուղում կոշիկի, հագուստի կարի ու նորոգման, բնակարանների, կահույքի և կուլտապրանքների նորոգման աշխատանքներում մասնավորի բաժինը հասնում է 80 տոկոսի: Վերջինիս կողմից տրամադրվող ծառայությունների աշխուժացումը բացատրվում է այն բանով, որ նա հմտորեն է օգտագործում շուկայական կոնյունկտուրան, ինչպես նաև ծառայությունների նկատմամբ պահանջարկի անհամաչափությունն ու սեզոնայնությունը: Ոչ պակաս նշանակություն ունի մասնավորի և կենցաղսպասարկման ձեռնարկության կողմից առաջարկվող տարբեր ծառայությունների գների և վարձատրության անհամարժեքությունը: Այստեղ խաչաձևվում են հասարակական և սոցիալական մի շարք պրոբլեմներ: Անշուշտ, խոսքը վերաբերում է կենցաղսպասարկման բնագավառում բարձրարտադրողական աշխատանքի, նախաձեռնության ու ձեռներեցության խթանմանը: Մյուս պրոբլեմը անհատական-մասնավոր աշխատանքային գործունեության կարգավորման խնդիրն է: Եվ պատահական չէ, որ հասունացած այս հարցերն արծարծվեցին ՍՄԿԿ XXVII համագումարում, ուր ընկեր Գորբաչովը նշեց. «Անաշխատ եկամուտների առաջն առնելով, չի կարելի թույլ տալ, որ ստվեր ընկնի նրանց վրա, ովքեր ազնիվ աշխատանքով են լրացուցիչ վաստակ ստանում: Ավելին, պետությունը կնպաստի բնակչության պահանջարկի բավարարման և սպասարկման մատուցման տարբեր ձևերի զարգացմանը»: Խնդիրը աշխատանքի նման տեսակները սոցիալիստական տնտեսավարման սկզբունքների հետ լիովին համատեղելն է՝ հենվելով կա՛մ կոոպերացիայի, կա՛մ սոցիալիստական ձեռնարկությունների հետ կնքված պայմանագրերի վրա:

Ակնհայտ է կենցաղային սպասարկման կարևորությունը տնտեսական և սոցիալական խնդիրների լուծման գործում: Կենցաղային ծառայությունների ծավալն ու բազմազանությունն էապես նպաստում են աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը, քաղաքի և գյուղի միջև առկա տարբերությունների նվազեցմանը: Լավ կազմակերպված կենցաղային սպասարկումը նպաստում է տնային տնտեսության մեջ զբաղված աշխատուժի զգալի մասի ներգրավմանը հասարակական արտադրության մեջ, ավելացնում անհատի զարգացման, հանգստի, երեխաների դաստիարակության համար անհրաժեշտ ազատ ժամանակը:

Կենցաղսպասարկումը բարելավելու նպատակով ընդլայնվում են ճյուղի ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, սոցիալական պատվերների կատարման հնարավորությունը:

Ծահագրգռվածության և պատասխանատվության բարձրացման համար նախատեսված միջոցների իրականացումը կենցաղծառայությունների ձեռնարկությունների կոլեկտիվներին նպատակամղում է բարելավելու աշխատանքի որակը, ճշտորեն պահպանելու այն պատվերների կատարման ժամկետները, ընդլայնելու այն ծառայությունների ծավալը, որոնք բնակչության շրջանում մեծ պահանջարկ ունեն, հասնելու, հատկապես գյուղում, կենցաղային ծառայության արագ զարգացմանը:

Հանրապետության կենցաղի ծառայության ոլորտում ամենուրեք համալիր սպասարկման համակարգի կազմակերպումը, սպասարկման կուլտուրայի բարձրացումը, աշխատանքի առաջադիմական ձևերի ներդրումը, տնտեսավարման նոր մեթոդների կիրառումը էապես ուժեղացնում են ծառայությունների սոցիալական ֆունկցիան, բարձրացնում դրանց դերը երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու գործում:

Խոսում են համագումարի պատգամավորները

# ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՇԱԾ ՈՒՂԻՈՎ

**Օ. ԳՅՈՒԼՄԻՍԱՐՅԱՆ**
**Հրազդանի ցեմենտի գործարանի կուսկոմիտեի քարտուղար, ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավոր**

Ինձ ՀԱՄԱՐ ՄԵԾ ՊԱՏԻՎ ԷՐ կուսակցության XXVII համագումարի պատգամավոր ընտրվելը և, բնականաբար, համակվել էի հպարտության ու պատասխանատվության առանձնահատուկ զգացումով: Անմիջապես ասեմ, որ համագումարն ինձ վրա անջնջելի տպավորություն թողեց նախ և առաջ իր գործարարությամբ, սկզբունքայնությամբ, նորարարությամբ, մեր առաջընթացն արգելակող երևույթները արմատախիլ անելու վճռականությամբ: Հենց դրանք էլ առողջ քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտի ստեղծման պայմաններ դարձան:

Մենք, պատգամավորներս, միահամուռ պաշտպանեցինք երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, մեր առջև ծառացած խնդիրների լուծմանը նոր մոտեցում և սովետական մարդկանց նկատմամբ համակողմանի հոգատարություն ցուցաբերելու, աշխարհի խաղաղությունը պահպանելու կուսակցության Կենտկոմի ապրիլյան պլենումի մշակած կուրսը: ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընկ. Մ. Ս. Գորբաչովը հանգամանորեն վերլուծեց մեր երկրի զարգացման կենսական պրոբլեմները, աշխատանքում տեղ գտած թերությունները, ամենուրեք կարգուկանոն և ամուր կարգապահություն հաստատելու՝ ժողովրդի հավանությանն արժանացած հրատապ ու հեռանկարային խնդիրները: Դրանց անվերապահ լուծումը համագումարի կարևորագույն պահանջներից է:

Այժմ, երբ վերընթերցում ես համագումարի ընդունած ծրագրային փաստաթղթերը, որոնց ընդունման մասնակիցն ես եղել, կրկին համոզվում ես դրանց հույժ կարևորության և պատմական նշանակության մեջ:

Համագումարում անկեղծ ու սրտաբաց խոսակցություն ծավալվեց աշխատանքի ոճի կատարելագործման, նոր մտածողության արմատավորման, գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա արտադրության ինտենսիվացման արագացման, գործունեության բոլոր ոլորտներում կարգուկանոնի հաստատման ու կարգապահության ամրապնդման, կոմունիստների դերի բարձրացման հարցերի շուրջ: Ես առանձնացնում եմ հարցերի այդ խումբը, որովհետև դրանք սերտորեն առնչվում են նաև մեր ձեռնարկության կոլեկտիվի, կուսկազմակերպության կոնկրետ գործերի ու անելիքների հետ և լրջորեն խորհելու առիթ են տալիս:

Համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցումը, այդ առթիվ ընդունված բանաձևը, կուսակցության ծրագրի նոր խմբագրությունն ու փոփոխված կանոնադրությունը, ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները ոգեշնչման աղբյուր դարձան նաև Հրազդանի ցեմենտի գործարանի կոմունիստների, կոլեկտիվի բոլոր անդամների համար, նոր լիցք հաղորդեցին նրանց աշխատանքին: Յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր ցեմենտագործ ամենայն խորությամբ գիտակցում է իր անձնական պատասխանատվությունը համագումարյան



փաստաթղթերում բովանդակվող պահանջների կատարման, ձեռնարկության հետագա առաջընթացի ապահովման գործում: Չէ՞ որ այդ հարցերը կարմիր թելի պես անցնում էին համագումարում հանդես եկած պատգամավորների ելույթներում:

Այսօր, երբ հետադարձ հայացք ենք ձգում մեր նախընթաց գործունեությանը և դրա արդյունքները գնահատում ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների չափանիշներով, ապա պարզորոշ տեսնում ենք և՛ մեր հաջողությունները, և՛ վրիպումները, և՛ այն խնդիրները, որոնք պետք է լուծենք:

Գործարանի սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների վերջին հաշվետու-ընտրական ժողովներում, որոնք անցան ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի պահանջների ոգով, կոմունիստները հանգամանորեն վերլուծեցին կատարվածը, բայց ավելի շատ խոսեցին թերությունների ու թերացումների մասին, կուսակցական սկզբունքային քննադատության մթնոլորտում արծարծեցին բարձրարդյունավետ աշխատանքի հեղինակության աճի, տնտեսավարման ոճի ու մեթոդների արմատական բարելավման, կոլեկտիվի հնարավորությունների լիարժեք օգտագործման, մասնավորապես մարդկային գործոնի ակտիվացման և նման բնույթի այլ հարցեր: Դրանք մեզ համար կարևոր են հատկապես այն առումով, որ վերջին տարիներին գործարանը ծանր կացության մեջ էր. սարքավորումները բարոյապես և ֆիզիկապես մաշվել էին, մեծ էր միջին և բարձր օղակի կադրերի հոսունությունը, կոլեկտիվն աշխատում էր գրոհայնությամբ: Այդ ամենի պատճառով չէին կատարվում ցեմենտի արտադրության և առաքումների պլանները, շինարարական շատ կազմակերպություններ իրավացի կերպով դժգոհում էին մեզնից: Եվ միանգամայն տեղին էր ՀԿԿ XXVIII համագումարում մեր գործարանի հասցեին եղած քննադատությունն այն կապակցությամբ, որ տասնմեկերորդ հնգամյակում թերակատարվել են մատակարարումների պլանները:

Ինչ խոսք, այդպես շարունակել չէր կարելի: Կուսակցական մարմինների և նյութական միջոցների... 

Վերակառուցումն ընդհանրապես, իսկ հոգեբանականը՝ մասնավորապես, առհասարակ դժվարընթաց պրոցես է: Մեզ մոտ էլ այն հեշտությամբ չստացվեց: Մեզ համար շատ կարևոր էր ճիշտ որոշել գլխավոր գործոնները, որոնց օգնությամբ հնարավոր լիներ ձեռնարկությունն ու նրա կոլեկտիվը դուրս բերել ճեղքվածքից: Կուսկազմակերպությունը առաջադրեց այն խնդիրները, որոնց լուծումը այլևս չէր կարելի հետաձգել: Գլխավոր մասնագետները բաժինների հետ միասին մշակեցին արտադրության տեխնիկական վերազինման կոմպլեքսային պլան, և կոլեկտիվը ձեռնամուխ եղավ դրա իրագործմանը: Հարկ եղավ մեծ ջանքեր գործադրել, մանավանդ որ վերազինումն իրականացվում էր հիմնական արտադրամասերի աշխատանքը շարունակելու պայմաններում: Արդեն 1984 թ. նոյեմբերին ավարտեցինք առաջին տեխնոլոգիական գծի արդիականացումն ու տեխնիկական վերազինումը: Եվ ահա արդյունքը. կատարեցինք դեկտեմբեր ամսվա պլանը և պահեստային զգալի պաշար ստեղծեցինք 1985 թ. առաջին եռամսյակի նորմալ աշխատանքի համար: Անկեղծ ասած, ինձ շատ հուզեց, որ նման բնույթի պրոբլեմներ ծառացած են նաև երկրի շատ ձեռնարկությունների առջև: Այդ մասին լուրջ և սրտացավ խոսք եղավ ինչպես պատգամավորների ելույթներում, այնպես էլ համագումարի ընդմիջումների ընթացքում երկրի տարբեր ծայրերից ժամանած իմ կոլեգաների հետ ունեցած զրույցներում:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումից հետո արտադրության տեխնիկական վերազինման նպատակով մեր ծավալած աշխատանքը նոր թափ ստացավ: Պլենումը նորովի դրեց արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը մեր հասարակության զարգացման արդի պահանջների մակարդակին բարձրացնելու հարցերը:

Նոր խնդիրների լուծումը նոր մոտեցում, ստեղծագործաբար մտածող և եռանդուն մարդիկ է պահանջում: Նման մարդկանց դաստիարակության ամենալավ դպրոցը, իհարկե, աշխատանքն է, լուրջ վերաբերմունքն այն գործի նկատմամբ, որը վստահել են մարդուն: Կատարելագործել արտադրության մարդու պրոֆեսիոնալ վար-

պետությունը, բարձրացնել լավորակ աշխատանքի հեղինակությունը՝ կուսկազմակերպությունը դրանում է տեսնում իր գլխավոր խնդիրներից մեկը: Որպեսզի հնարավոր լինի հասնել դրան, յուրաքանչյուր աշխատող պետք է ձգտի ակտիվորեն դրսևորել իրեն, խորացնել իր գիտելիքները, ձեռք բերել պրոֆեսիոնալ հմտություններ, ընդլայնել իր մտահորիզոնը:

Ինձ համար շատ ուսանելի էր, որ համագումարը ամենայն սրությամբ արծարծեց սկզբնական կուսկազմակերպությունների դերի բարձրացման հարցերը, նշեց նրանց գործունեության կարևորությունն ու անհրաժեշտությունը հիմնարկություններում ու ձեռնարկություններում գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդման, կոլեկտիվներում դաստիարակչական միջոցների ուժեղացման գործում: Համագումարից հետո կուսկոմիտեն, տնտեսության ղեկավարության հետ միասին, ակտիվ ու բազմակողմանի աշխատանք ծավալեց արտադրության կազմակերպման և մարդկանց դաստիարակության գործում տեղ գտած թերություններն ու սխալները վերացնելու նպատակով: Մշակել ենք տնտեսական ու սոցիալական զարգացման, կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի կոմպլեքսային միջոցառումներ, որոնց նպատակն է արտադրությունում հաստատել անհրաժեշտ կարգուկանոն, կառավարչական ապարատում վերացնել թերացումների այնպիսի երևույթներ, ինչպիսիք են ուշացումները, գործալքումը, ոչ սթափ վիճակում աշխատանքի ներկայանալը, կատարողական թույլ կարգապահությունը և այլն:

Մշակած միջոցառումների իրականացումը մշտապես գտնվում է կուսկոմիտեի և արտադրամասային կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում և հսկողության ներքո: Սոցիալիստական կարգապահության ամրապնդման հարցերը պարբերաբար տեղ են գտնում կուսկոմիտեի նիստերի, արտադրամասային կազմակերպությունների ժողովների օրակարգում:

Համագումարում բազմիցս շեշտվեց, որ կարգապահության ամրապնդման առավել արդյունավետ միջոցներից մեկը աշխատանքի և արտադրության ճիշտ կազմակերպումն է: Կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության մեջ այն անչափ կարևորվում է և, բնականաբար, կուսկազմակերպությունների ու տնտեսական ղեկավարության ուշադրությունը սևեռվեց այդ գործի բարելավման վրա: Ճիշտ ըմբռնելով կուսակցության առաջադրած խնդրի կարևորությունը՝ կուսկոմիտեն մշտապես ուժեղացնում է պահանջկոտությունը կոլեկտիվի ղեկավարների, արտադրամասերի ու տեղամասերի պետերի, վարպետների և բրիգադավարների նկատմամբ, բարձրացնում նրանց պատասխանատվությունը ոչ միայն աշխատանքային կարգապահության վիճակի, այլև աշխատանքի գիտական կազմակերպման ներդրման, աշխատանքային ողջ օրվա ընթացքում կոլեկտիվի անդամների բարձրարտադրողական աշխատանքի ապահովման համար:

Ցեմենտի արտադրությունը կոլեկտիվ գործ է, և դրա հանդեպ յուրաքանչյուրի վերաբերմունքով է պայմանավորված ողջ արտադրության բախտը: Դրա համար էլ մենք ձգտում ենք, որ ցեմենտագործներն աշխատեն մեկը՝ բոլորի, բոլորը՝ մեկի համար նշանաբանով: Կուսկոմիտեն, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հետ միասին, մեծ ուշադրություն է նվիրում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակմանը: Գործարանի գոյության մեկուկես տասնամյակի ընթացքում մեզ մոտ աճել են բանվորական և ինժեներատեխնիկական հիանալի կադրեր, որոնք գործին մոտենում են տիրոջ զգացումով, լավ օրինակ ծառայում գործընկերների համար:

Ձեռնարկության հիմնադիրներից է թրծման արտադրամասի բրիգադավար, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Գ. Աթյանը: Նա իր լավ գործերով ու բարոյական վարքագծով օրինակ է ծառայում գործընկերների համար: Անձնվիրաբար են աշխատում նաև կադրային բանվորներ Ա. Պախոմովը, Վ. Խուբլարյանը և ուրիշներ: Վերջինս ընտրվել է ժողովրդական դեպուտատների Հրազդանի քաղսովետի դեպուտատ և գործադիր կոմիտեի անդամ: Կադրային բանվորների հետ ուս-ուսի մեծ ջանքեր են գործադրում նաև երիտասարդ մասնագետները, կոմերիտական ինժեներներ Ալ. Մկրտչյանը, Ս. Դաշյանը, Ա. Բաղդասարյանը, Ա. Վարդանյանը, Ե. Հակոբյանը: Փորձառու և երիտասարդ կադրերի նման զուգակցման կարևորության մասին խոսվեց համագումարում:



Կարգապահության ամրապնդման, արտադրության բոլոր օղակներում կարգուկանոնի հաստատման պայքարում վճռական դերը պատկանում է բանվորական կոլեկտիվին: Կուսկազմակերպությունը ձգտում է յուրաքանչյուր արտադրամասային կոլեկտիվում ստեղծել այնպիսի բարոյահոգեբանական մթնոլորտ, որը նպաստի արտադրության մարդու նկատմամբ հարգալից ու հոգատար վերաբերմունքի, իր և ուրիշի հանդեպ պահանջկոտության, խիստ պատասխանատվության հետ վստահության զուգակցման, իսկական ընկերականության հարաբերությունների հաստատմանը՝ ինչպես արտադրության ոլորտում, այնպես էլ հասարակական կյանքում ու կենցաղում:

Մենք առաջին հերթին ելնում ենք այն իրողությունից, որ ժամանակակից ղեկավարը պետք է օժտված լինի լայն կազմակերպչական ունակություններով և պրոֆեսիոնալ պատրաստվածությամբ, որոնք հնարավորություն ընձեռեին նրան՝ ակտիվորեն ներազդելու կոլեկտիվի գործունեության վրա, դրանով իսկ ապահովելու առաջադրված խնդիրների լուծումը:

ՍՄԿԿ XXVII համագումարը կադրերից պահանջեց՝ սովորել աշխատել նորովի, հաղթահարել քարացածությունն ու պահպանողականությունը, սթափ գնահատել իրադրությունը, դրսևորել բարձր պատասխանատվություն, անզիջում պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ: Եվ մենք մշտապես ուշադրության կենտրոնում ենք պահում կադրային քաղաքականության կարևոր հարցերը՝ ընտրությունը, տեղաբաշխումը, դաստիարակությունը, և դրանց ճիշտ լուծմամբ նպաստում կուսակցական ու աշխատանքային կարգապահության ամրապնդմանը: Սակայն կյանքը, ինչպես նշվեց կուսակցության մեծ համաժողովում, ամեն օր, ամեն ժամ մեր առջև դնում է նոր պրոբլեմներ, որոնց լուծումը եռանդ ու ջանք են պահանջում կուսկազմակերպություններից: Եվ մենք ջանում ենք, որպեսզի արտադրամասերի, տեղամասերի, հասարակական կազմակերպությունների գլուխ կանգնեն պրոֆեսիոնալ խոր գիտելիքների տեր, տնտեսական, քաղաքական և կազմակերպչական աշխատանքի փորձ ունեցող մարդիկ, որոնք հեղինակություն են վայելում կոլեկտիվի անդամների շրջանում:

Իսկական կոմունիստի, ղեկավարի լավ հատկանիշներով է օժտված աղացման արտադրամասի պետ Գ. Գևորգյանը: Դիրեկցիայի գործուղմամբ սովորել և ավարտել է Բելգորոդի շինանյութերի ինստիտուտը, մեզ մոտ եղել է վարպետ, մեխանիկ, արտադրամասի պետի տեղակալ: Նա արտադրության հմուտ կազմակերպիչ և հասարակական ակտիվ աշխատող է: Բարեխղճորեն է կատարում ինչպես ծառայական, այնպես էլ կուսկոմիտեի անդամի պարտականությունները: Նրա ղեկավարած կոլեկտիվը միշտ քայլում է մրցության ավանգարդում: Նույնանման ճանապարհ է անցել կոմունիստ Ռ. Նազարյանը: Նա եղել է պտտվող վառարանի մեքենավար, վարպետ, արտադրամասի պետ, իսկ այժմ արտադրատեխնիկական բաժնի վարիչի տեղակալն է: Այս տարի աշխատանքին զուգընթաց կավարտի բարձրագույն ուսումնական հաստատություն: Սրանք, իհարկե, եզակի օրինակներ չեն:

Մենք ձգտում ենք կադրային նպատակաուղղված աշխատանքով կոլեկտիվում հաստատել բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, մեր կադրերի գործունեությունը գնահատել բացառապես կուսակցական սկզբունքայնության դիրքերից: Անտարակույս, տեսնում ենք նաև մեր թերություններն ու բացթողումները: Չեմ կարող պնդել, թե կադրերի ընտրությանն առնչվող բոլոր հարցերը, ինչպես հարկն է, լուծել ենք: Բայց կարող եմ ասել, որ դիրեկցիան, կուսկազմակերպությունը անում են ամեն ինչ, որպեսզի կադրերի հետ տարվող աշխատանքում չլինեն այնպիսի վրիպումներ, որոնք ծնում են անցանկալի երևույթներ և բացասաբար անդրադառնում կադրերի դաստիարակության ու ձևավորման, մեր ողջ աշխատանքի վրա:

Տասնմեկերորդ հնգամյակի վերջին տարում մեր գործարանը հասավ որոշակի հաջողությունների: Կատարվեց ցեմենտի արտադրության պլանը, երկրին պլանից դուրս տրվեց 25 հազար տոննա ցեմենտ: 1984 թվականի համեմատությամբ բանվորների միջին ամսական աշխատավարձն ավելացավ 12 ռուբլով և հասավ 252 ռուբլու: Ապահովվեց աշխատավարձի համեմատությամբ աշխատանքի արտադրողականության ավելի բարձր աճ: Ամրապնդվեց արտադրական կարգապահությունը, կրճատվեցին բանվորական ժամանակի կորուստները: Լայն տարածում գտան աշխատանքի կոլեկտիվ կազմակերպման և խթանման արդյունավետ ձևերն ու մեթոդները, առաջին

ների՝ բրիգադային կապալը։ Այս տարի գործարանի արտադրամասերը կանցնեն տնտհաշվարկի։

Կկամենայի անդրադառնալ ևս մեկ հարցի, որն անմիջականորեն առնչվում է արտադրական-տեխնոլոգիական կարգապահության հետ և ըստ ամենայնի կարևորվեց ՍՄԿԿ XXVII համագումարում։ Դա արտադրանքի բարձր որակի հարցն է։ Գիտատեխնիկական առաջընթացի համակարգում կուսակցությունն առաջնակարգ տեղ է հատկացնում արտադրանքի արմատական բարելավման խնդրին։ Այն հատկապես վերաբերում է մեզ՝ ցեմենտագործներիս։ Չէ՞ որ ցեմենտը շինարարության հացն է։ Նրա բարձր որակով են պայմանավորված շենքի ամրությունը, կառույցի հուսալիությունը։ Կուսկազմակերպությունը ձգտում է բարձրացնել կոլեկտիվի անդամների պատասխանատվությունը թողարկվող ցեմենտի տեխնիկական բարձր մակարդակի համար։ Դա ժամանակի պահանջն է, մեր առաջնահերթ խնդիրը, և այդ ասպարեզում որոշակի քայլեր արդեն արվել են. ընթացիկ տարվա հունվար ամսից 400 մակնիշի ցեմենտը ատեստավորվել է որպես բարձր որակի արտադրանք։

Իհարկե, արված են սոսկ առաջին քայլերը։ Բանն այն է, որ ցեմենտի որոշ մակնիշներ չեն համապատասխանում ժամանակակից պահանջներին։ Ցածր որակի համար մեղքի մեծ բաժինը, անշուշտ, մերն է։ Բայց կան և օբյեկտիվ պատճառներ։ Ես նկատի ունեմ հումքի ցածրորակությունը։ Դրա և հումքային այլ բաղադրամասերի պատճառով չենք կարողանում թողարկել 500 մակնիշի ցեմենտ։ Այստեղից էլ՝ արտադրության տագնապալի վիճակը։ Եվ որպես դրա հետևանք՝ հիմնական և օժանդակ սարքավորումները մասնակիորեն մատնվում են անգործության, խախտվում են տեխնոլոգիական պրոցեսները, աղտոտվում է շրջակա միջավայրը։

Մեր ողջ աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ առաջադրված տնտեսական խնդիրների լուծման գործում էական հաջողության կարող է հասնել նա, ով ակտիվորեն և առարկայորեն զբաղվում է արտադրամասի, գործարանի էկոնոմիկայի զարգացման պրոբլեմներով, ով մշտապես պայքարում է կազմակերպվածության բարձրացման և կարգապահության ամրապնդման համար, ով ներդնում է նորը, տեսնում է թերությունների պատճառները, կազմակերպչական ու դաստիարակչական կոնկրետ աշխատանքով վճռականորեն հաղթահարում է դրանք։ Դեռևս ոչ մեկին չի հաջողվել ծալած ձեռքերով հաջողության հասնել։

Կուսակցությունը պահանջում է մշտապես զբաղվել սեփական գիտելիքների հարստացմամբ և ոչ թե տեղում դոփել, ապրել հին պաշարով, այլապես կհայտնվես ետ մնացողների շարքում։ Մեզ մոտ որոշ ընկերներ չդիմացան ղեկավարի քննությանը։ Նրանք դարձան աշխատանքի հնացած ոճի և մեթոդների հետևորդներ, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման գործում հանդես չբերեցին լայն նախաձեռնություն և, բնականաբար, հարկ եղավ ազատվել նրանցից։

ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց, որ մենք՝ կոմունիստներս, սթափ կերպով գնահատենք մինչև այժմ կատարածը և ճիշտ սահմանենք ծագած պրոբլեմների լուծման գործում մեր անելիքները։ Այդ առումով ինձ համար՝ որպես կուսկոմիտեի քարտուղարի, շատ կարևոր է կոմունիստի կերպարի հարցը, որը հանգամանորեն արծարծվեց ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ։ Այն խիստ կենսական է ողջ կուսակցության համար։

Ինչպիսի՞ն պետք է լինի կոմունիստը։ ՍՄԿԿ-ն մեր երկրում ավանգարդային դեր է կատարում, նա հասարակությանն ուղղություն տվող և ղեկավար ուժն է։ Կանոնադրությամբ պահանջվում է, որ նրա յուրաքանչյուր անդամը օրինակ ծառայի անկուսակցականների համար և՛ աշխատանքում, և՛ կենցաղում։ Դրանով է մեծապես պայմանավորված ոչ միայն նրա հեղինակությունը կոլեկտիվում, այլև կուսակցության հեղինակությունը ժողովրդի մեջ։ Չէ՞ որ մարդու, առավել ևս կոմունիստի մասին դատում են նախ նրա գործերով, վարքագծով, ունեցած հեղինակությամբ։

Կուսակցության մեծ համաժողովը առաջադրեց մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հստակ ծրագիր։ Առաջիկա 15 տարում հարկավոր է կրկնապատկել արտադրական պոտենցիալը, անել այնքան, որքան սովետական իշխանության նախընթաց 68 տարիների ընթացքում։ Եվ կուսակցությունն իր այդ կուրսի իրականացման գործում մեծ հույսեր է կապում կոմունիստներիս հետ։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը տեղին ասաց, որ կուսակցությունը կարող է հաջողությամբ լուծել նոր խնդիրները, եթե ինքը գտնվում է



անընդհատ զարգացման մեջ, զերծ է «անսխալականության» կոմպլեքսից, քննադատաբար է գնահատում ձեռք բերած արդյունքները, պարզորոշ տեսնում անելիքները։

Երկրի առջև ծառացած պրոբլեմների մասշտաբայնությունն ու բարդությունը բարձրացնում են պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ, նրանց առջև խնդիր դնում՝ հանդես բերել առավել ձեռներեցություն ու պատասխանատվություն, վճռական պայքար մղել կուսակցականի անաղարտ ու ազնիվ կերպարի համար։ Ցավոք, ստիպված եմ խոստովանելու, որ մենք ևս այս առումով ունենք ոչ քիչ թերացումներ, կազմակերպության առանձին անդամներ իրենց դրսևորում են կոմունիստին ոչ արժանի ձևով, կատարում են վարկաբեկող արարքներ։ Եվ ճիշտ է, որ կուսակցությունը վճռականորեն մաքրում է իր շարքերը բոլոր նրանցից, ովքեր արատավորում են կոմունիստի վեհ կոչումը։ Մեր կազմակերպությունը առաջիկայում ևս կձգտի, որպեսզի սկզբունքայնությունն ու կուսակցական ընկերականությունը դառնան հաստատուն նորմ, զարգանան քննադատությունն ու ինքնաքննադատությունը, իրավիճակի կուսակցական վերլուծությունը չվերածվի հաջողությունների մասին դատարկ խոսակցության։ Մեզ հարկավոր է ավելի լայնորեն կազմակերպել կոմունիստների հաշվետվությունները իրենց ընկերների առջև, կուսակցական բնութագրերը քննարկել և հաստատել ժողովներում։ Այդ ամենը բարձրացնում է կուսակցության անդամի պատասխանատվությունն իր կազմակերպության առջև։

Ներկա փուլում կուսակցությունը գլխավոր հարցերից մեկը համարում է հրապարակայնության ընդլայնումը, քանի որ առանց դրա չեն կարող լինել իսկական դեմոկրատիա, մասսաների քաղաքական ստեղծագործություն և մասնակցություն կառավարմանը։ Համագումարի այդ պահանջները մեր կուսկազմակերպությունը դնում է իր գործունեության հիմքում։

Ընդհանրացնելով և իմաստավորելով կատարած արժեքավորն ու դրականը, կուսակցական սկզբունքայնության դիրքերից հետևություն անելով աշխատանքում տեղ գտած թերություններից ու թերացումներից՝ մեր կուսկազմակերպությունը, ՀԿԿ Հրազդանի շրջկոմի օգնությամբ և ղեկավարությամբ, կանի ամեն ինչ՝ գործարանի կոլեկտիվի, նրա քաղաքական միջուկի առջև ծառացած տնտեսական և սոցիալական, գաղափարական դաստիարակության խնդիրները հաջողությամբ լուծելու, ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու համար։

Ընթանալ համագումարի նշած ուղիով՝ ահա մեր գործունեության նշանաբանը։

# ԱՇԽԱՏԵԼ ՆՈՐՈՎԻ

**ՍՎԵՏԼԱՆԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ**
Աշտարակի շրջանի Սասունիկի պետտնտեսության
խաղողագործուհի, ՀԿԿ Կենտկոմի անդամ,
ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության անդամ

**ՍՄԿԿ** XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նոր ուղենիշ բացեց մեր կուսակցության, սովետական ժողովրդի կյանքում։ Ես անչափ երջանիկ եմ, որ շարքային այգեգործս երկրի ճանաչված մարդկանց՝ անվանի հողագործների, շինարարների, բանվորների, աշխարհահռչակ գիտնականների ու արվեստագետների, կուսակցական ու պետական գործիչների հետ մասնակցում էի մեր հայրենիքի սոցիալ-տնտեսական առաջընթացի և արտաքին քաղաքականության հրատապ խնդիրների քննարկմանը։

Կուսակցության մեծ համաժողովի պատգամավորը լինելու հպարտ զգացումով համակվեցի դեռևս Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում, երբ առաջադրված թեկնածուների կազմում լսեցի նաև իմ անունը։ Չէ՞ որ 50 պատգամավորներից 13-ն էին գյուղատնտեսության աշխատողներ, իսկ ես՝ միակ խաղողագործը։ Ծառ

հաճելի էր, որ Մոսկվայում մեզ ամենուրեք շրջապատում էին ջերմ հոգատարությամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը, ընդհանրացնելով մեր հաջողությունները, լենինյան շիտակությամբ խոսեց նաև չարված գործերի, մեր կյանքի ստվերոտ կողմերի, չլուծված պրոբլեմների ու դրանց ծնող պատճառների մասին։ Այդ շիտակությամբ էլ, անտարակույս, անկաշկանդ մթնոլորտ ստեղծվեց առողջ քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալման համար։ Երբ այդ կապակցությամբ մտքեր էին փոխանակում մեր և ուրիշ պատվիրակությունների անդամների հետ, ապա բոլորն էլ համանման կարծիք էին արտահայտում։ Օրինակ, Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի դաշտավարական բրիգադի բրիգադավար, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Բավական Մնացականյանը, որը երկրորդ անգամ էր մասնակցում ՍՄԿԿ համագումարին, ասում էր, որ XXVII-ը առանձնահատուկ է և՛ իր օրակարգով ու մթնոլորտով, և՛ զեկուցումների ու ելույթների առողջ քննադատության սկզբունքային բնույթով։ Ամենակարևորը՝ ելույթները գործնական էին, արտացոլում էին ժամանակի շունչը և պահանջները։ Զգում էի, որ բոլոր պատգամավորները, մասնակիցները հավատով են ընդունում, լարված, համակ ուշադրությամբ ունկնդրում զեկուցումներն ու ելույթները, տոգորված են այն զգացումով, որ առաջ քաշված հարցերն ու արված քննադատական դիտողությունները անհետևանք չեն մնա, անմիջապես կիրառվեն, կիրագործվեն։

Եվ մեկ ուրիշ հաճելի զգացում. համագումարին մասնակցում էին տարբեր սերունդների ներկայացուցիչներ, և նրանց միջև գոյություն ուներ փոխադարձ ըմբռնողություն։ Կանայք, որ պատգամավորների մեկ երրորդն էին կազմում, առանձնակի ուշադրությամբ ու հոգատարությամբ էին շրջապատված։

Համագումարի ամբողջ ընթացքը, նրա ընդունած որոշումները մեկ անգամ ևս վկայում են, որ կուսակցության գերագույն նպատակը սովետական մարդու նյութական բարեկեցության բարձրացումն է, ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդումը, աշխարհում կայուն խաղաղության ապահովումը, միջուկային աղետի կանխումը։

Ինձ շատ ոգևորեց այն հանգամանքը, որ գյուղի մարդկանց հուզող հարցերը հավասարապես հուզում էին նաև համագումարի բոլոր մասնակիցներին և համակողմանիորեն արծարծվեցին ինչպես ընկ. ընկ. Մ. Ս. Գորբաչովի և Ն. Ի. Ռիժկովի զեկուցումներում, այնպես էլ պատգամավորների ելույթներում։ Դա հաստատ համոզմունք է ներշնչում, որ առաջիկա տարիներին մեր ջանադիր աշխատանքով կհաղթահարվեն դեռևս տեղ գտած թերությունները և էապես կարագանա մեր երկրի սոցիալական զարգացումը, որը այնքա՜ն կարևորեց համագումարը։

Ինչպես և սպասվում էր, լուրջ խոսակցություն ծավալվեց նաև ագրոարդյունաբերական համալիրի աշխատանքի բարելավման, պարենային ծրագրի իրականացման շուրջ։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարն ասաց, որ պարենային պրոբլեմի լուծումը առաջնահերթ խնդիր է և պետք է ամենակարճ ժամանակամիջոցում երկիրն ապահովել պարենով։ Դրա համար հարկավոր է հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը, կրկնապատկել այդ ճյուղի արտադրության աճի տեմպերը և ապահովել մեկ շնչին ընկնող մսի, կաթի, բանջարեղենի ու պտուղների սպառման զգալի հավելում։ Կկամենայի այդ խնդրի կապակցությամբ էլ մի քանի խոսք ասել մեզ մոտ կատարվող աշխատանքի մասին։ Անցած տարիները արգասաբեր էին Աշտարակի շրջանի գյուղի աշխատավորների համար։ Կատարվել ու գերակատարվել են գյուղատնտեսության զարգացման ծրագրերը։ 1985 թ. և ամբողջությամբ տասնմեկերորդ հնգամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու համար շրջանի գյուղատնտեսության աշխատողները հաղթող ճանաչվեցին հանրապետական սոցիալիստական մրցությունում և պարգևատրվեցին ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։

Այդ հաջողությունների մեջ իրենց արժանի բաժինն ունեն նաև մեր՝ Սասունիկի պետական տնտեսությունն ու այն բրիգադը, որտեղ ես աշխատում եմ։ Մի քանի տվյալ միայն. տասնմեկերորդ հնգամյակում պլանից ավելի արտադրվել ու պետությանը վաճառվել են 1.500 տոննա խաղող, 450 տոննա կաթ, մոտ հարյուր տոննա



միս, կովերի տարեկան միջին կաթնատվությունը հասել է 3.225, խոշոր եղջերավոր անասունների կենդանի քաշը՝ 420 կգ-ի։

Որոշակի աշխատանք է կատարվել բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ասպարեզում։ Շահագործման են հանձնվել կենցաղի տունը, բաղնիքը, բժշկական ամբուլատորիան։ Աշխատավորության կոմունիստական դաստիարակությունը, նրանց կուլտուրական հանգստի կազմակերպումը տնտեսության դիրեկցիայի և կուսկազմակերպության տեսադաշտում է։ Այսօր մեր երիտասարդության ավելի քան 70 տոկոսն ընդգրկված է մարզական և գեղարվեստական ինքնագործունեության խմբերում։ «Սասուն» ազգագրական պարի անսամբլը դարձել է Լեհաստանում անցկացված միջազգային փառատոնի մրցանակակիր, երիտասարդության և ուսանողների համաշխարհային XII փառատոնի դափնեկիր։

Այդ ամենը լավ է։ Սակայն, եթե կատարվածը գնահատենք ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների ու պահանջների լույսի ներքո, ապա պիտի խոստովանել, որ այն բնավ էլ չի համապատասխանում մեր հնարավորություններին։ Դեռևս ցածր են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, կենդանիների մթերատվությունը, մեքենայացման մակարդակը։ Անբավարար են օգտագործվում հողը, ջուրը, քիչ բան է արվում քիմիացման և մելիորացման ասպարեզում։ Մեզ համար, մեր շրջանի կուսակցական ու սովետական մարմինների համար ներելի չէ, որ յուրաքանչյուր հեկտարից 20—25 ցենտներ հացահատիկ է ստացվում, դրա համար իրավացիորեն քննադատվեցինք ՀԿԿ XXVIII համագումարում։ Ցածր է այգիների բերքատվությունը և, ցավոք, քիչ բան է արվում դրությունը շտկելու, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևեր արմատավորելու նպատակով։

Եվ այդ ցուցանիշների պատճառը պետք է որոնել մեր մեջ, մեր աշխատանքում։ Միայն նշեմ երկու օրինակ ասածս հաստատելու համար։ Համագումարի օրերին ծանոթացա Դաղստանի պատվիրակներից մեկի՝ Գյուլնարա անունով մի աղջկա հետ։ Նա նույնպես խաղողագործուհի է, և մենք առաջին իսկ պահից ընդհանուր լեզու գտանք։ Սրտաբաց զրույց ունեցանք, մտքեր փոխանակեցինք։ Բանից պարզվեց, որ նրանց տնտեսությունը խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստանում է 110—115 ցենտներ բերք, մինչդեռ մեզ մոտ միջին ցուցանիշը 60-ից չի անցնում և միայն առանձին բրիգադներ են հասցնում 100-ի։ Հետաքրքիր է, որ նրանք ազատված են այգեթաղի և այգեբացի դժվարին գործերից, և այնտեղ այգիների մշակության մեքենայացման մակարդակը բարձր է։ Կարո՞ղ ենք մենք էլ հասնել դրան։ Կարծում եմ՝ այո՛։ Եթե, իհարկե, գիտնականները ստեղծեն ցրտադիմացկուն սորտեր և դրանով իսկ օգնեն մեզ՝ վերակառուցելու այգիները։

Եվ երկրորդ օրինակը։ Մեր հանրապետության պատվիրակությունը եղավ մերձմոսկովյան Կիրովի անվան կոլտնտեսությունում, որն զբաղվում է անասնապահությամբ և ջերմոցային բանջարաբուծությամբ։ Հատկապես ուսանելի շատ բան տեսանք կաթնապրանքային ֆերմայում։ Նրանց մոտ կթվոր-օպերատորը կթում է 70, մեր ֆերմայում՝ 25 կով, անասնապահները համապատասխանաբար խնամում են 210 և 100 գլուխ կով։ Նրանք ամեն մի կովից տարեկան ստանում են 5.200 կգ կաթ (պայքարում են 6.000-ի համար), մեզ մոտ՝ 3.200 կգ-ից քիչ ավելի։ Եվ զարմանալին այն է, որ, չնայած ցուցանիշների խիստ տարբերությանը, ինչպես այնտեղ, այնպես էլ մեզ մոտ անասուններին տրվում է նույն քանակի կերամիավոր։ Հապա ո՞րն է գաղտնիքը։ Իմ խորին համոզմամբ այն աշխատանքի կազմակերպման, անասնապահության վարման կուլտուրայի մեջ է։ Բանն այն է, որ կիրովցիներն ավելի ռացիոնալ և արդյունավետ են օգտագործում կերը, խելացի կազմակերպում գործը։ Ինքներդ դատեցեք. ինչպես նրանց, այնպես էլ մեր կաթնային համալիրը տիպային է, մինչդեռ նրանց մոտ առաջին իսկ օրվանից գործում են բաղնիքը, կարմիր անկյունը, հանգստի սենյակը, դահլիճը, ունեն հեռուստացույց, կենցաղային սառնարան։ Ամեն մի կթվորուհի ունի իր առանձնասենյակը։ Իսկ մեզ մոտ վերջինս առհասարակ գոյություն չունի, իսկ բաղնիքի ու կարմիր անկյան կառուցումը նոր են սկսում, սառնարան չկա։ Ուրեմն ի՞նչ։ Պատճառներից մեկն էլ կենցաղային և հանգստի պայմանների տարբերությունն է։ Ինձ դուր եկավ նաև այն, որ նոր ծնված հորթերը պահվում են դրսում, ձյան վրա, դրանով իսկ մատղաշները հետագայում զերծ են

մնում հիվանդություններից, իսկ մեզ մոտ պահում են գոմում և տարբեր տեսակի միջոցներ ձեռնարկում, որպեսզի անկում չլինի:

Համագումարում խնդիր դրվեց աշխատել նորովի, այդ պահանջը հավասարապես վերաբերում է նաև մեզ՝ սասունիկցիներիս: Ժամանակն է, որ մենք նորովի աշխատել սովորենք:

Ելնելով ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների պահանջներից՝ օրերս կուսակցական կազմակերպության ժողովում վերանայեցինք մեր ծրագրերը: Մենք նախատեսում ենք գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների մշակությունը կազմակերպել ինտենսիվ տեխնոլոգիայով, իսկ անասնապահությունը դրան է անցել դեռևս 1985 թ. հուլիս ամսից: Այն, ինչպես տեսանք կիրովցիների օրինակով, կատարելագործման կարիք ունի: Ինտենսիվացումը հնարավորություն կընձեռի խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստանալ 90—100 ցենտներ բերք, կրկնապատկել պտղի արտադրությունը, պետությանը վաճառվող տավարի կենդանի քաշը հասցնել 500, իսկ մեկ կովի կաթնատվությունը՝ 4.000 կգ-ի: Հասկանալի է, դրանց համապատասխան հարկ կլինի լուծել կերի արտադրության պահանջվող ծավալների ապահովման հարցերը:

Այսպիսի ծրագրի իրականացումը կնպաստի լրիվ տնտհաշվարկի անցմանը, մի բան, որ ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջն է, և որի մասին հստակորեն ասված է երկրի ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման և տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ:

Համագումարի առաջադրած նոր պահանջները, նրա հիրավի պատմական որոշումները իրականացնելու համար անհրաժեշտ է վերից վար վերակառուցել աշխատանքը, ամուր հիմքերի վրա դնել պետական ու աշխատանքային կարգապահությունը, անզիջում պայքար մղել անպատասխանատվության ու անտնտեսվարության դեմ: Ճիշտ ասվեց համագումարում, որ եթե յուրաքանչյուրն սկսի իրենից, ապա մեր կյանքի բոլոր բնագավառներում արմատական փոփոխություններն ավելի արագ կկատարվեն: Ժամանակն է վերջ տալ այն սխալ մտայնությանը, թե ամեն ինչ վերևից պետք է ասվի ու այնտեղ հաշվի առնվի: Մենք հսկայական անելիքներ ունենք: Մինչդեռ ամեն ինչ չէ, որ անում ենք այնպես, ինչպես պահանջվում է: Օրինակ, ի՞նչ է հարկավոր մեր բաժին պարենային ծրագիրը կատարելու համար: Առաջին հերթին՝ ռացիոնալ, արդյունավետ օգտագործել հողը, ջուրը, կերը, հետևողականորեն կատարել ագրոկանոնները: Եվ, երկրորդ, արտադրությունը լիովին վարել ինտենսիվ եղանակով, խաղողի այգիները վերակառուցել մաքրասորտ, բարձր բերքատու, ինչպես արդեն ասացի, ցրտադիմացկուն, սեղանի սորտերով, բարձրացնել մեքենայացման մակարդակը, արմատավորել աշխատանքի և վարձատրության կազմակերպման առաջավոր եղանակները: Այլ խոսքով՝ ամեն մի գործ անել տնտեսապես հիմնավորված, այդ թվում և պարտավորությունների ընդունումը:

Իհարկե, սրանցով չեն սպառվում մեր անելիքներն ու լուծելիք խնդիրները: Ես, որպես շարքային բանվոր, ինձ լավ չեմ զգում, երբ հանդուրժում են խոտանը, անտարբերությունը, գործի նկատմամբ ցուցաբերում պակաս պատասխանատվություն: Հետաքրքիր մի համեմատություն. Աշտարակի շրջանում կան մի քանի հարյուրի հասնող պատմական հուշարձաններ, որոնցից մեկն էլ մեր թվարկությունից առաջ յոթերորդ դարում կառուցված ջրանցքն է: Այն առանց որևէ նորոգման, ահա արդեն ավելի քան երկուսուկես հազարամյակ ծառայում է Աշտարակին: Եվ լավ է ծառայում: Դրա կողքին գործում է մեր ժամանակներում կառուցված Արզնի-Շամիրամ ջրանցքը: Տասնյակ միլիոններ են ծախսվել դրա վրա, բայց շահագործման հանձնվելուց անմիջապես հետո՝ 1975 թ., սկսվել է դրա հիմնական նորոգումը ու մինչև օրս չի ավարտվում: Այդ ջրանցքի հարմարանքները չեն գործում, դրանց փոխարեն նորերն են տեղադրվում՝ հսկայական վնաս բերելով պետությանը: Իսկ ջրի կորուստները, որքան ուզեք:

Անհոգության մեկ ուրիշ օրինակ. 10—15 տարի առաջ կառուցվել է գյուղի կուլտուրայի տունը, իսկ այսօր քանդվում է, պատերի վրա ճեղքեր են գոյացել, դարձել է վթարային և երկրորդ տարին է, որ չի գործում: Ինչո՞ւ, ո՞ւմ մեղքով, հարցնող չկա: Այն վերականգնող էլ չկա: Ու այսպես, վերջին տարիներին կառուցված մեծ



թվով բնակելի շենքեր, արտադրական ու կուլտուր-կենցաղային օբյեկտներ դարձել են վթարային և ինչպես հարկն է չեն շահագործվում: Կարծում եմ, որ դրան պիտի վերջ տրվի: Չէ՞ որ որակի ու արդյունավետության բարձրացման մասին կուսակցության պահանջը վերաբերում է նաև շինարարներին:

Ինչպես Աշտարակի շրջանում, այնպես էլ մեր տնտեսությունում որոշակի աշխատանք է տարվում պտղաբուծության ինտենսիվացման նպատակով: Տարեցտարի ավելանում են այգիների տարածությունները, մեծանում պտղի արտադրության ծավալը: Սակայն այստեղ էլ դրա իրացման համար պայմաններ չեն ստեղծվում: Շրջանում պտղի վերամշակման որևէ ձեռնարկություն կառուցելու վերաբերյալ բազմաթիվ պահանջները մնացել են անհետևանք: Բերքը ավտոմեքենաներով տեղափոխվում է հարևան Թալինի, Հոկտեմբերյանի, Մասիսի, Էջմիածնի շրջանները, իսկ 1986 թ., որքան էլ զարմանալի է, նախատեսված է փոխադրել Այրումի պահածոների գործարան: Նման պայմաններում փոխադրման ծախսերը կարող են ավելի բարձր լինել, քան իրացումից ստացված եկամուտը:

Պլանավորող մարմինները ինչպես հարկն է չեն կատարում Աշտարակի շրջանում Արզնի-Շամիրամ ջրանցքի գոտում եղած տնտեսությունների զարգացման վերաբերյալ հանրապետության կառավարության որոշումները, շատ քիչ միջոցներ են հատկացնում բնակարանային, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությանը: Այդ ամենի հետևանքով մեծանում է բանվորական ուժի հոսքը հիշյալ տնտեսություններից և ստեղծվում ծանր իրավիճակ: Այդ ամենը ինձ շատ է անհանգստացնում և՛ որպես աշխատավոր մարդու, և՛ որպես Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատի, և՛ որպես կոմունիստի ու ՀԿԿ Կենտկոմի անդամի: Առավել ևս այժմ՝ կուսակցության մեծ համաժողովից հետո, որտեղ դատապարտվեցին մեր առաջընթացն արգելակող երևույթները, և ես խորին գոհունակությամբ քվեարկեցի դրանք իսպառ վերացնելու օգտին:

Այս խոսքերը հենց այնպես, տպավորություն գործելու համար չեմ ասում: Համագումարյան օրերին ես շատ եմ խորհել այդ հարցերի շուրջ և երբեմն ինքս ինձ հարցրել՝ իսկ ինչպես ես դու կատարում քո պարտականությունները: Պատասխանի համար, իհարկե, չեմ կարմրել: Ինձ արժանացրել են բարձր պարգևների, ու ես ջանում եմ արդարացնել մարդկանց վստահությունը: Որպես դեպուտատ, տարեկան երեք անգամ հանդիպում եմ իմ օկրուգի ընտրողների հետ, հետամուտ լինում նրանց պատվիրանների կատարմանը: Իմ միջամտությամբ լուծվել են մի շարք կարևոր հարցեր. գազիֆիկացվել է Սասունիկը, Արտաշավանն ապահովվել է ավտոմատ հեռախոսային ցանցով, Օշականի գազիֆիկացումը և նոր հանրախանութի կառուցումը մտցվել են պլանի մեջ: Դրանց շինարարությունն արդեն ընթանում է: Որպես ՀԿԿ Կենտկոմի անդամ ակտիվորեն մասնակցում եմ շրջանային կուսակցական կազմակերպության աշխատանքին:

Այսօր մենք խիստ պատասխանատու ժամանակաշրջան ենք ապրում: Եվ պահանջներն էլ այլ են: Մենք իրավունք չունենք բավարարվելու այն արդյունքներով, որոնք երեկ միանգամայն գոհացուցիչ կարող էին համարվել: Մեծ վերակառուցումն սկսվում է փոքր գործերից, և մեզնից յուրաքանչյուրը պարտավոր է այն սկսել իրենից, իր աշխատանքից, իրեն վստահված տեղամասից: Եվ ես ինձ իրավունք եմ վերապահում ասելու, որ Աշտարակի շրջանի, այդ թվում Սասունիկի պետական տնտեսության աշխատավորները պատվով կկատարեն համագումարի որոշումները, ժամկետից շուտ կլուծեն տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի խնդիրները: Իսկ ես խոստանում եմ անձնական հնգամյա պլանս կատարել երեքուկես տարում:

# ՀԱՎԱՏԱՐԻՄ ԼԵՆԻՆՅԱՆԸ

## (ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Ալեքսանդր Մյասնիկյանը լենինյան գվարդիայի ականավոր գործիչներից էր, որն իր ողջ գիտակցական կյանքն անմնացորդ նվիրաբերեց աշխատավոր զանգվածների ազատագրման վեհ գործին, դարձավ նոր կյանքի հաստատման ղեկավարներից մեկը: Նա Սովետական Հայաստանի Ժողկոմխորհի առաջին նախագահն էր և հսկայական ջանքեր գործադրեց հանրապետության քայքայված տնտեսությունը վերականգնելու համար:

Ալեքսանդր Մյասնիկյանը ծնվել է 1886 թ. Նոր-Նախիջևանում, սկզբնական կրթությունն ստացել է ծննդավայրի ծխական գիշերօթիկ դպրոցում: Այնուհետև ընդունվել է Նոր-Նախիջևանի հայկական սեմինարիան, որտեղ սովորել է վեց տարի: Ուսումնառության ընթացքում աչքի է ընկել փայլուն ընդունակություններով: «Զարմանալի, արտասովոր հիշողություն ուներ ութ տարեկան մանուկը»— գրել է նրա մասին ուսուցիչը:

Ալեքսանդր Մյասնիկյանը դեռևս ուսումնառության տարիներին իր մի խումբ առաջադեմ ընկերների հետ միասին ընդգրկվել է ընդհատակյա աշակերտական գրական ու հեղափոխական խմբակում և խմբագրել նրա անլեգալ ու կիսալեգալ ձեռագիր թերթը: Սեմինարիայի ավարտական դասարանում, տեղեկանալով Արևմտյան Հայաստանում թուրքական ռեակցիայի կազմակերպած հայկական կոտորածների մասին, նա խոր տագնապ է ապրում իր ժողովրդի ճակատագրի համար:

Ալեքսանդր Մյասնիկյանը 1904 թվականից Մոսկվայի Լազարյան ճեմարանի սան էր: Այստեղ երիտասարդ մարքսիստի առջև նոր հորիզոններ են բացվում. նա ընկնում է հեղափոխական բուռն կյանքով շնչող մի միջավայր, որը մեծապես նպաստում է նրա գաղափարական ու քաղաքական հասունացմանը: Կարճ ժամանակամիջոցում Մոսկվայի հեղափոխական ուսանողության շրջանում նա աչքի է ընկնում իր ակտիվ գործունեությամբ, որը չի վրիպում ցարական ոստիկանության ուշադրությունից: Մոսկվայի նահանգական ոստիկանական վարչությունը 1906 թ. հրաման է արձակում նրան, որպես «վտանգավոր» մարդու, Մոսկվայից արտաքսելու մասին:

Լազարյան ճեմարանն ավարտելուց հետո Ալեքսանդր Մյասնիկյանը 1906 թ. որպես ՌՍԴԲ(բ)Կ անդամ մեկնում է Բաքու և շարունակում հեղափոխական աշխատանքը ծավալել Կովկասի բոլշևիկների շրջանում: Այստեղ նրա գործընկերներն էին ականավոր հեղափոխականներ Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը և ուրիշներ:

Ռեակցիայի դժնդակ տարիներին, որպես պրոֆեսիոնալ հեղափոխական գործիչ, Ալեքսանդր Մյասնիկյանը Բաքվի բոլշևիկյան կոմիտեի հանձնարարությամբ Բալախանիում, Բիբի-Հեյբաթում և նավթարդյունաբերական բանվորական այլ վայրերում անհաշտ պայքար է մղում մենշևիկների, էսէռների ու բուրժուաազգայնական կուսակցությունների դեմ: Նա հայերեն և ռուսերեն լեզուներով պարբերաբար հանդես է գալիս դասախոսություններով և զեկուցումներով բանվորական և ուսանողական շրջաններում, մասնակցում տեսական հարցերի քննարկումներին: Բաքվում նրա ունեցած ելույթների մասին հին բոլշևիկ Ա. Կարինյանը գրել է. «Նա կարողանում էր խոսել պարզ, հստակ, տրամաբանորեն: Նա անփոխարինելի տրիբուն էր ինչպես բանվորական, այնպես էլ ուսանողական շրջաններում»:

Ալ. Մյասնիկյանը 1909 թ. ընդունվում է Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և 1911 թ. առաջին կարգի դիպլոմով ավարտում տնտեսագիտական բաժինը: Նույն թվականին նա պարտադիր զինվորական ծառայության է կանչվում Մոսկվայի կայազորի զորամասերից մեկը, որտեղ շարունակում է անլեգալ հեղափոխական աշխատանքը: Ցարական բանակի պահեստի պրապորշչիկի կոչումով զորացրվելուց հետո մինչև առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը սկսվելը նա աշխատում է Մոսկվայում:

Բոլշևիկյան կուսակցության հանձնարարությամբ Ալ. Մյասնիկյանը 1914 թ. հուլիսին մեկնում է Կովկաս՝ կուսակցական աշխատանքի: Ռոստով քաղաքում նրան հասնում է պատերազմն սկսվելու լուրը: Պրապորշչիկ Ալ. Մյասնիկյանը զորակոչվում է զինվորական ծառայության և նշանակվում Սմոլենսկի նահանգի Դրոգոբիչ քաղաքի № 121 պահեստային գնդի գումարտակի հրամանատար:

Որպես պրոֆեսիոնալ հեղափոխական և ունենալով ընդհատակյա աշխատանքի հարուստ փորձ՝ նա Արևմտյան ռազմաճակատում ստեղծում է բոլշևիկների ընդհատակյա կազմակերպություն: Այն մեծ դեր է խաղում բոլշևիզմի գաղափարները զինվորների և հեղափոխականորեն տրամադրված սպաների մեջ տարածելու գործում: Ալ. Մյասնիկյանը ուսումնասիրում էր ռազմական արվեստը, ծանոթանում տարբեր երկրների բանակների տակտիկայի առանձնահատկություններին, վերլուծում ռուսական, գերմանական և ավստրիական դաշտային ծառայության կանոնագրքերը:

1917 թ. փետրվարի 27-ին Պետրոգրադի ապստամբ բանվորների և զինվորների հեղափոխական գրոհը տապալեց ցարական բռնակալությունը: Ռուսաստանում հաղթանակեց բուրժուադեմոկրատական հեղափոխությունը, կազմավորվեց բուրժուական ժամանակավոր կառավարություն: Փետրվարյան հեղափոխությունն իր ոլորտի մեջ ներգրավեց նաև Արևմտյան ռազմաճակատը:

1917 թ. մարտի 4-ին, առաջին անգամ լեգալ պայմաններում, հրավիրվում է Մինսկի բոլշևիկյան կազմակերպության, Արևմտյան ռազմաճակատի 3-րդ և 10-րդ բանակների ներկայացուցիչների միացյալ ժողով, որը ղեկավարում էին Մ. Ֆրունզեն, Ալ. Մյասնիկյանը և ուրիշներ: Մինսկում ստեղծվում են բանվորների և զինվորների դեպուտատների սովետ և ժամանակավոր գործադիր կոմիտե: Սովետի կուսակցական ֆրակցիաներից ամենաուժեղը բոլշևիկների ֆրակցիան էր: Ալ. Մյասնիկյանը ղեկավարում էր Մինսկի սովետը և ռազմաճակատի բոլշևիկյան ֆրակցիան:

Մ. Ֆրունզեի և Ալ. Մյասնիկյանի նախաձեռնությամբ ու ակտիվ մասնակցությամբ Մինսկում ձևավորվեցին մարտական հեղափոխական ջոկատներ, որոնք հետագայում կազմեցին Բելոռուսիայի հեղափոխական միլիցիայի միջուկը: Մասսաների հեղափոխական զգոնությունը բարձրացնելու, նրանց բոլշևիկների շուրջը համախմբելու, իմպերիալիստական պատերազմը դադարեցնելու, իշխանությունը սովետներին հանձնելու համար մղվող պայքարում զգալի դեր է կատարում Հյուսիս-արևմտյան մարզի և Մինսկի բոլշևիկյան կոմիտեի օրգան «Զվեզդա» թերթը, որի առաջին համարը լույս տեսավ 1917 թ. հուլիսի 27-ին: Թերթի խմբագիրն ու կազմակերպիչը Ալ. Մյասնիկյանն էր: Նա թերթի բոլոր համարներում «Ալյոշա», «Ալ. Մարտունի», «Բոլշևիկ» և «Ալ. Մյասնիկով» ստորագրությամբ հանդես էր գալիս զինվորական, կազմակերպչական և տեսական լուրջ հոդվածներով:

1917 թ. հուլիսի 26-ից մինչև օգոստոսի 3-ը Պետրոգրադում տեղի ունեցավ

բոլշևիկյան կուսակցության VI համագումարը, որին Մինսկի բոլշևիկյան և Արևմտյան ռազմաճակատի զինվորական կազմակերպություններից վճռական ձայնով մասնակցում էր նաև Ալ. Մյասնիկյանը:

Համագումարին Մյասնիկյանը զեկուցում է գալիք հեղափոխությանը նախապատրաստվելու Մինսկի և Արևմտյան ռազմաճակատի բոլշևիկների ծավալած աշխատանքի մասին: Այդ առթիվ համագումարը ընդունում է համապատասխան որոշում:

Համագումարի օրերին Ալ. Մյասնիկյանը Կովկասի պատգամավոր Ա. Ջափարիձեի հետ զրույց է ունենում, հետաքրքրվում երկրամասի գործերով: Նա ողջույնի նամակ է ուղարկում բոլշևիկյան «Սոցիալ-դեմոկրատ» թերթի խմբագրությանը և նշում, որ թերթի «հրատարակությունը հայ կյանքում շատ ուրախալի և քաղաքական հույժ կարևոր գործ է, անհրաժեշտ է հայ բանվորներին դաստիարակել սոցիալիստորեն , որպեսզի նրանք չվարակվեն օպորտունիստների ու սոցիալ հայրենասերների կործանարար թույնով»:

Կուսակցության VI համագումարից հետո Ալ. Մյասնիկյանը վերադառնում է Մինսկ: 1917 թ. օգոստոսի վերջերին, երբ Մ. Ֆրունզեն փոխադրվում է Իվանովո-Վոզնեսենսկ, Արևմտյան ռազմաճակատի աշխատանքի ղեկավարման ողջ ծանրությունն ընկնում է նրա վրա: 1917 թ. սեպտեմբերի 15-ին Մինսկում բացվում է ՌՍԴԲ(բ)Կ Հյուսիս-արևմտյան մարզային առաջին կոնֆերանսը, որը ղեկավարում էր Մյասնիկյանը: Այն քննարկում է մի շարք կարևոր հարցեր, որոնք բխում էին կուսակցության VI համագումարում սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման և անցկացման առթիվ ընդունված որոշումներից: Կոնֆերանսն ընտրում է ՌՍԴԲ(բ)Կ մարզային բոլշևիկյան կոմիտե՝ Մյասնիկյանի գլխավորությամբ:

Ալ. Մյասնիկյանի նախաձեռնությամբ 1917 թ. հոկտեմբերի 5—7-ը Մինսկում գումարվում է Արևմտյան ռազմաճակատի և բելոռուսական կուսակցական կազմակերպությունների Հյուսիս-արևմտյան մարզային երկրորդ կոնֆերանսը:

Կոնֆերանսը քննարկում է սովետների, կոմիտեների ընտրությունների, Սահմանադիր ժողովի, կուսակցության ծրագրի, ընթացիկ մոմենտի և ուրիշ հարցեր: Մի քանի հարցի մասին հիմնական զեկուցողը Մյասնիկյանն էր, որն իր ելույթները կազմել էր կուսակցության Կենտկոմի դիրեկտիվների հիման վրա: ՌՍԴԲ(բ)Կ Հյուսիս-արևմտյան մարզային կոմիտեի նախագահ դարձյալ վերընտրվում է Ալ. Մյասնիկյանը:

1917 թ. հոկտեմբերի 25-ին (նոյեմբերի 7-ին) Ռուսաստանում հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Հեղափոխության հաղթանակի արդեն հաջորդ օրը Մինսկում ևս հռչակվում է սովետական իշխանություն: Կոչ է արվում իշխանությունը գրավել նաև մյուս քաղաքներում և ամբողջ ռազմաճակատում: Նույն օրը Մինսկում ստեղծվում է Արևմտյան մարզերի ռազմահեղափոխական կոմիտե, որի նախագահ է ընտրվում Ալ. Մյասնիկյանը: Հոկտեմբերի վերջին սովետական իշխանություն է հաստատվում Բելոռուսիայի բոլոր հիմնական կենտրոններում՝ Մինսկում, Վիտեբսկում, Գոմելում, Օրշայում և այլ քաղաքներում ու նահանգներում:

Նոյեմբերի 19-ին կուսակցության Արևմտյան մարզային կոմիտեն հրավիրում է բանվորների և զինվորների դեպուտատների սովետի համագումար, որը, դատապարտելով մենշևիկների ու էսէռների պառակտողական քաղաքականությունը, միահամուռ հավանություն է տալիս սովետների II համագումարի և ժողովրդական կոմիսարների խորհրդի ընդունած դեկրետներին ու որոշումներին: Սակայն ռազմաճակատի բանակների և շտաբների ղեկավարությունը դեռևս գտնվում էր սովետական իշխանության նկատմամբ թշնամաբար տրամադրված հին հրամանատարության ձեռքին, որը գործադրում էր բոլոր միջոցները հեղափոխությունը կանխելու և պատերազմը շարունակելու համար: Այդ պատճառով էլ համագումարում դրված էր նաև Արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատար ընտրելու հարցը: Ռազմաճակատի գլխավոր հրամանատարն էր գեներալ Բալուևը, որը ձախողում էր ռազմահեղափոխական կոմիտեի կարգադրությունների և սովետական իշխանության որոշումների կատարումը: Համագումարում ՌՍԴԲ(բ)Կ Կենտկոմի և ՌԿԳԿ-ի անունից Գ. Օրջոնիկիձեն և Վ. Վոլոդարսկին Արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարի պոստում առաջադրում են Ալ. Մյասնիկյանի թեկնածությունը: Համագումարը միահամուռ նրան ընտրում է գլխավոր հրամանատար:



Սովետական իշխանության այդ ծանր օրերին Ալ. Մյասնիկյանը ղեկավարում էր Հյուսիս-արևմտյան մարզի միացյալ բոլշևիկյան կուսակցական կազմակերպությունները, Արևմտյան ռազմաճակատի և մարզի ռազմահեղափոխական կոմիտեն, Բելոռուսիայի բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետի գործադիր կոմիտեն և Արևմտյան ռազմաճակատը՝ իբրև գլխավոր հրամանատար: Նա իր բոլոր ուժերը նվիրաբերում է Բելոռուսիայում լենինյան դեկրետների կենսագործմանը, սովետական կարգերի հաղթանակին և ամրապնդմանը:

1917 թ. դեկտեմբերի 12-ին Ալ. Մյասնիկյանը նշանակվում է Սովետական Ռուսաստանի զինված ուժերի ժամանակավոր գերագույն գլխավոր հրամանատարի պաշտոնակատար՝ մնալով Արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարի և Բելոռուսիայի կուսակցական-սովետական ղեկավարի պատասխանատու պաշտոններում: Նա մեծ եռանդով ու թափով մոբիլիզացնում էր հեղափոխական զորքերը՝ սովետական իշխանության թշնամիների դեմ կռվելու և մեր երկիրն ինտերվենցիայից պաշտպանելու համար: Բուրժուաազգայնական, հակահեղափոխական ռադայի խռովությունը ճնշելու և բելոռուսական ժողովրդի հետագա պայքարը ղեկավարելու համար կուսակցության Կենտկոմը և սովետական կառավարությունը Ալ. Մյասնիկյանին նորից ուղարկում են Բելոռուսիա: Նա վճռական միջոցներ է ձեռնարկում հակաժողովրդական խռովությունները ջախջախելու և սովետական կարգերն ամրապնդելու համար:

ՌԿ(բ)Կ Կենտկոմը Ալ. Մյասնիկյանին շուտով տեղափոխում է Մոսկվա՝ կուսակցական և ռազմական պատասխանատու գործի: Այստեղ նա աշխատում է 1919 թ. գարնանից մինչև 1921 թ. սկզբները: Մոսկվան 1918 թ. մարտից դարձել էր սովետական երկրի մայրաքաղաքը: «Ձախ» էսէռների խռովությունը, քայքայված արդյունաբերությունը, հումքի և աշխատող ձեռքի պակասը, սովը և կարիքը մայրաքաղաքում առաջացրել էին բավականին լուրջ դժվարություններ: Պետք էր պայքար կազմակերպել սովետական իշխանության թշնամիների դեմ: Եվ ահա այդ պատասխանատու ժամանակաշրջանում մեր կուսակցության Կենտկոմը Ալ. Մյասնիկյանին առաջադրում է Մոսկվայի բոլշևիկյան կազմակերպության ղեկավար: Այդ շրջանում էլ Մյասնիկյանն ավելի շատ առիթ է ունենում հանդիպելու Լենինին, լսելու նրա խորհուրդներն ու ցուցումները, աշխատելու նրա հետ:

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում ծածանվեց սովետական իշխանության հաղթական դրոշը: Ռազմահեղափոխական կոմիտեն Հայաստանը հայտարարեց Սովետական Սոցիալիստական Հանրապետություն: Հայաստանում սովետական իշխանության հաստատման սկզբնական ժամանակաշրջանում զգացվում էր կադրերի, մանավորապես կուսակցական ու սովետական աշխատանքի փորձ ունեցող կադրերի, սուր կարիք: Այդ պայմաններում Հայաստանի կոմունիստական կուսակցությանը մեծ օգնություն ցույց տվեցին ՌԿ(բ)Կ Կենտկոմը և նրա կովկասյան բյուրոն: 1921 թ. մայիսի սկզբներին Կենտկոմի որոշմամբ Մոսկվայից Հայաստան աշխատանքի ուղարկվեցին Ալ. Մյասնիկյանը, Ս. Լուկաշինը (Սրապիոնյան) և ուրիշներ:

Հայաստան մեկնելուց առաջ Վ. Ի. Լենինն ընդունում է Ալ. Մյասնիկյանին, զրուցում նրա հետ, ցուցումներ ու դիրեկտիվներ տալիս Կովկասի կոմունիստների խնդիրների առնչությամբ: Մյասնիկյանն իր հետ բերում է Վ. Ի. Լենինի 1921 թ. ապրիլի 14-ի պատմական նամակը՝ ուղղված Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին: Այդ նամակում ուղիներ էին նշվում Կովկասի նորաստեղծ սովետական հանրապետությունների հետագա զարգացման համար:

Վ. Ի. Լենինի նամակը Կովկասի բոլշևիկների համար դառնում է գործողության ծրագիր:

Մոսկվայից Երևան գալիս Մյասնիկյանը 1921 թ. մայիսի 6-ին կանգ է առնում Թիֆլիսում: Այդ օրը նրան ներկայանում է Թիֆլիսում Սովետական Հայաստանի լիազոր-ներկայացուցիչ Դ. Շահվերդյանը և հանգամանորեն զեկուցում Հայաստանում

տիրող դրության, հանրապետության մատակարարման վիճակի, կոմունիստներին մոբիլիզացնելու ու Հայաստան ուղարկելու և բազմաթիվ այլ հարցերի մասին:

Ալ. Մյասնիկյանը Հայաստան է ուղարկվում այն ժամանակ, երբ երկիրը գտնըվում էր ռազմաքաղաքական և տնտեսական չափազանց բարդ իրադրության մեջ: Սովետական կարգերի հաստատումից հետո այն դեռևս դուրս չէր եկել արտաքին և ներքին թշնամիների դեմ մղվող պայքարից, չէին ամրապնդվել սովետական կարգերը: Երկրի ներքին կյանքում նույնպես կային լուրջ դժվարություններ. կուսակցական ու սովետական ապարատները դեռևս չէին ամրապնդվել, պետք է լուծվեին դժվարին խնդիրներ՝ ժողովրդական տնտեսությունը վերականգնելու, արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը քայքայված վիճակից դուրս բերելու համար: Հանդես գալով 1921 թ. մայիսի 9-ին Երևանում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ Սովետական Հայաստանի Ժողկոմխորհի առաջին նախագահ Ալ. Մյասնիկյանը շարադրում է իր տեսակետը հանրապետությունում ստեղծված վիճակի և դրանից դուրս գալու միջոցառումների մասին:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը և կառավարությունը ձեռնամուխ են լինում ժողովրդական տնտեսության վերականգնման և ժողովրդի կուլտուր-կրթական գործը կազմակերպելու դժվարին խնդրի լուծմանը: 1921 թ. սեպտեմբերին դեկրետ է հրատարակվում 16—50 տարեկան բոլոր քաղաքացիների անգրագիտությունը վերացնելու մասին: Ալ. Մյասնիկյանն այդ առթիվ գրում է. «Քաղաքին լուսավորությունը պետք է, պետք են նրա թանգարանները, թատրոնները ու համալսարանները, բայց ավելի մեծ անհրաժեշտություններ են թանգարանը, թատրոնն ու համալսարանը գյուղում, որ գրագիտություն բառով է բնորոշվում, առանց որի չկա նոր գյուղ, չկա գյուղացու բարեկեցություն... գրագիտությունը դուրս կբերի հայ գյուղը... նրա քսենոֆոնյան դարաշրջանից: ...Վարժապետների դարն անցել է: Մեզ պետք են հեղափոխական, պրոլետարական ու մարդասեր ուսուցիչներ... Ուսուցիչն է, որ երիտասարդության հետ միասին ստեղծելու և շինելու է նոր գյուղը» («Մարտակոչ», 1923 թ., № 131):

Դեռ անլեգալ հեղափոխական գործունեության տարիներից սկսած, առավել ևս սովետական իշխանության տարիներին, Ալ. Մյասնիկյանը սիստեմատիկաբար զբաղվում էր գրականության և արվեստի տեսության հարցերով, հանդես էր գալիս որպես ականավոր մարքսիստ-գրականագետ: Նրա գրական-տեսական մեծ ժառանգության մեջ զգալի տեղ են գրավում գրականության ու արվեստի, անցյալի հոգևոր ժառանգության օգտագործման ու գնահատման և սովետական մշակույթի ստեղծման հարցերը:

Իր կրթությունն ստանալով հայկական դպրոցներում՝ Ալ. Մյասնիկյանը հրաշալի տիրապետում էր մայրենի լեզվին, քաջածանոթ էր հայոց գրականությանն ու պատմությանը, միշտ հետաքրքրվում էր ազգային-ազատագրական շարժման, հայ աշխատավորության զարգացման պրոբլեմներով: Նա հայ իրականության մեջ առաջինն էր, որ զբաղվեց Մ. Նալբանդյանի հեղափոխական գործունեության վերլուծությամբ, վեր հանեց նրա դերը՝ որպես հեղափոխական դեմոկրատի, սոցիալիստի, մատերիալիստ փիլիսոփայի ու լուսավորչի: Հայ գրականագիտական մտքի պատմության մեջ իր ուրույն ու կայուն տեղն ունի Հովհաննես Թումանյանի ստեղծագործության վերաբերյալ Մյասնիկյանի մեծարժեք ուսումնասիրությունը:

ՌԿ(բ)Կ Կենտկոմը Կովկասի կոմունիստների առջև խնդիր էր դրել լայն աշխատանք կատարել բազմազգ ժողովուրդների միջև ճիշտ փոխհարաբերություններ ստեղծելու համար, հետևողականորեն կենսագործել ազգային հարցի վերաբերյալ կուսակցության X համագումարի դիրեկտիվները, որոնցում հատուկ շեշտված է Անդրկովկասի հարցը: Վ. Ի. Լենինը 1921 թ. ապրիլի 9-ին Գ. Օրջոնիկիձեին գրած նամակում պահանջում էր ստեղծել մարզային օրգան ամբողջ Անդրկովկասի համար, միավորել Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի ուժերը, օգտագործել տեղական ռեսուրսները: 1921 թվականին և 1922 թվականի սկզբներին ՌԿ(բ)Կ Կենտկոմի կովկասյան բյուրոն Գ. Օրջոնիկիձեի, Ս. Կիրովի և Ալ. Մյասնիկյանի ղեկավարությամբ հաջողությամբ կատարեց անդրկովկասյան հանրապետությունների ուժերը միավորելու վերաբերյալ կուսակցության Կենտկոմի դիրեկտիվները:

1921 թվականի նոյեմբերի 29-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմը քննարկում է Անդրկով-



կասյան ֆեդերացիայի կազմակերպման հարցը: Հաշվի առնելով Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի բանվորագյուղացիական լայն մասսաների և կոմունիստների կարծիքը՝ Կենտկոմը որոշում է ընդունում Անդրֆեդերացիայի կազմակերպման մասին և առաջարկում Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կուսակցական կենտկոմներին՝ անշեղորեն իրագործել այդ որոշումը: 1922 թ. փետրվարի 18-ին տեղի է ունենում Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների առաջին համագումարը, որն ընտրում է նրա ղեկավար կազմը (Գ. Կ. Օրջոնիկիձե, Ս. Մ. Կիրով, Ալ. Ֆ. Մյասնիկյան):

Կովկասյան բյուրոյի քաղաքական հաշվետվությամբ հանդես է գալիս Գ. Օրջոնիկիձեն, իսկ կուսակցական շինարարության մասին զեկուցումով՝ Ալ. Մյասնիկյանը:

Ալ. Մյասնիկյանը համագումարում հայտարարում է, որ կոմունիստական կուսակցությունը պետք է լիակատար կերպով բյուրեղյա մաքրություն ունենա, ազատ լինի ամեն տեսակի բացասական տարրերից: Համագումարը լիովին հավանություն է տալիս նրա ներկայացրած նախագծին:

Համագումարը քննարկում և հաստատում է Անդրկովկասյան հանրապետությունների սովետական ֆեդերացիայի նախագիծը՝ լիազորների կոնֆերանսին ներկայացնելու համար: Համագումարն ընտրում է ՌԿ(բ)Կ Անդրկովկասյան երկրային կոմիտե, որի նախագահության կազմում ընդգրկվում են Գ. Օրջոնիկիձեն, Ս. Կիրովը, Ալ. Մյասնիկյանը և ուրիշներ:

1922 թ. մարտի 12-ին գումարվում է Անդրկովկասի սովետական հանրապետությունների լիազորական կոնֆերանսը: Կոնֆերանսում Գ. Օրջոնիկիձեի և Ս. Կիրովի հետ միասին Ալ. Մյասնիկյանը ղեկավարում էր պատմական ակտի իրականացումը: Լիազորական կոնֆերանսը որոշում է կազմել Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի հանրապետությունների միություն:

Լիազորական կոնֆերանսն ընտրում է Անդրկովկասի հանրապետությունների միության իշխանության գործադիր մարմին՝ «Դաշնակցային սովետ»: Ալ. Մյասնիկյանը հաստատվում է Դաշնակցային սովետի նախագահ և բարձրագույն տնտեսական խորհրդի ղեկավար:

Սկսած 1922 թ. մարտից՝ Ալ. Մյասնիկյանն իր ուժերը հիմնականում կենտրոնացնում է Անդրկովկասյան երկրային կոմիտեում և անդրկովկասյան հանրապետությունների Դաշնակցային սովետում: Գ. Օրջոնիկիձեի հետ միասին ընտրում էր կադրեր, ձևավորում երկրային կոմիտեի բաժինները: Հիմնվում էին հանրապետությունների ժողկոմատները, սահմանվում էին նրանց իրավունքներն ու պարտականությունները:

1922 թ. օգոստոսին ՌԿ(բ)Կ Կենտկոմը կազմում է հանձնաժողով՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծման հարցերը մշակելու համար: Հանձնաժողովի կազմում մտնում էին նաև Գ. Օրջոնիկիձեն և Ալ. Մյասնիկյանը: 1922 թ. սեպտեմբերին Ալ. Մյասնիկյանը հրավիրվում է Մոսկվա՝ մասնակցելու հանրապետությունների Միություն կազմավորելու պատմական նախագծի մշակմանը: Հոկտեմբերի 6-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը հավանություն է տալիս ներկայացված նախագծին և անհրաժեշտ է համարում ստեղծել կամավոր, իրավահավասար հանրապետությունների միութենական պետություն, նշում է այդ Միության բարձրագույն մարմինների կառուցվածքն ու խնդիրները: Այդ օրերին Ալ. Մյասնիկյանը տեսակցություն է ունենում Վ. Ի. Լենինի հետ: Նրա վկայությամբ առաջնորդը աշխույժ կերպով հետաքրքրվում էր Կովկասին վերաբերող ամեն բանով:

1923—25 թթ. լինելով Անդրերկրկոմի քարտուղար և Անդրֆեդերացիայի Ժողովրդական կոմիսարների խորհրդի ղեկավարներից մեկը՝ Ալ. Մյասնիկյանը նոր ուժով դրսևորում է իր կուսակցական-կազմակերպչական և պետական, վարչական փայլուն տաղանդը, ղեկավարի անուրանալի ընդունակությունները: Նա մոտիկից շփվում էր ստեղծագործական մտավորականության հետ, մասնակցում կուլտուրական շինարարության գործին:

Հսկայական կարևորություն տալով ժողովրդական կրթությանը՝ որպես սոցիալիզմի կառուցման հիմնական նախապայմաններից մեկի, Ալ. Մյասնիկյանը գտնում

էր, որ ոչինչ չպետք է խնայել նոր դպրոցներ կառուցելու, ուսուցչական կադրեր պատրաստելու և նրանց կյանքի պայմանները բարելավելու համար:

Ալ. Մյասնիկյանը մեծ ուշադրություն է նվիրում նաև բուհական երիտասարդության կրթության ու դաստիարակության հարցերին: Անդրերկրկոմի պլենումներից մեկում նա խոսել է ուսանողության մեջ կատարվող աշխատանքի մասին, վերլուծել երիտասարդության կրթությունը կազմակերպելու գործի դրվածքը և առաջադրել խնդիրները: Չնայած իր բազմազբաղվածությանը՝ նա անդրկովկասյան կոմունիստական համալսարանում, որի ստեղծողներից էր, դասախոսություն էր կարդում մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն հարցերի վերաբերյալ:

Ալ. Մյասնիկյանը մեծ կարևորություն էր տալիս նաև կարմիր բանակի համար գրագետ կադրեր պատրաստելուն, գտնում էր, որ սոցիալիզմի երկրի բանակը պետք է համալրված լինի գրագետ և ռազմական արվեստին քաջատեղյակ կադրերով:

Իր ուժերի ծաղկման բուռն շրջանում ողբերգական պատահարը կտրեց Ալեքսանդր Մյասնիկյանի կյանքի թելը: 1925 թ. մարտի 22-ին այն ինքնաթիռը, որով Թբիլիսիից Սուխումի էր թռչում նա, աղետի ենթարկվեց:

Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից, սովետական ժողովուրդների բարեկամության ջատագով, հայ ժողովրդի արժանավոր զավակ Ալեքսանդր Մյասնիկյանի կյանքն ու գործունեությունը կոմունիստական կուսակցությանը, սոցիալիստական հայրենիքին անձնվիրաբար ծառայելու վառ օրինակ է: Այս բեկումնային ժամանակաշրջանում, երբ կուսակցությունը ձեռնարկել է սովետական հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման ստրատեգիայի իրականացմանը, մեզ համար ոգեշնչման տիպար են Ալեքսանդր Մյասնիկյանը և մյուս ականավոր լենինյանների պայծառ կերպարները:

Հ. ԱԶԱՏՅԱՆ

---

## Երիտասարդ գիտաշխատողի ամբիոն

# ԳԻՏԱԿԱՆԻ ԵՎ ԱՐԺԵՔԱՅԻՆԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՓԱՍՏԱՐԿՄԱՆ ՄԵՋ

Վ. ՄԻՆԱՍՅԱՆ

*ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, սոցիալ-տնտեսական, քաղաքական և գիտամշակութային բազմապիսի խնդիրներ նորովի առաջադրելու հետ միասին, մեծ տեղ հատկացրեց նաև գաղափարախոսական պրոբլեմներին, նշելով դրանց սերտ կապվածությունը կյանքի հետ: Այդ պրոբլեմներում առանձնահատուկ դեր և նշանակություն ունեն սովետական մարդկանց կոմունիստական աշխարհայացքի առավել ամրապնդումը, մարքս-լենինյան տեսության հիմնավորված, համոզիչ պրոպագանդան: Այդ գործում կարևոր է նաև փիլիսոփայական փաստարկման տեսության մշակումը, որը կոմունիստական աշխարհայացքի հիմնավորման, ժողովրդական մասսաների գիտակցության մեջ նրա արմատավորման կարևոր միջոց է:*

*Փիլիսոփայական փաստարկման ժամանակակից տեսության «կառուցման» արդյունավետ ուղիներից է մարքսիզմի դասականների, մասնավորապես, Վ. Ի. Լենինի ստեղծագործական ժառանգության, նրա փաստարկման սկզբունքների, հնարների հետազոտությունը: Այս առումով օգտակար է լենինյան փիլիսոփայական հիմնավորման գիտական և արժեքային տարրերի միասնության պրոբլեմի ուսումնասիրությունը: Ուստի նպատակահարմար է վերլուծել «փիլիսոփայական փաստարկման գիտական ասպեկտ» և «արժեքային ասպեկտ» հասկացությունները, այնուհետև անդրադառնալ դրանց միասնական կիրառությանը՝ գործառությանը, որպես լենինյան փիլիսոփայական հիմնավորման առաջացման, ձևավորման և գործառության անքակտելի մեթոդաբանական սկզբունք:*

*Գիտականության հասկացությունը ծագում է «գիտություն» ավելի ընդհանուր կատեգորիայից: Գիտական է համարվում մեր շրջապատի մասին այն գիտելիքը, որն իր բովանդակությամբ* օբյեկտիվ *է, հաստատված է պրակտիկայում: Այս առումով, փիլիսոփայական հիմնավորման գիտականություն ասելով պետք է հասկանալ նրանում օգտագործված փաստարկների, գաղափարների, դրանց «միաձուլման» մեթոդների և սոցիալական իրականության բովանդակային համապատասխանությունը: Այդպիսին է Վ. Ի. Լենինի տեսակետը, որը պարզորոշ արտահայտվում է «սուբյեկտիվ սոցիոլոգիայի» ներկայացուցիչներին քննադատելիս: Լենինը նշում է, որ «սուբյեկտիվ սոցիոլոգիայի» ներկայացուցիչները համապատասխան հասկացությունների բովանդակությունը սահմանում են որոշակի եզրահանգումներից ելնելով, սոսկ տրամաբանության ուժով: Մինչդեռ հարկավոր է հետազոտել կոնկրետ սոցիալական երևույթը (կամ գիտական պրոբլեմը), համակողմանիորեն վերլուծել այն, այլ ոչ թե սուբյեկտիվ սոցիոլոգների նման որպես մեթոդաբանական զենք օգտագործել ապրիորիզմը, աքսիոմատիկան, այսինքն՝ իրականությունը բխեցնել իրենց երազանքներից:*

*Վ. Ի. Լենինը նշում էր, որ սուբյեկտիվիստները իրենց դատողություն-*

գնահատման, լուծման, ձեռքբերման գործին։ Այդ պատճառով էլ փիլիսոփայական գիտելիքը ոչ միայն ճշմարտացիի և կեղծի գիտատրամաբանական չափանիշներով է գնահատվում կամ ընկալվում հասարակության, դասակարգերի, առանձին մարդկանց կողմից, այլև նրանց նպատակների, պահանջմունքների իրականացման ու բավարարման, նրանց համար օգտակար և ձեռնտու լինելու դիրքերից։

Վ. Ի. Լենինը համոզված է, որ գաղափարների ընկալումը անհատի կողմից իրականացվում է գիտելիքների յուրացման և դրանց գնահատման միաժամանակյա ակտի պրոցեսում։ «Պետք է հիշել Էնգելսի նշանավոր ասույթը,— գրել է նա,— «ֆորմալ տնտեսական իմաստով կեղծը կարող է ճշմարիտ լինել համաշխարհային պատմական իմաստով»» (ԵԼԺ, հ. 22, էջ 147)։ Նման դիալեկտիկական դիրքերից գնահատելով նարոդնիկների հայացքները, Վլադիմիր Իլյիչը նշել է. «Ֆորմալ տնտեսական իմաստով կեղծ նարոդնիկական դեմոկրատիզմը պատմական իմաստով ճշմարտություն է. կեղծ որպես սոցիալիստական ուտոպիա, այդ դեմոկրատիզմը ճշմարտությունն է գյուղացիական մասսաների այն յուրահատուկ պատմականորեն պայմանավորված դեմոկրատական պայքարի, որը բուրժուական վերափոխման անքակտելի տարրն ու նրա լիակատար հաղթանակի պայմանն է կազմում» (Նույն տեղը, էջ 148)։ Ակնհայտ է, որ ճշմարիտ և կեղծ գիտական չափանիշների հետ մեկտեղ Լենինը նկատի ունի նաև օգտակարության արժեքային չափանիշը, քանի որ թեպետև նարոդնիկների պայքարի անմիջական նպատակը սոցիալիզմը չէ, այդուհանդերձ, նրանց տեսական և պրակտիկ գործունեությունը ընդդեմ ռուսական ցարիզմի և հանուն դեմոկրատիայի, նպաստավոր է սոցիալիզմի հաղթանակի համար, օգնում է բոլշևիկներին։ Իհարկե, Լենինի դատողությունները, մտայնությունը օգտակարության վերաբերյալ, ի վերջո, հիմնվում են տվյալ պրոցեսի, պրոբլեմի գիտական ըմբռնման վրա, որը մասնավորապես ելնում է անցած դարի 60—70-ական թվականների Ռուսաստանի սոցիալ-տնտեսական և պատմաքաղաքական իրականության օբյեկտիվ վերլուծությունից։

Նարոդնիկների տեսական եզրահանգումների արժեքային տարրն ըստ Լենինի, նրանց փաստարկումներում զգացվող դասակարգային շունչը, հեղափոխական պաթոսը, զգացմունքներն ընդդեմ ֆեոդալիզմի, կրոնի և հանուն դեմոկրատիայի հաղթանակի կարող են և պետք է օգտագործվեն բոլշևիկների կողմից, քանի որ դրանք սատարում են մարքսիստներին՝ ֆեոդալիզմի և բուրժուազիայի դեմ մղած պայքարում։ Այսպիսով, փիլիսոփայական փաստարկման արժեքային տարրերը սերտորեն առնչվում են մարքս-լենինյան փիլիսոփայության կուսակցականության սկզբունքի հետ։ Փաստարկողի կուսակցականությունը այն հիմնական «կամուրջն է», որի շնորհիվ նրա անհատական-հոգեբանական հատկանիշները (այդ թվում զգացմունքները, հույզերը, կամքը, խառնվածքը և այլն) տեղափոխվում են դեպի հասարակական պրակտիկա և, որ կարևոր է, իրականացվում են այնտեղ։

Կուսակցականությունը ոչ միայն փիլիսոփայական հիմնավորման, այլև առհասարակ փիլիսոփայական գիտելիքի գոյատևման և գործառության անհրաժեշտ պայմանն է, քանի որ նա է բնորոշում նրա գործնականությունը և պիտանիությունը հասարակական տվյալ դասակարգի, խմբի կամ անհատի համար։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ դիալեկտիկական մատերիալիզմի կուսակցականությունը պարտադրում է պրոլետարական գաղափարախոսությանը (և հետևաբար՝ նրա փաստարկմանը) ելնել այս կամ այն դասակարգի, հասարակական խմբի շահերից, պահանջմունքներից և նպատակներից, և այս կամ այն սոցիալական երևույթը, գիտական հայտնագործությունը, փիլիսոփայական պրոբլեմը գնահատելիս չանտեսել նրա սոցիալական հետևանքները, որովհետև կուսակցականությունը «բարձր զարգացած դասակարգային հակադրությունների արդյունքն է և քաղաքական արտահայտությունը», քաղաքական գիտակցության զարգացածությունն ու դասակարգային խմբավորման հստակությունը, «բարձր զարգացած դասակարգային պայքարի ուղեկիցն ու հետևանքը» (տե՛ս ԵԼԺ, հ. 13, էջ 334, հ. 19, էջ 134, հ. 12, էջ 159)։



Այսպիսով, փիլիսոփայական փաստարկումը, որպես փիլիսոփայական գիտելիքի ներդրման, պրակտիկ իրացման միջոց, անհրաժեշտորեն կրում է կուսակցականության կնիքը, որն իր ցայտուն արտահայտությունն է գտնում նրա արժեքային տարրերում։ Եվ պատահական չէ, որ փիլիսոփայական փաստարկումը դեռևս իր նախահիմքում հանդես է գալիս որպես իմացական և արժեքային տարրերի ներդաշնակությունից զուրկ փիլիսոփայական երևույթ, որտեղ արժեքայինը գերիշխում է իմացականի վրա։ Այդ պատճառով էլ փիլիսոփայական փաստարկման արժեքային տարրերը ենթադրում են անհատական նպատակներ, դասակարգային, կուսակցական դրդապատճառներ։ Դրա համար կան բոլոր անհրաժեշտ պայմանները, որովհետև «ոչ մի կենդանի մարդ չի կարող այս կամ այն դասակարգի կողմնակից չդառնալ (քանի որ հասկացել է նրանց փոխհարաբերությունները), չի կարող չուրախանալ տվյալ դասակարգի հաջողությամբ, չի կարող չվշտանալ նրա անհաջողություններով, չի կարող չզայրանալ նրանց վրա, ովքեր թշնամի են այդ դասակարգին, նրանց վրա, ովքեր հետամնաց հայացքներ տարածելով խանգարում են նրա զարգացմանը և այլն, և այլն» (ԵԼԺ, հ. 2, էջ 684)։

Այդպիսով, լենինյան փիլիսոփայական հիմնավորման արժեքային տարրերի բովանդակությունն են կազմում փաստարկողի սոցիալ-աշխարհայացքային դիրքորոշումները, անհատական-հոգեբանական հատկանիշները (այդ թվում զգացմունքները, հույզերը, կամքը, խառնվածքը և այլն), որոնք փաստարկմանը հաղորդում են նպատակաուղղվածություն և արդյունավետություն սոսկ այն ժամանակ, երբ արտահայտվում են կուսակցականության սկզբունքում, որը լենինյան փիլիսոփայական փաստարկման արժեքային տարրերի արտահայտման ամենավճռական և հիմնարար միջոցն է։ Սակայն, անշուշտ, չի կարելի նույնացնել կուսակցությունն ու արժեքայինը, ինչպես նաև չի կարելի դրանք տարանջատել։

Գիտականի կամ արժեքայինի «գերակշռումը» այս կամ այն փաստարկման մեջ տակավին չի վկայում նրանցից որևէ մեկի լիիրավ «մենիշխանությունը» նույն փաստարկման շրջանակներում, որովհետև մարդը ինչպիսի սոցիալ-տնտեսական, քաղաքական և պատմական իրադրության մեջ էլ իրականացնի իր կենսագործունեությունը (նաև համապատասխան փաստարկումը), չի կարող շրջանցել այնպիսի երևույթներ, ինչպիսիք են անհատական-հոգեբանականը, սոցիալ-արժեքայինը և գիտատրամաբանականը։ Մյուս կողմից, փիլիսոփայական փաստարկման գիտական և արժեքային տարրերի օրգանական միասնությունն ունի խոր սոցիալ-տնտեսական արմատներ։ Արտադրահարաբերությունների և արտադրաուժերի զարգացման դիալեկտիկան և նրա ազդեցությունը հասարակական գիտակցության վրա (որի միջոցով նաև անհատական գիտակցության վրա) պայմանավորում և դետերմինավորում են նրա բովանդակային տարրերի ներդաշնակությունը կամ անհամամասնությունները նաև փիլիսոփայական փաստարկման գիտական և արժեքային բաղադրամասերի տեսանկյունից։ Մարքս-լենինյան փիլիսոփայական հիմնավորմանը խորթ է ամեն մի սուբյեկտիվություն, արժեքային տարրերի գերագնահատում կամ հասարակական կեցության խեղաթյուրված արտացոլում։ Անտարակուսելի է, որ իմացության և, իհարկե, փիլիսոփայության պրոգրեսիվ զարգացման միտումները ևս հանգեցնում են փաստարկման գիտական և արժեքային տարրերի «միաձուլմանը»։

Գիտականը և արժեքայինը մարքս-լենինյան փիլիսոփայական գիտելիքի անբաժան տարրերն են, սակայն ոչ թե որպես նրա տարբեր ասպեկտները, այլ դրանք նրա ձևավորման և գործառության «ելակետերն» են։ Դա հասկանալի է, քանի որ մարքս-լենինյան փիլիսոփայության առանձնահատկություններից է արժեքաաշխարհայացքային և գիտական տարրերի միասնությունը։ Իրականության ըմբռնումը դիալեկտիկական մատերիալիզմը մշակում և ձևավորում է մարդկության ամբողջական փորձի հիման վրա, որպես գիտելիքների մեջ սոցիալ-պատմական իրականության արտացոլում և, մյուս կողմից, որպես իրականության նկատմամբ մարդու ունեցած պրակտիկ-հոգե-

բանական, արժեքային և էթիկաէսթետիկական հարաբերություն (տե՛ս (Философия и ценностные формы сознания. с. 27)։ Պրոլետարիատի դասակարգային նպատակները, շահերը նույնական են ողջ հասարակության պրոգրեսիվ զարգացման միտումները բնութագրող շահերի և նպատակների հետ, իսկ դա այն սոցիալ-աշխարհայացքային հիմքն է, որի վրա կազմավորվում են փիլիսոփայական գիտելիքը և նրա փաստարկումը։ «Մի՞թե սա խավարամտություն չէ,— գրում է Լենինը, նկատի ունենալով մարքսիզմի ռուսական թևի ներկայացուցիչներին,— երբ զուտ տեսությունը խնամքով սահմանազատվում է պրակտիկայից, երբ դետերմինիզմը սահմանափակվում է «հետազոտության» բնագավառով, իսկ բարոյականության հասարակական գործունեության բնագավառում, մնացած բոլոր բնագավառներում, բացի «հետազոտությունից», հարցը թողնվում է «սուբյեկտիվ» գնահատությանը» (ԵԼԺ, հ. 18, էջ 244)։ Ակներև է, որ օբյեկտիվ, գիտական հետազոտությունը և սուբյեկտիվ գնահատականները ճանաչողության պրոցեսի անհրաժեշտ տարրերն են։ Դա հասկանալի է, քանի որ եթե գիտափիլիսոփայական հետազոտությունը պարտադրում է, նախ և առաջ, օբյեկտիվություն, ապա այդ հետազոտության արդյունք հանդիսացող ճշմարտությունը ենթադրում է ոչ միայն օբյեկտիվ գնահատություն, այլև «կուսակցական» պաշտպանություն։

Լենինյան փիլիսոփայական փաստարկման գիտականությունը որպես սոցիալական իրականության օբյեկտիվ արտացոլման արդյունք, որպես «սուբյեկտիվ օբյեկտիվություն» պայմանավորում է նրա արժեքային տարրերը։ Իրենց հերթին փաստարկման արժեքային տարրերը պայմանավորում են նրա գործառությունը որպես որոշակի գիտելիքների մի ամբողջական համակարգ։ Արժեքայինը և գիտականը իրենց միասնությունը գտնում են ոչ թե մի ինչ-որ երրորդ բանի մեջ, այլ ընդհակառակը, դրանք բնութագրում են լենինյան փիլիսոփայական հիմնավորման էությունը։ Լենինյան փիլիսոփայական փաստարկումը գործուն է, ակտիվ, քանի որ մարդու հարաբերությունը իրականության հետ դիտում է որպես դասակարգային հարաբերություն։ Ինչ վերաբերում է մախիստական, սուբյեկտիվ-իդեալիստական փիլիսոփայական փաստարկմանը, ապա նրան բնորոշ է սպեկուլյատիվիզմի (ոչ գիտականության) և բուրժուական կուսակցականության միասնությունը։ Բուրժուական փիլիսոփայական փաստարկման «գիտական» և արժեքային տարրերի նման միասնությունն ավելի ցայտուն է դրսևորվում մարքսիզմ-լենինիզմի նրանց «զըտումներում»։

Փիլիսոփայական փաստարկման տեսության առաջադրումը մեր օրերում արդյունք է նաև բուրժուական փիլիսոփաների որոշ մասի կողմից նեոպոզիտիվիստական հավակնությունների նկատմամբ ունեցած հակազդեցության։ Խոսքն այն մասին է, որ նեոպոզիտիվիստները, փիլիսոփայությունը համարելով սոսկ աշխարհայացք, «մետաֆիզիկա» և նրան զրկելով ամեն մի գիտականությունից, բացառում են, այդ պատճառով, նրա՝ հասարակության մեջ որևէ գիտական դեր ու նշանակություն ունենալու առաքելությունը։ Մինչդեռ փիլիսոփայական փաստարկումը փիլիսոփայությանը կարող է հաղորդել այնպիսի ստատուս, որը նրան կվերածի սոցիալական ներգործության հզոր գործոնի։ Նման պարագաներում առաջին պլան են մղվում գիտելիքի ոչ այնքան գիտատրամաբանական տարրերը, որքան աշխարհայացքային և սուբյեկտիվ նախահիմքերը։ Վերջինս առավելապես աղերսներ ունի փիլիսոփայական փաստարկման արժեքային տարրերի ֆունկցիոնալ նշանակությունից և պատահական չէ, որ փիլիսոփայական հիմնավորման հոգեբանականացումը, սուբյեկտիվ-անհատական բնութագրիչների բացարձականացումը (զգացմունքային, հուզական, կամային և այլն) դառնում է տիպական ժամանակակից բուրժուական փիլիսոփայության փաստարկման համար։

Ժամանակակից բուրժուական փիլիսոփայությունը փորձում է պահպանել, հնարավորության սահմաններում կենդանացնել և նորի անվան տակ մատուցել իրենց դարն ապրած փիլիսոփայական գաղափարները, հայացքները և



դրանց փաստարկումները։ Դրա սոցիալ-տնտեսական և պատմաքաղաքական որոշարկվածությունն այն է, որ ժամանակակից բուրժուական գաղափարախոսությունը փորձում է արդարացնել կապիտալիստական հասարակական և արտադրական հարաբերությունները, ամեն կերպ պահպանել, ամրապնդել և զարգացնել դրանք։ Այդ պատճառով էլ ժամանակակից բուրժուական փիլիսոփայական հիմնավորումը իրականության ճշգրիտ, գիտական արտացոլմամբ շահագրգռված չէ, այլ, ընդհակառակը, իրենց փաստարկումներում բուրժուազիայի գաղափարախոսները կեղծում ու ենթափոխում են գոյություն ունեցող սոցիալ-քաղաքական, տնտեսական երևույթների իմաստը։ Դրան հակառակ, մարքս-լենինյան փիլիսոփայական փաստարկման արժեքայնությունը, օրինակ, դրսևորվում է նրա կոնկրետության, ժամանակաշունչ լինելու, նորը, առաջավորը նշմարելու և օգտագործելու մեջ։ Այդ պատճառով էլ Վ. Ի. Լենինը նշել է, որ «չի կարելի պատրանքներով տարվել, առասպելներ ստեղծել իր համար— պատմության մատերիալիստական ըմբռնումը և դասակարգային տեսակետը անպայման թշնամի են դրան» (ԵԼԺ, հ. 10, էջ 263)։

Այսպիսով, լենինյան փիլիսոփայական հիմնավորման գիտականությունը արտահայտում է նրա բովանդակության օբյեկտիվությունը, նրա՝ որպես իրականության համարժեք արտացոլում լինելը։ Վ. Ի. Լենինի փիլիսոփայական փաստարկման արժեքային տարրերը սերտ կապի մեջ են փաստարկողի աշխարհայացքի, ինչպես նաև անհատական-հոգեբանական բնութագրիչների հետ, որոնք հասարակականորեն արդյունավետ են դառնում սոսկ այն ժամանակ, երբ արտահայտվում են մարքս-լենինյան կուսակցականության սկզբունքի մեջ։ Լենինյան փիլիսոփայական փաստարկման գիտական և արժեքային տարրերի միասնությունն արտահայտվում է ոչ թե մի ինչ-որ երրորդ «բանի» մեջ, այլ բնութագրում է նրա էությունը։ Դա մի սկզբունք է, որն ունի իր սոցիալ-տնտեսական, քաղաքական արմատները և ամեն մի գիտական փիլիսոփայական փաստարկման գործառության անհրաժեշտ պայմանն է։

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում ասված է, որ «գաղափարախոսական գործունեությունը պետք է աչքի ընկնի գաղափարատեսական խոր բովանդակությամբ և լայն իրազեկությամբ, լրիվ և ճշգրիտ հաշվի առնի ներքին և միջազգային կյանքի իրողությունները, աշխատավորների աճած հոգևոր պահանջմունքները, լինի **սրտամոտ, ճշմարտացի և հասկանալի**» (ընդգծումը իմն է— Վ. Մ.)։ Այս հասկացությունները բնորոշում են նաև փիլիսոփայական փաստարկման գիտական և արժեքային տարրերի միասնական գործառությունը։

# ՍԵՎ ԱՆՏԱՌԻ ՎՐԻԺԱՌՈՒՆ

## ԳԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

...Կատաղի մարտն ավարտվել էր: Սովետական շրջապատված զորամասերի ցաքուցրիվ խմբերից մեկի կազմում փախչում էր և կրտսեր քաղաքխատող Գալուստ Ստեփանյանը: Դիմադրելն այլևս անիմաստ էր եղել ու փոքր խմբերով փորձում էին դուրս պրծնել շրջապատման օղակից, խուսափել գերությունից: Ձախ ձեռքի ծանր վերքն էլ մի կողմից էր նեղում (մինչև օրս էլ գնդակը մարմնի մեջ է):

Ազատվելու հույսի նշույլ կար. մի քանի տասնյակ քայլ այն կողմ ձորակն էր, կարող էին պատսպարվել: Բայց, ավաղ, չար բախտը, ասես, կրկնակողմ հետևում էր փախչողներին: Այն է՝ ուզում էին մտնել ձորակ, երբ հայտնըրվեցին գերմանական զինվորները՝ դաժան ու լպիրշ: Ավտոմատների փողերն ուղղեցին փախչողների կողմը: Թնդացին կրակահերթերը ու արձագանքվեցին ձորակում... Գալուստը սուր ցավ զգաց աջ ոտքին, աչքերի առջև ասես շրջապատը մեկեն խավարեց, կացնահար ծառի պես տապալվեց գետին... Երբ ուշքի եկավ, իրեն գտավ անծանոթ շրջապատում, դեմը՝ կեռխաչավորներ: Գլխի ընկավ, որ գերվել է, մի բան, որից այնքա՞ն խորշում էր շրջապատման մեջ եղած ծանր ժամերին...

...Վիրավոր ռազմագերիների երկար շարասյունը հյուծված ու հոգնաբեկ քայլում էր անհայտ ուղղությամբ: Ճանապարհը երիզել էին ուկրաինացի կանայք, ծերերն ու երեխաները. ամեն մեկը կամենում էր գտնել իր հարազատին կամ մի կտոր հացով, մի բաժակ ջրով օգնել գերիներին:

Գերմանացիները, սակայն, ուժեղ հսկողություն էին սահմանել ու արգելում էին մոտենալ գերիներին, խոսք փոխանակել նրանց հետ: Բայց փույթ չէ, ուկրաինացի տարեց մի կին խիզախում ու մխրճվում է շարասյան մեջ, գրկում հայորդի Գալուստ Ստեփանյանի գլուխը և մայրենի լեզվով արտասվախառն արտաբերում.

— Գրիշա՛, Գրիգորի՛, որդի՛ս, վերջապես տեսա քեզ:

Երևի թե նմանեցրել էր իր տղային կամ պարզապես կամենում էր մի օտար սևահեր երիտասարդի փրկել գերությունից ու մայրություն անել նրան: Ո՞վ իմանա: Բայց կարո՞ղ ես չարժել մարդակերների գութը: Թշնամին դաժան ու անզիջում էր: Ո՛չ կնոջ թախանձանքները, ո՛չ էլ նրա առատ արցունքները չարժանացան ֆաշիստների կարեկցանքին: Դեռ ավելին՝ նրանցից մեկը ոտքի ուժգին հարվածով կողմ շպրտեց տարեց կնոջը:

Տանջահար քայլում էր երիտասարդ Գալուստն ու երդվում վրեժ լուծել թշնամուց նաև ուկրաինացի որդեկորույս մոր համար ու նրա Գրիշա—Գրիգորի որդու փոխարեն, նաև նրա անունով...

## ՓԱԽՈՒՍՏ

...Եղավ ռազմագերիների տարբեր ճամբարներում՝ Բելայա Ցերկով, Բելսկ Պոդլյասկի, Պուլավի, Ալեքսանդրիա քաղաքներում, Զնամենկա կայարանում: Եվ ամենուրեք փախչելու միտքը չլքեց նրան: Փախչել ու վրեժ լուծել ֆաշիստական բորենիներից՝ ավերված քաղաքների ու գյուղերի, անմեղ զոհերի համար— այս էր Գալուստ Ստեփանյանի գերագույն նըպատակը:

Մենության պահերին, երբ ինքն իր հետ էր լինում, հաճախ էր մտքով տեղափոխվում հայրենի բնօրրան՝ Արտաշատի շրջանի Գետազատ գյուղ, ուր անցկացրել էր իր մանկությունն ու պատանեկությունը, հիշում իր հարազատներին ու բարեկամներին և հատկապես սիրասուն մորը: Ախր մայրը որդուն կարմիր բանակ ծառայության ճամփելիս բարեմաղթեց. «Որդի՛ս. թող կռիվ չտեսնես: Քեզ լավ նայիր ու պահպանիր»: Հիշում էր հարևան գյուղի՝ Ներքին Դվինի, իր սաներին, որոնց սրտերում հայրենասիրության կրակ էր վառում պատմության դասաժամերին: «Սիրեցեք երկիր հայրենին, Հայրենիքը ամենաթանկ բանն է մարդու համար»,— սիրում էր կրկնել աշակերտներին: Հաճախ էլ աչքերի առջև, ասես կինոժապավեն, անցնում էին պատերազմի փոքր ու մեծ դրվագները: Տասնմեկ ամիս զործող բանակում էր ու բազում անգամ էր վայելել մեր զորքերի հակահարձակման հաջողության բերկրանքը, ճաշակել նահանջի դառնությունը: Ու դառնությամբ էլ հիշում էր 1942-ի ապրիլյան շրջապատման ծանր օրերը, երբ մեր զորքերը դիմակայում էին թվով ու սպառազինությամբ մի քանի անգամ գերազանցող թշնամուն, կենաց-մահու կռիվ մղում մեծախարկովյան հողի համար: Բայց ինչ արած, ուժերն անհավասար էին...

Ամեն անգամ այս հիշողություններից հետո ասես մի ծանրություն էր կախվում Գալուստի հոգնած ուսերից և սիրտը կծկվում էր անասելի ցավից ու ամոթից: «Փախչել ու վրեժ լուծել ֆաշիստներից». այս միտքը ասես վերականգնում էր նրա կենսական ուժերը: Համբերատարությամբ տոկում ու սրտում փայփայում էր փախչելու թաքուն հույսը:

Եվ Բելայա Ցերկովում էլ Գալուստ Ստեփանյանի մոտ միտք հղացավ ստեղծել ընդհատակյա հակաֆաշիստական կազմակերպություն: Գտավ նաև համախոհներ: Մտքեր փոխանակեցին փախուստ կազմակերպելու շուրջ: Սակայն տակավին չէին հասցրել լուրջ քայլերի դիմել, երբ ռազմագերիներին տեղափոխեցին լեհական Բելսկ Պոդլյասկի, ապա՝ Պուլավի քաղաք:

Պուլավի: Այս քաղաքը հայտնի է սովետական ռազմագերիների՝ իրար հաջորդած հակաֆաշիստական ընդհատակյա կազմակերպությունների ակտիվ գործունեությամբ: Գերմանացիներն այստեղ հայ ռազմագերիներից լեգիոն էին ստեղծել: Եվ հայկական լեգիոնի զինվորները ևս անմասն չմնացին ընդհատակյա աշխատանքից: Հիմնական կազմակերպիչը Գալուստ Ստեփանյանն էր: Կազմակերպության ակտիվ անդամներից էին գորիսցի Սիմոն Գյուրջյանը, մարտունեցի Հայկազ Թերզյանը, երևանցի Գեորգի Զախարյանը, ղափանցի Գաբրիել Աղախանյանը, նոյեմբերյանցի Երեմ Գուլքանյանը:

Ընդհատակյա կազմակերպությունն ուներ հստակ նպատակ՝ բարձր պահել սովետական ոգին ռազմագերիների մեջ: Նրա ղեկավարությունը կապ էր հաստատել տեղի ընդհատակյա կազմակերպության հետ և պարբերաբար ստանում էր Սովինֆորմբյուրոյի հաղորդագրությունները ու դրանց իրազեկ պահում ռազմագերիներին:

Փախուստի ծրագրեր էին մտմտում, բայց չհաջողվեց իրագործել: Գերմանացիներն ընկան ընդհատակայինների հետքերի վրա ու շատերին ձերբակալեցին: Գալուստ Ստեփանյանի կյանքը նույնպես մազից էր կախված: Միայն երջանիկ պատահականությունը փրկեց նրան հնարավոր ահեղ դատաստանից:

Այդ դեպքերն էլ առիթ դարձան հայ ռազմագերիներին տեղափոխելու Ուկրաինա, Կիրովոգրադի մարզի Ալեքսանդրիա քաղաք: Դա 1943-ի մայիսի վերջերին էր: Հայ լեգիոներներին այստեղ էին բերել երկաթուղային կայարանները պաշտպանելու նպատակով: Եվ նրանք ներգրավված էին Հայկական լեգիոնի երրորդ գումարտակում:

Սակայն հայ ռազմագերի-լեգիոներների ներնշող մասը տակավին հոգեպես չէր ընկնվել: Հայրենի սերը անշեջ կրակի նման բոցկլտում էր նրանց սրտերում, ու նրանք ընդգրկվեցին հակաֆաշիստական ընդհատակյա շարժման մեջ: Այդ ժամանակ Կիրովոգրադի մարզում գործում էին ընդհատակյա կազմակերպություններ, իսկ Սև և մյուս անտառներում՝ պարտիզանական ջոկատներ: Նրանց գործողությունները ղեկավարում էին կուսակցության ընդհատակյա մարզկոմի քարտուղար Միխայիլ Միխայլովիչ Սկիրդան և Վորոշիլովի անվան պարտիզանական ջոկատի հրամանատար Իլյա Դանիլովիչ Դիբրովը:

Մի անքակտելի գաղտնի կապ էր հաստատվել երկու ընդհատակյա կազմակերպությունների միջև: Ամեն մի կայարանում ռազմագերիների ընդհատակյա խմբի ղեկավար կար: Ծյուղավորված համակարգը գործում էր հստակորեն, խստագույն գաղտնիության պայմաններում: Դրսի հետ կապն իրականացվում էր հույժ կոնսպիրատիվ կերպով, կապավորների ու տեղի ընդհատակայինների միջոցով: Այսպես, Ալեքսանդրիա քաղաքի ընդհատակյա կազմակերպության ղեկավարներից մեկը՝ Պյոտր Մարկովը, աշխատում էր ալրաղացում, Գրիշա և Անդրեյ Բադինները ծառայում էին գերմանացիների մոտ ու վստահություն էին շահել: Հիանալի կապավորներ էին Կարպովի դուստր Ռայան, Դիբրովի դուստր Լյուդմիլան, նրա ազգականուհի Մայա Սավչենկոն:

Ռազմագերի ընդհատակայինները կուսակցական մարզկոմից դիվերսիոն ակտերի առաջադրանքներ, Սովինֆորմբյուրոյի հաղորդագրություններ էին ստանում և զենք, պարեն ու դեղորայք էին ուղարկում անտառ՝ պարտիզաններին: Եվ, իրոք, այդ օրերին երկաթուղային կայարաններում դիվերսիաները հաջորդում էին իրար: Մեկ էլ լուր էր տարածվում, թե գերմանական ժամապահներ են սպանվել, կատարվել են պայթեցումներ, թալանվել են պահեստները: Դրանց հեղինակները ռազմագերիներն էին, որոնք ամեն ինչ անում էին պարտիզանների անվան տակ ու նրանց հետ: Այդ հանգամանքն էլ նրանց զերծ էր պահում կասկածանքից ու բացահայտումից:

Հետագայում, հանգամանքների պահանջով Ալեքսանդրիայի պարտիզանական ընդհատակյա կազմակերպության ղեկավար Պյոտր Իվանովիչ Մարկովը, անդամներ Յակով Պրոկոֆևիչ Բայբարաշը և Գրիգորի Սեմյոնովիչ Բադենը պիտի թղթին հանձնեին հետևյալ տողերը. «1943 թվականի մայիս ամսվա վերջերին Ալեքսանդրիա ժամանեց այսպես կոչված Հայկական լեգիոնի III գումարտակը, որը ստեղծել էին գերմանացիները հայ ռազմագերիներից: Նշված գումարտակի ժամանման առաջին իսկ օրերից մենք իմացանք, որ ռազմագերի լեգիոներների գերակշիռ մասը շարունակում է հայրենասեր մնալ և ընդհատակյա աշխատանք է տանում գերմանական զավթիչների դեմ, պատրաստ է փախչելու պարտիզանների մոտ: Հետագայում մենք իմա-

ցանք, որ լեգիոնում կա սովետական հայրենասերների ընդհատակյա կազմակերպություն, որի ղեկավարը Գալուստ Ռուբենի Ստեփանյանն է, իսկ ակտիվ անդամներից են Զարե Աբրահամյանը, Երեմ (Վերան) Գուլքանյանը, Սմբատ Գևորգյանը և ուրիշներ»: Այնուհետև հավաստվում է, որ վերը նշված ընկերները հաճախ էին դիմում իրենց պարտիզանական ընդհատակյա կազմակերպության ղեկավարությանը՝ պարտիզանների մոտ փախչելուն օգնելու խնդրանքով: Եվ որ սկզբում Ալեքսանդրիայի ընդհատակյա կազմակերպությունը ձեռնպահ էր մնում, որպեսզի փորձի նրանց ընդհատակյա աշխատանքում և նրանց միջոցով զենք ձեռք բերի պարտիզանական ջոկատների համար: Հավաստվում է նաև, որ 1943-ի հունիս ամսից մինչև սեպտեմբեր անձամբ ընկ. Ստեփանյանը և վերը նշված ընկերները մշտական կապ են պահպանել Ալեքսանդրիա քաղաքի ընդհատակյա կազմակերպության հետ և վերջինիս հանձնարարությամբ կատարել մի շարք դիվերսիոն ակտեր: Ահա դրանք՝ Ալեքսանդրիայի կայարանում փչացվել են հակատանկային հրանոթն ու ավտոմեքենան, հրդեհվել է երկու վագոն և խափանվել գնացքների շարժումը, Ալեևկա կայարանի մոտ հրդեհվել է վառելիքով լի երկու ցիստեռն, Զնամենկա քաղաքում Աշոտ Գյոզալյանը սպանել է մեկ ենթասպայի և մեկ պոլիցայի, Զնամենկա կայարանի մոտ կազմակերպվել է գնացքի խորտակում, Ալեքսանդրիա, Զնամենկա քաղաքներում և Կորոլևկա կայարանում հաճախ գերմանացիներից ձեռք են գցել զենք, զինամթերք ու դեղորայք և հանձնել պարտիզանական ընդհատակյա կազմակերպությանը՝ Բայբուրաշի, Կրավեցի, Բաղենի, Ռոժկոյի, Գուբարևայի և ուրիշների միջոցով անտառ ուղարկելու համար: Պարտիզանների մոտ փախչելիս Հայկազ Թերզյանը Գ. Ս. Բաղենի հետ սպանել է երեք գերմանացի և ոչնչացրել 45 միլիմետրանոց երկու հրանոթ: Ալեքսանդրիա քաղաքում հաճախ օգնել են բնակչությանը՝ թալանելու գերմանական պահեստները և պարենամթերքի ու հագուստի վագոնները: Չորս անգամ աջակցել են ընդհատակյա պարտիզանական կազմակերպությանը՝ Ալեքսանդրիա և Կորիստովկա քաղաքներում ազատելու երիտասարդությանը գազանային շուրջկալից:

Ֆաշիստները սակայն միամիտ ու քնած չէին: Կասկածում ու ընկնում են հետքերի վրա: Այդ պայմաններում փախուստի գործը հասունացել էր: Այդ օրերին հանգամանքների բերումով Գալուստ Ստեփանյանը տեղափոխվել էր Զնամենկա: «Տերը»՝ գերմանական ենթասպան էր նրան տարել հետը: Եվ նա իր համախոհների ու պարտիզանական ընդհատակի ղեկավարության գիտությամբ փախուստի ծրագրեր է մտմտում...

Սկիրդան կապավորներ էր ուղարկել Զնամենկա, իսկ Մարկովը՝ ավտոմեքենա տրամադրել Ալեքսանդրիայի՝ փախուստի պատրաստ 27 հոգիանոց խմբին: Սակայն ինչպես ասում են, ուրբաթը շաբաթից շուտ է գալիս. գերմանացիները բոլորին էլ ձերբակալում են, այդ թվում ամենաակտիվ անդամներին՝ Գևորգի Զախարյանին, Զարե Աբրահամյանին, Գաբրիել Աղախանյանին, Երեմ Գուլքանյանին: «Հանցագործներին» դատում են ռազմական տրիբունալով. երկուսին գնդակահարում, մյուսներին ուղարկում են համակենտրոնացման ճամբար... Եվ այդ օրից էլ Հայկական լեգիոնի երրորդ գումարտակը դադարում է գոյություն ունենալ:

Զնամենկան Սև անտառին մերձ էր, փախուստը կարող էր դյուրին լինել: Եվ Գալուստ Ստեփանյանն էլ կազմակերպում է այդ գործը: Նախապես մշակել էին փախուստի պլանը. փոքր խմբերով՝ երկու-երեք հոգով, պետք է ծածուկ մխրճվեին անտառ, հավաքվեին նշանակված տեղում: Խմբերի ղեկավարները հրահանգ էին ստացել կապավորներից՝ ինչպես փախչել և որտեղ հավաքվել:

...Աշնանային մթամած գիշեր էր: Երկինքն ասես խոսքումեկ էր արել հայ ռազմագերիների հետ ու փակել լուսնի, աստղերի ճամփան, որպեսզի փախուստը աչքից անտես, ուղին անվտանգ լինի: Եվ ահա գրեթե նույն պահին տարբեր տեղերից դեպի անտառ են անապարում ազատության հույսը սրտներում փայփայած ինը տասնյակի հասնող մարդիկ: Մեկ ժամ անց միայն գերմանացիները գլխի են ընկնում կատարվածի մասին և սկսում են հրացանային ու ավտոմատային կատաղի ու անկանոն կրակահերթեր տեղալ անտառի ուղղությամբ...

...Վաղ առավոտ էր, հայ ռազմագերիները հավաքվել էին պայմանավորված տեղում և ողջունում էին միմյանց, ուրախանում, հրճվում. վերջապես կարող են ազատ շունչ քաշել: Ափսոս, սակայն, որ միայն 31-ին, փախչողների սոսկ մեկ երրորդին էր հաջողվել գալ նշանակված տեղը:

Փախստականները կապավորների առաջնորդությամբ խորացան Սև անտառի մեջ: Այնտեղ նրանց դիմավորեցին կուսակցության ընդհատակյա մարզկոմի քարտուղար Միխայիլ Սկիրդան և Վորոշիլովի անվան պարտիզանական ջոկատի ղեկավարները՝ հրամանատար Իլյա Դիբրովն ու կոմիսար Կազիմիր Սաքանսկին: Հանդիպումը ջերմ էր, ընդունելությունը՝ բարեկամական...

ՀԱՏՈՒՑՈՒՄ

Պարտիզանական ջոկատի և ընդհատակի ղեկավարությունը իրազեկ էր Գալուստ Ստեփանյանի հակաֆաշիստական գործունեությանը: Գիտեր, որ հայ ռազմագերիների սրտերում վառ է մնացել հայրենասիրության հուրը և վստահությամբ վերաբերվեց նրանց: Փորձաշրջանի հարկ չկար: Նրանք հայրենիքին նվիրվածության քննությունը հաջողությամբ էին հանձնել գերության երկար ու ձիգ, դժնդակ ամիսներին, հակաֆաշիստական ընդհատակում: Վստահեցին ու Գալուստ Ստեփանյանին կարգեցին պարտիզանական ջոկատի երկրորդ վաշտի հրամանատար:

Անցան ամիսներ, պարտիզանների շարքերն ստվարացան, և Վորոշիլովի անվան պարտիզանական ջոկատը վերածվեց միավորման, վաշտերը, այդ թվում և Գալուստինը՝ ջոկատի: Հետո պարտիզանական միավորման հրամանատարության հաշվետվության մեջ պիտի գրվեր. «Ընկ. Գալուստ Ստեփանյանը կարողացավ կազմակերպել պարտիզանների ամուր մարտական կորիզ, որտեղ մտան և՛ ռուսներ և՛ ուկրաինացիներ, հայեր, օսեր, ադրբեջանցիներ, տաջիկներ: Տարբեր ազգության պարտիզանների ամուր բարեկամությունը, որն ամրապնդեց ընկ. Ստեփանյանը իր ջոկատում, ապահովեց հոյակապ հաղթանակներ թշնամու դեմ»:

Եվ հաղթանակների համար պահանջվել են մեծ հմտություն, անօրինակ խիզախում ու անձնուրաց կամք, անմնացորդ նվիրում հայրենիքի ազատագրության սրբազան գործին: Հաղթանակների դիմաց 26 թիվն է գրվել: Ասել է, թե այդքան անգամ Սև անտառի վրիժառու Գալուստ Ստեփանյանն իր քաջերին հատուցման գոտեմարտի է տարել իրենցից թվով մի քանի անգամ գերազանցող ու լավ զինված թշնամու դեմ: Հաղթել ու ապացուցել են ֆաշիստական ճիվաղներին, թե ինչի է ընդունակ սովետական մարդը:

Կենաց ու մահու մարտեր են եղել, ու այդ մարտերում կոփվել, առնականացել են պարտիզան մարտիկները, զոդվել է նրանց բարեկամությունը... Զորավիգ, թև-թիկունք են եղել միմյանց ու շարքից հանել հարյուրավոր ֆաշիստների, մեծ քանակությամբ մարտական տեխնիկա, գրավել զինամթերք ու պարեն, խորտակել ավտոմեքենաներ ու գնացքներ: Զինվել են ֆաշիստներից խլած զենքով ու կրկին մարտի նետվել ավելի կուռ շարքերով, կռվել առավել կատաղի, հաղթանակի հավատը սրտներում...

Սև անտառի արիասիրտ վրիժառուն՝ Գալուստ Ստեփանյանը, որ կրում էր նաև այն ուկրաինացի որդեկորույս կնոջ Գրիշա որդու անունը, իր քաջակորով պարտիզաններին գրոհի էր տանում ու կռվում հանուն այն մոր ու նրա որդու փոխարեն, վրեժ լուծում ֆաշիստներից իր ու նրանց և նաև հազարավոր սգավոր մայրերի ու կանանց տառապանքների համար: Եվ պարտիզանական ջոկատի հրամանատար «Գրիշայի» անունը լեգենդի նման անցնում էր շուրթից շուրթ, տարածվում Կիրովոգրադի մարզում...

Հատուցման հաջող գործողություններ են եղել դրանք, որ պատշաճ կերպով են արժեքավորվել պարտիզանական միավորման հրամանատարության կողմից ու ամուր կնիքվել Գալուստ Ստեփանյանի ու նրա կենդանի մնացած մարտիկների հիշողության մեջ:

... 1943-ի նոյեմբերի վեցն էր: Պարտիզանական միավորման հրամանատարությունը որոշել էր նշել մեծ Հոկտեմբերի 26-ամյակը և այդ օրը հանգիստ տալ պարտիզաններին: Դա այնքան էլ Գալուստ Ստեփանյանի սրտով չէր: Ինչպես ասում են, ձեռքերը քոր էին գալիս «պարապությունից»: Մոտեցավ Միխայիլ Սկիրդային ու խնդրեց.

— Ընկեր մարզկոմի քարտուղար, թույլ տվեք գնալ առաջադրանքի:

Ընդհատակյա մարզկոմի քարտուղարը ժպտաց, ձեռքով խփեց «Գրիշայի» թիկունքին և ասաց.

— Երբ հրամանատարը կհամաձայնի, գնա:

Միավորման հրամանատար Իլյա Դիբրովը սկզբում առարկեց, սակայն տեղի տվեց ջոկատի հրամանատարի համառ թախանձանքներին ու հաջողություն մաղթեց.

— Տես, հա՛, այնտեղ մարդ չթողնես:

Շուտով պարտիզանները շարք կանգնեցին: Նրանց հրամանատար Գալուստ Ստեփանյանը ծանոթացրեց առաջադրանքին՝ հարձակվել Վոդյաննոյե գյուղի գերմանական կայազորի վրա ու առանց զոհերի ետ դառնալ ճամբար: Ասաց ու մեկեն զգաց, որ տղաները չեն տագնապում, դեռ ավելին, ուրախ են վստահության համար...

Գիշեր էր, շուրջը խաղաղ: Երկնի կապույտից կայծկլտացող աստղերն ասես հետևում էին Սև անտառի վրիժառուներին ու նրանց ուղեկցում դեպի արդար հատուցում: Խմբում հիմնականում հայորդի պարտիզաններ էին: Ի՞նչ էին խորհում նրանք այդ տարաժամ պահին, ո՞վ իմանա, բայց որ բոլորի սրտում էլ հորդում, ալիք էր տալիս վրեժը, դա հաստատ էր: Այդպես էր ընկալում Գալուստ Ստեփանյանը՝ ունկնդրելով իր քաջերի խրոխտ քայլերի ձայնը և նրանց՝ հեռուն միտող հայացքներում կարդալով խիզախելու հաստատակամություն:

Ուղին հետզհետե կարճանում էր, ու վրիժառուները քայլում էին ավելի զգուշավոր: Վերջապես գյուղը մի քանի քայլի վրա է: Գալուստ Ստեփանյանը շուրջը հավաքեց պարտիզաններին: Ինչպես որ նախապես պայմանավորվել էին, դասակի հրամանատար Հայկազ Թերզյանը մի խմբի գլուխ անցած պետք է հարձակվեր պոլիցայների կացարանի վրա, իսկ մյուսները խումբ-խումբ գրոհեին կայազորի շտաբը, դպրոցը, բաղնիքը...

Հարձակումն անսպասելի ու հանկարծակի էր: Խուճապի մատնված և ահաբեկված ֆաշիստներն ու պոլիցայները կիսամերկ դեսուդեն էին փախչում: Լավ ջարդ տվեցին ու առանց զոհի վերադարձան պարտիզանական ճամբար: Ծանրակշիռ էր նաև ռազմավարը՝ մեծ քանակությամբ ավտոմատներ, հրացաններ, նռնակներ և այլն:

«Գրիշա» հրամանատարի քաջերն այդպես նշեցին մեծ Հոկտեմբերի տոնը և արժանացան պարտիզանական միավորման ղեկավարության գովեստին...

Երեք օր էր անցել այդ մարտարշավից: Գալուստ Ստեփանյանի երկրորդ ջոկատը ստացավ արդեն հերթական առաջադրանքը՝ հարձակվել Իվանկովցի մեծ գյուղի գերմանական կայազորի շտաբի վրա: Պոլիցայները նույնպես շտաբ ունեին, պիտի գրոհեին նաև այն:

...Ուշ երեկո էր, այս անգամ արդեն մութ-խավար: Ծածուկ մոտեցան գյուղին: Շտաբը մոտիկ էր, իսկ շուրջը ձայն-ծպտուն չկար: Ջոկատի հրամանատարը Սմբատ Գևորգյանին, որ համարձակ, խիզախ ու դիվերսիային քաջահմուտ պարտիզան էր, առաջադրանք տվեց մոտենալ շտաբի շենքին և կտրել հեռախոսային ու էլեկտրական լարերը:

Սմբատը գնաց: Անցավ պայմանավորված ժամանակը, սակայն նա չվերադարձավ: Հապաղել չէր կարելի, ստիպված էին հարձակվել, և հրամանատարը գրոհի ազդանշան տվեց: Առաջադրանքի նպատակն էր՝ լուրջ վնաս հասցնել կենդանի ուժին: Այդ խնդիրը պարտիզանները լավ կատարեցին ու դուրս եկան գյուղից: Զոհեր չունեին, միայն Սմբատը չկար: Մեկն ասաց, որ իբրև թե Սմբատին խփեցին էլեկտրասյունը բարձրանալիս, ու նա ընկավ: Հո չէի՞ն կարող ընկերոջ ճակատագրի հանդեպ անտարբեր լինել, թողնել ու հեռանալ: Եվ Գալուստ Ստեփանյանը Լեոնիդ Գոնչարենկոյին, Սուրեն Շահրամանովին ու Ֆեոդոր Պետլենկոյին հրամայեց.

— Գտեք Սմբատին, եթե կարիք կլինի, մեկնումեկդ կգաք, օժանդակ ուժեր կտրամադրեմ:

Եվ որպեսզի տղաները իրենց գործը դյուրին կատարեին, հրամանատարը որոշեց գյուղի հակառակ կողմից նոր գրոհի պատրանք ստեղծել: Այդպես էլ արեցին ու շեղեցին գերմանացիների ուշադրությունը: Կես ժամ չանցած՝ տղաները Սմբատին շալակած բերեցին: Ծանր վիրավոր էր: Հրամանատարը մոտեցավ ու սփոփանքի խոսքեր ասաց, սիրտ տվեց: Նույն ջոկատում մարտնչող պարտիզան Փայլակը նույնպես քաջալերեց հարազատ եղբորը...

Նոյեմբերյան մարտարշավներից ամենահանդուգնը Պլոսկոյե գյուղի գրավումն էր: Խոշոր բնակավայր է՝ փռված ձորակի երկու լանջերին, անտառի հարևանությամբ և, ասես, ստեղծվել է անտառի վրա մշտական հսկողություն սահմանելու համար: Պլոսկոյեում տեղավորված էր գերմանական ոչ մեծ կայազոր: Կար նաև ուկրաինական նացիոնալիստներից կազմված պոլիցայների մի մեծ խումբ:

Վորոշիլովի անվան պարտիզանական միավորման ղեկավարությունը առաջադրանք տվեց երկրորդ ջոկատի հրամանատար Գալուստ Ստեփանյանին՝ Պլոսկոյեն մաքրել գերմանացիներից ու հայրենիքի դավաճաններից, որովհետև նրանք, ասես, նստած լինեն պարտիզանների կոկորդին:

Պարտիզանական միավորման հետախուզությունը պարզել էր, որ Պլոսկոյե գյուղի գերմանական կայազորը մոտավորապես ունի 800 զինվոր ու սպա, մինչդեռ երկրորդ ջոկատում այդ պահին կար 130 մարդ: Ի՞նչ և ինչպե՞ս անել: Այս հարցի շուրջ ջոկատի հրամանատարը երկար ու լրջորեն խորհեց, ենթակաների հետ ծանրութեթև արեց հնարավոր տարբերակները: Հարկավոր էր ճիշտ ընտրել հարձակման պահը, մարտի վարման տակտիկան, խնայել մարդկանց, զենքն ու զինամթերքը: Հեշտ բան չէ՝ գրեթե մեկը յոթ-ութի դեմ: Իսկ սպառազինությո՞ւնը. ավտոմատներ, հրացաններ, ատրճանակներ, մի քանի գնդացիր, նռնակներ: Մինչդեռ ֆաշիստներն ամեն ինչ ունեն, զինված էին նորագույն զենքի բոլոր տեսակներով, նույնիսկ հրետանիով ու զրահապատ մեքենաներով...

Եվ Գալուստ Ստեփանյան «Գրիշան» որոշեց դիմել խորամանկության. օգտագործել պարտիզանների հզոր «զենքը»՝ ստեղծել բազմաթիվ զինվորական ստորաբաժանումների հարձակման պատրանք, ռուսական ուռայի ուղեկցությամբ:

Լուսադեմին մոտ էր: Մութը տակավին նոր-նոր էր ետ քաշում իր անթափանց քողը, երբ պարտիզանական երկրորդ ջոկատն սկսեց գրոհը գյուղի վրա: Ուռաները ալիք-ալիք ծավալվում էին տարբեր տեղերից: Թվում էր, թե մի ողջ դիվիզիա է հարձակվում: Գերմանացիները տակավին անկողնում էին: Գրոհն այնպես անըսպասելի և ուժգին էր, որ նրանք խուճապի մատնվեցին: Ոմանք կիսամերկ փախչում էին չգիտես ուր: Վերջապես ուշքի եկան ու սկսեցին կատաղի դիմադրություն ցույց տալ: Արյունահեղ, անհավասար մարտ էր, երկու կողմն էլ կռվում էր մոլեգնորեն ու անզիջում: Համարձակորեն ու մեծ հմտությամբ էին գործում մարտունեցի Հայկազ Թերզյանը, ջավախեցի Մարզար Հովհաննիսյանը, գորիսցի Սիմոն Գյուրջյանը, լենինականցի Փայլակ Գևորգյանը, ուկրաինացիներ Նիկոլայ Իվաշչենկոն («Կոզակ»), Պավել Պոկորան, Լեոնիդ Գոնչարենկոն, ռուս Վիտալի Մաքսիմովը, բելոռուս Զակամոլդին, թաթար Խակիմովը և ուրիշներ:



Մարտը տևեց շուրջ չորս ժամ: Պարտիզանները շատ քիչ զոհեր տվեցին, մինչդեռ գերմանացիները գյուղի փողոցներում թողեցին 250 սպանված ու վիրավոր: Կայազորի զինվորների մի մասը փախավ հարևան Դմիտրովկա գյուղը, մյուսները՝ այս ու այնտեղ:

Կյանքում կատարվում է և անսպասելին, որ խոր հետք է թողնում մարդու հիշողության մեջ: Այսօր էլ, չորս տասնամյակի հեռավորության վրա, երբ Գալուստ Ստեփանյանը հիշում է այդ դեպքը, սիրտը կծկվում է ափսոսանքից...

Իսկ դեպքը այսպես է եղել: Կռիվն ավարտվել էր: Գալուստ Ստեփանյանը Հայկազ Թերզյանի և Նիկոլայ Իվաշչենկոյի հետ քայլում էր Պլոսկոյեի փողոցներից մեկով: Հանկարծ որոտաց հրացանազարկը, և Իվաշչենկոն տապալվեց գետին: Ձեղնահարկում դարանակալած գերմանական սնայպերը խփեց: Հայկազը փորձեց օգնել ընկերոջը, սնայպերը խփեց նաև նրան: «Հայկազը,— ասում է պարտիզանական ջոկատի նախկին հրամանատարը ի խորոց սրտի,— երգնկացու ժառանգորդ էր: Գերդաստանի 27 մարդուց հայրն էր մնացել ու փախել թուրքական յաթաղանից: Առյուծասիրտ երիտասարդ էր Հայկազը, ասում էր՝ չեմ ուզում թշնամին թիկունքիս խփի, եթե մեռնելու եմ, թող կրծքիցս խփվեմ,— խոր հոգոց է հանում սրտի խորքից,— խեղճ տղան հենց կրծքից էլ խփվեց: Ֆաշիստ ավազակը, իհարկե, արժանի պատիժ ստացավ»:

Պլոսկոյեն լիովին ազատագրվել էր ու կարմիր դրոշ բարձրացվեց կոլտնտեսության նախկին գրասենյակի շենքի ձեղնահարկին: Նշանակվեցին կոլտնտեսության ու գյուղսովետի նախագահներ: Գյուղում սովետական իշխանություն վերահաստատվեց գերմանական օկուպացիայի պայմաններում: Կուսակցության Կիրովոգրադի ընդհատակյա մարզկոմի քարտուղար Սկիրդայի և Վորոշիլովի անվան պարտիզանական միավորման հրամանատար Դիբրովի հրամանով Գալուստ Ստեփանյանը կարգվեց Պլոսկոյեի զինվորական կայազորի պետ:

Գերմանացիները, սակայն, չէին հաշտվում ստրատեգիական նշանակության գյուղը կորցնելու մտքի հետ: Քանիցս հարձակվեցին Պլոսկոյեն ետ վերցնելու համար, սակայն ջանքերն ապարդյուն էին. չկարողացան թափանցել: Նույնիսկ տանկեր ու զրահամեքենաներ էին մտցընում մարտի մեջ: Բնակչությունը միշտ էլ զորավիգ էր կանգնում պարտիզանական կայազորին: Ամեն օք քաջ գիտեր, որ եթե թշնամին նորից տիրանա գյուղին, ապա դաժան հաշվեհարդար կտեսնի անխտիր բոլորի հետ՝ պարտիզաններին օգնելու համար: Ու թե նա հարձակման փորձ էր անում, գյուղը ոտքի էր կանգնում մեկ մարդու նման:

Այդպես պաշտպանվեցին նաև պարտիզանական Բոգդանովկա և Դմիտրովկա գյուղերը մինչև սովետական զորքերի ժամանումը...

Եվ տարիներ անց Պլոսկոյե գյուղի ղեկավարները իրենց գնահատանքի խոսքով պիտի հավուր պատշաճի արժեքավորեին Սև անտառի վրիժառու «Գրիշայի» ծանրակշիռ ավանդը իրենց հայրենի թնօրրանի ազատագրման ու պաշտպանության գործում. «...Գերմանական զազաններին չհաջողվեց հրկիզել մեր գյուղը, չհաջողվեց մոխրակույտերի վերածել մեր խրճիթները, որովհետև մեր երջանկության համար ոտքի էին կանգնել Սև անտառի խիզախ պարտիզանները եղբայրական հայ ժողովրդի արժանավոր զավակ, քաջարի հրամանատար ընկ. Ստեփանյանի՝ «Գրիշայի», հրամանատարությամբ, որն այդ օրերին պարտիզանական Պլոսկոյե գյուղի զինվորական-պարտիզանական կայազորի պետն էր»:

## ՎԱՎԵՐԱԳՐԵՐԸ ՊԱՏՄՈՒՄ ԵՆ

Յոթ տասնամյակն անց, բայց տակավին եռանդով առլեցուն այր է Գալուստ Ստեփանյանը: Ճակատի ակոսներն անցած դժվարին ու հերոսական ուղու, թերևս նաև հանիրավի տառապանքների արտացոլանքն են, քան թե ծերության նշանները:

Կենսախինդ ու զրուցասեր է: Հարցնես՝ ինչպե՞ս եք, մեղմ կժպտա ու կասի՝ ինչպես միշտ, ինձ նման: Ասել է թե առողջ, առույգ ու կայտառ և լավատես: Այս հատկանիշներով է ինքն իրեն նմանվում: Երբ էլ հանդիպես, աչքերում ծիծաղ կնկատես, հոգում՝ կենսական ուժեր:

Որպես սուրբ մասունքներ, պահում-պահպանում է բազում վավերագրեր, որոնք լույս են սփռում իր ու մարտական ընկերների անօրինակ խիզախումների վրա: Դրանք գրքեր են, լրագրային ու հանդեսային հոդվածներ ու ակնարկներ, կուսակցական մարմինների, պարտիզանական շարժման նախկին ղեկավարների ու մասնակիցների վկայություններ, թնութագրեր, շնորհակալագրեր, զանազան փաստաթղթերի ու թանգարանային նյութերի պատճեններ, նամակներ, նամակներ...

Լայն է վավերագրերի աշխարհագրությունը: Նրա մասին ջերմ խոսքեր է գրել նաև հույն գրող Միցոս Ալեքսանդրոպուլոսը «Հայերը» գրքում:

Եվ տարիներ անց ուկրաինական պարտիզանական միավորման լեգենդար հրամանատար, գեներալ-մայոր, Սովետական Միության հերոս Մ. Ի. Նաումովը պիտի գրեր. «Ուկրաինայի ազատագրման գործում խոշոր, իրոք, անգնահատելի դեր ունեցավ հայկական 409-րդ «Կիրովոգրադյան» միավորումը, որի հայ մարտիկներից շուրջ 900-ը արժանացան կառավարական

պարգևների: Այդ նույն կիրովոգրադյան մարզի Սև անտառում հայ ժողովրդի մի այլ զավակ՝ Գալուստ Ստեփանյանը («Գրիշա»), ֆաշիստների ճանկերից դուրս պրծած հայկական մի ստվար ջոկատի գլուխ անցած, ակտիվ մասնակցություն ունեցավ ժողովրդական վրիժառուների մղած պայքարին»:

Իսկ ահա Գալուստ Ստեփանյանին անմիջականորեն ճանաչող մի մարդ, Կիրովոգրադի ընդհատակյա կուսակցական մարզկոմի քարտուղար Մ. Մ. Սկիրդան, նրան ուղարկելով ՀԿԿ Կենտկոմի տրամադրության տակ, 1943-ի դեկտեմբերին գրել է. «Պարտիզանական ջոկատում, ինչպես նաև մարդկանց ջոկատ բերելու համար նախապատրաստելու ժամանակաշրջանում ընկ. Ստեփանյանը գործել է ազնվորեն ու նվիրվածությամբ և իրեն դրսևորել է որպես ուժեղ կամքի տեր անսասան հրամանատար»:

Եվս մեկ հավաստի փաստաթուղթ՝ Վորոշիլովի անվան պարտիզանական միավորման տարեգրությունը, որը ի պահ է տրված Կիրովոգրադի Սովետական Միության մարշալ Ի. Ս. Կոնևի անվան մարզային պատմաերկրագիտական թանգարանին: Այնտեղ ասված է նաև, որ «...ընկ. Ստեփանյանի ղեկավարած մարտական գործողություններից հարկ է նշել գերմանական զումակների ջախջախումը Վեսյոլի Կուտ—Յիբուլևո, Զիգիրին—Զնամենկա, Պլոսկոյե—Կրասնոսելյե ճանապարհներին, գերմանական կայազորների ջախջախումը Վեսյոլի Կուտում, Իվանկովցիում, Պլոսկոյեում, Վողյանոյում, Բոգդանովկայում, Դմիտրովկայում, Զնամենկայում, գերմանացիների կողմից պարտիզանների շուրջկալի ժամանակ մղված մարտերը Սև անտառում և գերմանական մերձռազմաճակատային զորամասի շտաբի ջախջախումը գերմանական գեներալի գլխավորությամբ»:

Կարդում ես վավերագրերը, և քո առջև հառնում են պայծառ կենսագրության հերոսական դրվագները մի մարդու, որը բոլորանվեր մարտնչել է հայրենիքի ազատագրության համար, հեռավոր Ուկրաինայում պաշտպանել Հայաստան բնաշխարհի հողը, բարձր պահել իր ժողովրդի պատիվը: Այդ ամենով էլ իրավունք է նվանել նորից կրելու կոմունիստական կուսակցության զինվորի տոմսը սկզբնական՝ 1939-ի ստաժով...

## ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

ՍՄԿԿ XXVII համագումարում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ Ս. Գորբաչովն ասաց, որ հարկավոր է ամենայն ուշադրությամբ վերաբերվել պատերազմի ու աշխատանքի վետերաններին: Այդպիսի ուշադրության արժանի է նաև Գալուստ Ստեփանյանը, չէ՞ որ նա և՛ պատերազմի, և՛ աշխատանքի վետերան է, ուսերին՝ մանկավարժական արգասավոր աշխատանքի ծանր բեռ: Հայրենական մեծ պատերազմին նախորդած ու հաջորդած տարիներին դպրոցներ ու տեխնիկումներ է տնօրինել Արտաշատի ու Թումանյանի շրջաններում, Երևանում, մատաղ սերունդ կրթել ու դաստիարակել:

Վաստակած հանգիստ էր հասնում ու հանրապետական անհատական կենսաթոշակ նշանակեցին: Սակայն պարապությունից անհանգիստ էր զգում և շուտով ստանձնեց ուսուցիչների կատարելագործման Երևանի ինստիտուտի ղեկավար աշխատողների կաբինետի մեթոդիստ-դասախոսի պարտականությունը: Այդ գործը կատարում է սիրով ու բանիմացորեն:

...Կինյան փողոցի նրա բնակարանում ժամանակ առ ժամանակ սեղանի շուրջն են բոլորում Գալուստ Ստեփանյանի ուսուցչուհի դուստրը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Գերագույն սովետի նախագահի տեղակալ Բեատրիչեն, որդիները՝ տեխնիկական գիտությունների թեկնածու Ալբերտը, դասախոս Ռուբենը, թոռներն ու ծոռները և լսում նախկին ընդհատակայինի ու պարտիզանի պատմությունները: Այդ պահերին իրեն անչափ երջանիկ է զգում վաստակաշատ մանկավարժ Սրբուհին: Ամուսնու և որդիների լավ գործերը խինդ են պատճառում նրան: Թոռնիկներին հետաքրքրում են պապիկի մարտական պարգևները, պատերազմական տարիների լուսանկարները... Գերդաստանի անդամները հանույքով են ընթերցում Սև անտառի անվեհեր վրիժառուին ուղղված նամակները և հպարտանում, որ հայրենասեր ու խիզախ մարդու ժառանգորդն են: Եվ այդ բազում նամակներից մեկը Լեհաստանից է, հեղինակը՝ Պոլավիի հակաֆաշիստական ընդհատակի ղեկավարներից՝ Ստանիսլավ Կոտերը: Նամակը, որն ուղղված է Գ. Ստեփանյանի նախկին տնօրինած դպրոցի սովորողներին, վերջանում է հետևյալ տողերով. «Ձեր դիրեկտորը հերոսաբար պայքարել է նրա համար, որպեսզի այսօր դուք կարողանաք ազատ ապրել ՍՍՀՄ ժողովուրդների ազատ ընտանիքում և սովորեք ձեր մայրենի լեզվով»:

ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆ

Հանձնված է շարվածքի՝ 14.04.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 8.05.86 թ.: ՎՖ 05510:
Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.:
Տպաքանակը՝ 18.132: Պատվեր՝ 828:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: